# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱԼԼԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

Caesar, Julius
Hishatakarank Galliakan paterazmin

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱԼԼԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

*Հ. ԱՐՍԵՆԻ Կ. ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՅ*

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆՑ





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1874

ԱՌ ԱԶԱՏ ՍԵՊՈՒՀՆ

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԷՅ ՏԻՒԶ

ԱՌԱՏԱՄԻՏ ՍԱՏԱՐ

ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐՈՑՍ

ՇՆՈՐՀԱՊԱՐՏ

ՈՒԽՏ ՄԽԻԹԱՐԱՑ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հաւասար, թէ ոչ և վեհագոյն, արևելեան աշխարհակալին, զորմէ Աստուածայինն իսկ մատեան վկայեաց, եթէ «Սարսէր երկիրս ամենայն առաջի նորա... և զամենայն աշխարհ 'ի հարկի կացուցանէր», Կայիոս Կեսար՝ 'ի Յուլեան տոհմէ հռովմայեցւոյ, որ և յԵնէասայ իսկ՝ ըստ աւանդութեան, ճարտարագոյն զօրավարաց և անուանելոց քաջաց որերոյ, յիննևտասն դարուց հետէ վկայեալ է յամենայն գիտնոց՝ արիութեամբն, հնարագիտութեամբ և երագութեամբ, միանգամայն և մեծասրտութեամբ. որովք ոչ միայն զաւառս հռոմէական տէրութեան կարգեաց գրեա եթէ զբովանդակն ծանօթ յայնժամ զԵւրոպէ, ինքնին նուաճեալ զՀելուետիա, զԳալլիա, մասամբ Գերմանիոյ, զԲրիտանիա, և Սպանիա, և յերկոսին ևս օտար մասունս աշխարհի յաղթութիւնս գործեալ, յԱփրիկէ՝ յԵգիպտոս, և յԱսիա՝ յերիտասարդութեանն վանեալ զհրոսակս հզօրին Միհրդատայ, և 'ի կատարեալ հասակին՝ զորդի նորա զՓառնակ. այլ և զնախ յաղթականս կամ խոնարհեցուցիչս Պոնտացւոյն և զՏիգրանայ, զՄեծն Պոմպէ և զհամախոհս նորա՝

զկուսակալս աշխարհաց և առաջնորդս յարակիրթ բանակաց, հարեալ վարեալ՝ գեր 'ի վերոյ եկաց ամենեցուն։ Ցաղագս այսորիկ ոչ 'ի զարմանս լոկ և 'ի նախանձ յետագայից կարգեցաւ, այլ և յուսումն աշխարհակալաց և պատերազմական դժնդակ արուեստին գիտասիրաց։ Շատ իցէ յիշել զոր առ մեօք իսկ ոչ բազում ինչ ամօք յառաջ հրատարակեալ և 'զուշ ամենայն գրագիտաց և քաղաքագիտաց գրաւեաց, զվարս և զգործս Յուլեայ Կեսարու. յոր երկար ժամանակօք երկասիրէր Նոր ումն կարծեցեալ Կեսար՝ Նաբոլէոն Գ, եղերական թերևս քան զվիպասանեալն յիւրմէ և զնմանագոյն նորին զիւր իսկ հօրեղբայրն մեծ՝ ընկալեալ կատարած, միւս ևս օրինակ թողլով աշխարհի, եթէ և զօրաւորագոյնք 'ի զօրավարաց և հարստագոյնք յինքնակալաց՝ 'ի վայրկեան ժամանակի առաթուր դնին բաղդի. զի հզօրագոյն և գիտնագոյն քան զամենայն՝ վերին տեսչութիւնն է. և արութիւն քաջութեան ոչ միշտ 'ի կարծեցեալն երջանկութիւն ժամանեցուցանէ զշահատակն. մանաւանդ եթէ, որպէս և յաճախ պատահէ այնպիսեաց, փառասիրութեամբ իցեն մոլեալք և չասիցեն երբեք շատ։ Այսպէս և Յուլիոսս այս, որ ամենեցուն՝ այլ անձին ոչ բաւեաց յաղթել, քակեաց զեօթնդարեան պարզունակ և պանծալի հասարակապետութիւն Հռովմայ, բարձրացոյց զանձն իբրև յաստիճանս վերելակելով և անուանելով Երրորդապետ, դիկտատոր, բդեաշխ տասնամեայ, բդեաշխ մշտնջենաւոր, և հուսկ բնաւից՝ Հրամանատար կամ Ինքնակալ, (Imperador). և 'ի բարձրութենէ անտի գահուն՝ գլորեցաւ դիտապաստ 'ի պատուանդանս նորին։ Այլ

որ յաղթանակօքն վեհ էր բնաւից, գուցէ վեհա-
գոյն և այսու գտաւ, զի զիւր ընիկ անուն կամ մակ-
անուն՝ բաղձալի ժառանգութիւն եթող և պայա-
զատին իւրում Հոկտաւիոսի Օգոստեայ, և ամե-
նայն միապետութեամբ վարողաց յայնմհետէ և
առ յապա՝ Կեսար կամ Կայսր, որ և այժմ գերա-
գոյն յիշխանականն է պատուաւորութեան։

Արդ թէպէտ երկոքումք այսոքիւք՝ քաջութեամբ
և իշխանութեամբ՝ գերազանցեաց Կեսար քան ըզ-
յոլովս կամ զբնաւս 'ի մարդկանէ, ոչ համարակաց
մարդկան օգուտ ինչ կամ վայելք են անտի. պիտա-
նի ևս է նա յաչս համաշխարհի երրորդ և հրաշա-
փառագոյն բաստիւ, և ազնուագոյն արդեամբ բա-
նաւորաւ, զմտաւորն գեղեցիկ՝ 'ի գրաւորականն
տրամադրելով. և Յայսմ ևս բանասիրական մասին՝
այնքան յաջողեալ և յառաջացեալ, մինչև ճշմար-
տել զիւր և զքեռոյն իւրոյ Մարիոսի անխոնար-
հելի իղձս՝ յամենայնի առաջնութեան. լաւ համա-
րելով նախաթոռ 'ի խրճթի գռեհկաց լինել՝ քան
երկրորդագահ յակնն տիեզերաց 'ի Հռովմ։

Բազում ինչ աւանդեն զնմանէ գրեալ և յար-
ձակ և 'ի չափական բան. քանզի 'ի պատանեկու-
թեանն խոյս տուեալ յերեսաց Սիւղայի՝ 'ի Հռոդոս,
պարապէր հռետորութեան, և այլուր ևս չառնէր
զանց զքանաւոր հրահանգօք. որպէս զի և ընդ Կի-
կերոնի անգամ ճարտասանաց գերագունի՝ մարթ
էր ասեն նմա 'ի վեր գալ, եթէ ոչ էր յաւէտ մի-
տեալ 'ի պատերազմն և յիշխանասիրութիւն։ Առ
մեզ՝ զատ 'ի հատուկտիր ինչ տողից այլոցն գրուա-
ծոց՝ երկուք միայն հասին նորին երկասիրութիւնք,
երկոքին ևս կոչեցեալ Յիշատակարանք, մին Գալ-

լիական, միւսն Քաղաքական Պատերազմին. երկոքին ևս պարզ և անպաճոյճ բանիւ գրեալք կամ թելադրեալք առ 'ի նմանէ. այլ այնու պարզութեամբ՝ որ զանբացատրելին ունի շնորհս սեփական վայելչութեան. որում՝ աստանօր կցորդ գտանի և ճըշգրիտ և ճշմարտապատում աւանդութիւն նկարագրեալ վայրաց և իրացն. և այսոցիկ տղագաւ, .'ի վարժարանս՝ յօրինակ ընծայի համբակաց լատին լեզուի, որպէս Քսենոփոնն և Պղատոն առ Հելլենացիս, և յառանձին խոհարանս՝ 'ի փորձ և 'ի քնին աշխարհագրաց, պատմաբանից և քաղաքագիտաց. վասն այսորիկ և յամենայն լեզուս զգօն ազանց թարգմանեալ են գիրքդ և մեկնաբանեալք, մանաւանդ Գալլիական պատերազմացն Յիշատակարանք։

Այսպիսւոյ նախադաս սոփերի՝ որպէս մարթ էր ընծայիլ և 'ի ճաշակ մերում Հայկազնեան գրոհիս, — որում բաստ ցանկալի եղև ունել թարգմանիչս ճարտարս 'ի հնումն և 'ի նորումս, - նոյն և անմարթ էր թերևս վրիպելն յախորժակաց և յանզոյգ գրչէ պարագլխի նորոց բանասիրաց և թարգմանչաց մերոյ դարուս, Հ. Արսենի Բագրատունւոյ. որոյ ցանկացեալ, յետ յեղլոյ 'ի հայ՝ զընտիր ընտիրս բանաստեղծից և ճարտասանից Յունաց և Հռոմոց, Փռանկաց և Իտալաց և զԱլպիոնի դըրախտերգակն, տալ և 'ի պատմաբանից ճաշակս գեղեցիկս, ձեռն արկ նախկին, աւա՜ղ և յետին, յայս գրուած Յ. Կեսարու, հուսկ վաստակ ծայրացեալ ծերութեանն. զորոյ տակաւին ժիր և անխոնջ ձեռս՝ ոչ տկարութիւն մտաց կամ աշխուժից՝ այլ անհրաժեշտն միայն կալաւ օրհաս, և դադա-

բեցոյց յերիր մասին Թարգմանութեանն (յէջ 153), փութացուցեալ զնա ինքն անդր առ Գեղեցիկն յաւիտենական։

Արդ զի մի Թերակատար մնասցէ և վերջինս իւր վաստակ, և մի դարձեալ աննման իւրոյ արուեստին կարկատեսցի Թարգմանութեամբ, իբրև կտակաւ յանձն արար 'ի հմուտ և 'ի հաւատարիմ ձեռս, Այնր՝ զոր ինքն անդ ուրեմն վարժէր 'ի դըպրութիւնս՝ հայրաբար, և որում յետոյ որդիաբար անսայր, զի Հայր եկաց և առաջնորդ տանս և ուխտիս Մխիթարայ. որոյ վաղու իսկ նահատակեալ էր 'ի նմանօրինակ ասպարէզ, գործակցութեամբ զուգապատիւ Հարազատին, ընծայելով 'ի հայ նախ՝ զհնախօս պատմութիւնս Ռոլէնի, որպէս յետոյ յողբերգութեանց Գոռնէյլի և Ռասինի, հանդերձ այլովք. և այժմ յօժարութեամբ ընկալեալ զաւանդ խնդրոյս, 'ի հոյլս հոգոց և վաստակոց՝ որ ըստ կարգի պաշտամանն և որ ըստ բերմանց ժամանակիս, եգիտ հուն Թարգմանելոյ և աւարտելոյ զգիրս, հաւասարապատ փորձ և առոյգ գրչաւ՝ Սկսանողին. ընդ որում և ընծայէ արդ 'ի վայելս մերայոցս սիրողաց և յարգողաց այսպիսեաց ճաշակաց։ Յորոց ակն ունիմք՝ ընդ մեզ միաբանեալ՝ զոյգ երկաքանչիւրոցն Թարգմանչաց վերընծայել երախտիս շնորհակալեաց. փառս՝ Հանգուցելոյն մաղթելով հոգւոյ, յամայր ամս՝ Պսակողիս զգրաւորական նորին յոքնելեան։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Գլուխ. Ա, Նկարագիր Գալլիոյ. Բ, Հելուետացւոց անզգամ արշաւանն. ԺԲ, Պարտութիւն նոցա յերկուս ճակատամարտս 'ի Կեսարէ. ԻԸ, Ապրեալքն վանեալք 'ի տունս իւրեանց. Լ, Գալլիացիք բողոքեն առ Կեսար զխեռութենէ գերմանացւոց, որոց զօրագլուխ կալեալ զԱրիովիստ՝ տիրեալ վարէին զերկիր սեկուանացւոց. ԼԴ, Ի խաղաղել զկրան՝ զանդրակալեան տայսէ նա առ Արիովիստ. ԼԷ, Այլ 'ի զուր ջանացեալ՝ հորդան տայ զօրուն ընդդէմ նորա. ԼԹ, Որ նախ երկչոտքն էին և զարհուրեալք. Խ, Այլ ապա քաջալերեալք 'ի նմանէ՝ խրախուսեն. ԽԲ, Երկոցուն կողմանցն զօրագլուխք 'ի խորհուրդ մտանեն ընդ միմեանս. ԽԶ, — ԾԱ, Բայց ոչինչ շահեցեալ, զէնուք վճարի իրն. ԾԲ, Խորտակեալ գերմանացւոց՝ 'ի փախուստ դառնան 'ի Գալլիոյ։

---

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱԼԼԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



Ա. Գաղղիա համօրէն յերիս մասունս բաժանի, յորոց 'ի միումն բնակեն բելգացիք, 'ի միւսումն՝ ակուիտանացիք, յերրորդումն՝ որք 'ի նոցա լեզու գաղատացիք՝ 'ի մերումս գաղղիացիքն անուանին։ Սոքա ամենեքեան լեզուաւ, կարգօք և օրինօք որոշին 'ի միմեանց։ Զգաղղիացիս յակուիտանացւոց բաժանէ Գարումնա գետ, 'ի բելգացւոց՝ Մատրոնա և Սեկուանա։ Ի սոցանէ ամենեցունց հզօրագոյն են բելգացիք. վասն զի օտարք են յոյժ 'ի վարուց և 'ի կրթութենէ Նահանգին մերոյ [1], և հազիւ երբեք երթևեկեն առ նոսա վաճառականք՝ տանել անդր որ ինչ մեղկացուցիչ է ոգւոց։ Մօտաւորք են գերմանացւոց՝ բնակելոց յայնկոյս Հռենոսի, ընդ որս ցանգ 'ի կռիւ կան. վասն որոյ հելուետացիք ևս զանցուցանեն զօրութեամբ զայլովք գաղղիացւովք, զի գրեթէ հանապազօր մարտիկռուին ընդ գերմանացիս, կամ նահանջել զնոսա 'ի սահ-

[1] Հռովմայեցւոց նահանգ կամ գաւառ կոչէ զՆարբոնեանն՝ հարաւակողմ Գաղղիոյ մինչև 'ի ծով, Ալպեօք և Հռոդանոս գետով սահմանեալ, որ վաղուց նուաճեալ 'ի Հռովմայ՝ 'ի նոցա օրէնս էին յանգուցեալ։

*մանաց իւրեանց, կամ 'ի նոցա սահմանսն տալ մարտ պատերազմի։ Կողմն մի երկրին զոր գաղղիացւոց ունել ասացաք, սկիզբն առնու 'ի Հռոդանոս գետոյ, պատի Գարումնա գետով, ովկիանոսիւ, սահմանօքն բելգիացւոց, ընդ սեկուանացիս և հելուետացիս՝ թեւակոխէ ևս 'ի Հռենոս գետ, և դառնայ զհիւսիսիւ։ Բելգացիք 'ի յետին ծագաց Գաղղիոյ սկսանին, ձգին 'ի ստորին կողմ գետոյն Հռենոսի, հային ընդ հիւսիսի և ընդ արևելս։ Ակուիտանիա 'ի Գարումնա գետոյ ցպիրենեան լերինս և յայն կողմն Ովկիանու որ առ Սպանեաւ քերէ, հայի ընդ արևմուտս և ընդ հիւսիսի։*

*Բ. Առ հելուետացիս ազատազգի և մեծատուն յոյժ Որգետորիքս ոմն անուն էր։ Սա 'ի դեսպանութեան Մ. Մեսսալայ և Մ. Պիսոնի, հարեալ յեռանդն թագաւորութեան, միաբանեաց ընդ իւր զազնուականսն, և ած հաւանեցոյց զազգն՝ ելանել ըստ սահմանս իւրեանց համագումար զօրօք հանդերձ. զօրագունիցն քան զբնաւս դիւրին իմն առ ձեռն լինել՝ բոլորովին տիրապետել Գաղղիոյ։ Հեշտեաւ ևս ած զնոսա 'ի հաւան, զի տեղւոյն բնութեամբ ամենուստ պաշտպանեալ են հելուետացիք. 'ի միոյ կողմանէ՝ լայնածաւալ և յորձախոր գետովն Հռենոսիւ, որ զերկիրն հելուետացւոց 'ի գերմանացւոց բաժանէ. 'ի միւսմէ կողմանէ՝ երկնաբերձ լերամբն Յուրայիւ, որ կայ 'ի մէջ սեկուանացւոց և հելուետացւոց. 'ի միւս ևս այլմէ կուսէ՝ Լեման ծովակաւ, և Հռոդանոս գետով՝ որ 'ի մերմէ նահանգէս բաժանէ զհելուետացիսն։ Այդ իսկ էր՝ որ չտայր նոցա սփռել թափառել համարձակ, և ընդ դրացիս դիւրաւ տալ պատերազմ. որով արքն պատերազմասէրք՝ տրտամուչք յոյժ կային։ Ըստ ամբոխի արանցն և ըստ փառաց մարտի և քաջութեան անձուկ համարէին զսահմանս իւրեանց, որ ձգէին յերկայնութիւն երկերիւր քառասուն հազար քայլ. 'ի լայնութիւն՝ հարիւր ութսուն հազար։*

*Գ. Ի սոյն բանս ելեալ և իշխանութեամբ Որգետորիքսի յորդորեալք՝ հաստատեցին հայթայթել զպէտս*

Ճանապարհին․ գրաստս և սայլս յաճախութեամբ գնոց անցուցանել, հանել սերմանիս բազում, զի ցորեան առատ գլացի 'ի Ճանապարհին․ ընդ մերձաւոր ազգս հաստել զհաշտութիւն և զբարեկամութիւն։ Առ այս բաւական համարեալ զերկեամ մի յերրորդում ամի չու տանել հաստատեցին օրինօք։ Առ յարգելս ածել զայդ ամենայն՝ ընտրի Որգետորիքս․ յանձին ունի զհրեշտակութիւն յաղգս ազգս։ Ցուցուօջն յայնմիկ 'ի բանի առնէ զԿաստիկոս՝ զԿատամանտալեդեայ որդին զսեկուանացի, որոյ հայրն զարքայութիւն սեկուանացւոց կալեալ էր բազում ամս, և 'ի ծերակուտէ և 'ի ժողովրդենէն Հռովմայ բարեկամ անուանեալ․ զի զառաջին թագաւորութիւն հօր իւրոյ յազգի անդ իւրում 'ի բուռն առնուցու․ զնոյն առնել հաւանեցուցանէ և զԴումնորիգսի, եղբօրն Դիւիտիակայ․ որ 'ի ժամանակին զիշխանութիւն ազգին իւրոյ ունէր՝ հաճոյ յոյժ լեալ ժողովրդեանն, և տայ նմա կնութեան զդուստր իւր։ Դիւրին յոյժ ցուցանէ նոցա զհնարաւորութիւն գործոյն․ զի ինքն իսկ հասանելոց էր 'ի տէրութիւն ազգին իւրոյ, զի անշուշտ իմն էր՝ զօրութիւն հելուետացւոց քան զամենայն Գալլիոյ, և զի ինքն զօրօք իւրովք և բանակաւ՝ հանդերձեսցէ նոցա զթագաւորութիւնն, վկայէր։ Ի բանս յայս ելեալ՝ հաւատս և երդմունս 'ի միջի կռեն, և 'ի ձեռս առեալ զթագաւորութիւնն՝ ոչինչ երկմտեն տիրել բոլոր Գալլիոյ 'ի ձեռն երից հզօրագոյն և անդամակալ ժողովրդոց։

Դ․ Իբրև ազդ եղեն իրքն առ հելուետացիս գուշակաւ, ըստ սովորութեան իւրեանց կապանօք 'ի դատաստան ձգեցին զՈրգետորիքս։ Ի պարտաւորելն հարկ էր պատուհասին գալ 'ի վերայ, 'ի հուր այրել։ Ի կէտ եդեալ աւուր դատաստանին, ժողովեաց Որգետորիքս յատեան անդր զամենայն գերդաստան իւր իբրև տասն հազար այր աստի անտի կուտեալ․ և զամենայն ոք որ ընդ իւրով հովանեաւ և զպարտապանս իւր, որ բազմաթիւ յոյժ էին նորա, եմոյծ անդր․ և 'ի ձեռն այնոցիկ թափեաց զանձն 'ի դատն տալոյ։ Իբրև զայրացեալ ընդ այն քաղաքին՝ զինուք

զամագիտ լինել երաւանց իւրեանց ջանային, և իշխանքն խմբէին զամբոխ մարդկանն յագարակաց, մեռաւ Որգետորիքս. և ըստ հելուետացւոցն կարծեաց չէ ինչ անկասկած թէ ոչ անձամբ անձին իցէ արարեալ։

Ե. Սակայն և յետ մահուան նորա՝ առնել նկրտէին հելուետացիք զոր 'ի մտին եդեալ էր, ելանել 'ի սահմանաց իւրեանց։ Յայն իբրև կազմ համարեցան զանձինս, զամենայն ամուր քաղաքս իւրեանց առ հասարակ՝ երկոտասանիւ չափ, գիւղս իբրև չորեքհարիւր, և զառանձնականս շինուածս հրոյ ճարակ առնեն, զամենայն ցորեան՝ բայց միայն զոր ընդ իւրեանս էին տանելոց՝ այրեն, զի հատեալ յուսոյ 'ի տուն դառնալոյ՝ պատրաստագոյնք առ ամենայն վտանգս գտանիցին. հրաման տան իւրաքանչիւր բառնալ ալեւր ամսոց երից։ Ի հաւան ածեն զՌաւրակս և զՏուլինգս և զԼատոբրիգս՝ զսահմանակիցս իւրեանց՝ այրել նովին խորհրդով զքաղաքս և զգիւղս իւրեանց, և ընդ իւրեանս յուղի անկանել։ Եւ զբոյացիս՝ որ երբեմն յայնկոյս Հռենոսի բնակեալք՝ անցեալ էին յերկիր Նորիկայ և առեալ զՆորէիա, զսոսա ևս ընկալեալ յիւրեանս՝ խառնեն 'ի նիզակակցութիւնն։

Զ. Կրկին ևեթ ճանապարհք էին՝ ընդ որս մարթ էր նոցա ելանել 'ի տանէ. մին՝ ընդ սեկուանացիս՝ նեղ և դժուարին, ընդ մէջ Յուրա լերին և Հռենոս գետոյ, ընդ որ հազիւ մէն մի սայլ ընթանայր. 'ի վերայ կայր և լեառնն բարձրաբերձ, մինչև սակաւուց դիւրին լինելոյ զդէմ ունել։ Միւսն ընդ մեր նահանգ, դիւրին և անարգել. վասն զի ընդ հելուետացիս, և ընդ Ալլոբրոգս՝ դեռ ևս հաշտեալս ընդ ժողովրդեան Հռովմայ, անցանէ գետն Հռոդանոս, որոյ են ուրեք ուրեք հուն տեղիք անցից։ Վերջին քաղաք Ալլոբրոգաց և մերձ 'ի սահմանս հելուետացւոց է Գենեւա։ Ի քաղաքէ անտի 'ի հելուետացիս արկեալ կայ կամուրջ։ Ակն ունէին հաւանեցուցանել զԱլլոբրոգս՝ որ չև ևս բարեմտութեամբ էին ընդ հռովմէական ժողովրդեան, կամ բռնադատել զնոսա՝ թոյլ տալ անցանել ընդ սահմանս իւ-

բեանց։ Ի հանդերձել ամենայնի 'ի չու, սահմանեն օր՝ գալ ժողովել ամենեցուն յափն Հռոդանոսի. որ օր՝ հինգ՚էր Կաղանդացն ապրիլի[1]. 'ի բդեշխութեան Լ. Պիսոնի, Ա. Գաբինիոսի։

Է. Իբրև ազդ եղև Կեսարու՝ թէ ընդ մեր նահանգ դէմ գնեն ճանապարհ առնել, ածապարէ ելանել 'ի քաղաքէն[2], և ըստ կարի մեծամեծ արշաւանօք խաղացեալ 'ի Գալլիա որ յայնկոյս, հասանէ 'ի Գենեւա, հրաման տուեալ ըստ ձեռին բաւականի մեծի բազմութեան զօրացն նահանգին առ հասարակ։ Ի յայնկոյս Գալլիա գունդ[3] մի եւեթ կայր։ Զկամուրջն որ առ Գենեւաւ՝ հրամայէ հատանել։ Հելուետացւոց զգաստ եղեալ գալստեան նորա՝ առաքեն առ նա հրեշտակս՝ զազնուականագոյնս յազգէն, որոց գլխաւորք էին Նումեիոս և Վերոդուկտիոս, ասել առ նա, թէ ցանկան առանց իրիք վնասու անցանել ընդ նահանգն, առ 'ի չգոյէ այլոյ ճանապարհի, և աղաչեն՝ զի նորա կամօքն զայն առնել մարթասցին։ Կեսարու ուշ 'ի կուրծս անկեալ զի զբդեաշխն Լ. Կասիոս սպանեալ էր հելուետացւոց, և զզօրս նորա հալածեալ և ընդ լծով[4] արկեալ, ոչ արժան դատեցաւ շնորհել նոցա. և համարէր զի 'ի տալ հրամանին ընդ նահանգն անցանելոյ՝ արքն ոխերիմք ոչ զգուշասցին յանիրաւութենէ և 'ի չարեաց. բայց զի ժամանակ ընդ մէջ անցանիցէ՝ մինչև 'ի գալ ապային զօր հրամայեալն էր, պատասխանի արար հրեշտակացն, թէ խորհեսցի պարա-

1 Այսինքն է քսան և ութ մարտի։

2 Պարզապէս քաղաք զՀռովմ իմանան հռովմայեցիք։

3 Գիտելի լիցի մի անգամ, զի գունդն կամ գումարտակ (Լէգէոն) հռովմէական՝ տրոհէր 'ի տասն խումբս, մէն մի տոցա յերիս ջոկատս՝ յերկհարիւրեկաց կազմեալս։ Բոլոր գունդն՝ յաճախ 'ի վեց հազար հետևակաց էր, մերթ երեքարիւր և մերթ եօթնհարիւր այրուձիով։ Իսկ հեծելազօրն տրոհէր 'ի վաշտս և 'ի ջոլիրս. վաշտին էին երեսուն և երկու այրուձի, 'ի ջոլիրն՝ տասն։ Սոցա իշխանք էին Գումապետք. Ասպահապետն իշխէր բոլոր այրուձիոյն, և կամ միոյ կամ միւսոյ թևին։

4 Զուէգ մի կապեալ 'ի ծայրս երկուց ցցելոց 'ի գետնի՝ լուծ կոչէին, ընդ որով անցուցանէին զպարտեալն յամօթ նախատանաց։

պով. իսկ թէ ինչ կամիցին, դարձցին անդրէն յերեքտասան ապրիլի:

Ը. Ի ժամանակի անդ յայնմիկ՝ գնդաւն ընդ իւր եղելով և զօրօքն հաւաքելովք 'ի նահանգէն, տեւեալ 'ի ծովակէն Լեմանայ հոսեցելոյ[1] 'ի Հռոդանոս գետ՝ մինչև 'ի լեառն Յուրա, որ զսահմանս սեկուանացւոց 'ի հելուետացւոցն որոշէ, ընդ իննևտասն հազար քայլ, ածէ պատուար վեշտասան քայլ 'ի բարձրութիւն և փոս հատանէ զնովաւ: Զայն գործ վճարեալ՝ պահապանս կարգէ, զամուրսն պնդէ, զի եթէ բռնի անցանել գուն դնիցեն, զդէմ կալցի: Ի գալ աւուրն սահմանելոյ ընդ հրեշտակսն՝ և 'ի դառնալ նոցա առ ինքն, անհնար է ինձ՝ ասէ՝ ըստ օրինաց և ըստ օրինակի հռովմէական ժողովրդեան՝ անցս տալ ումեք ընդ նահանգն. և եթէ բռնի տանել ժտիցիք՝ ընդդէմ կացից: Հելուետացւոց 'ի յուսոյ անտի ելեալ 'ի դերև, զնաւակսն կցեալ, և կազմեալ լաստս յոլովս, կէսք ընդ հունս Հռոդանոսի՝ ուր ծանծաղագոյն էր խորութիւն գետոյն, էր զի 'ի տուէ և էր զի գիշերի գուն գործեալ անցանել՝ յամրութենէ գործոյն և 'ի զօրացն խռանէ և 'ի նետից վանեալք, 'ի ձգնութենէ անտի 'ի բաց կացին:

Թ. Մնայր մի ճանապարհ ընդ սեկուանացիս, ընդ որ 'ի չառնուլ սեկուանացւոց յանձն՝ ոչ կարէին գնալ վասն անձկութեան կրճիցն: Ինքնին ոչ մարթացեալք ածել զնոսա 'ի հաւան՝ արձակէն հրեշտակս առ Դումնորիգս էդուացի, զի նորա բարեխօսութեամբ հաւանիցեն խնդրոյն: Դումնորիգս նշանաւոր էր շնորհօք և առատութեամբ առ սեկուանացիս, և հելուետացւոց բարեկամ, զի յազգէ անտի ածեալ էր իւր 'ի կնութիւն զդուստր Որգետորիգսի, և գահասիրութեամբ զհետ կրթէր փոփոխմանց, և քաղաքս բազումս երախտեօք զիւրև ածել ջանայր: Սմին իրի յանձն առնու զխնդիրն, և ընդունի 'ի սեկուանացւոց,

[1] Հռոդանոս գետ որընթաց հատեալ անցեալ զԼեման ծովակ՝ թուի անտի ելանել յայնկոյս:

զի թոյլ տացեն հելուետացւոց անցանել ընդ սահմանս նոցա, և արար տալ նոցա միմեանց պատանդս. սեկուանացւոց՝ մի՛ արգելուլ զճանապարհն հելուետացւոց, և հելուետացւոց՝ առանց վնասու և հարստահարութեան անցանել:

Ժ. Իրազեկ լինի Կեսար թէ հելուետացւոց կամք են ընդ երկիրն սեկուանացւոց և էդուացւոց խաղալ 'ի սահմանս Սանտոնաց, որ 'ի Նահանգին է քաղաք. զոր թէ առնիցեն՝ տեսանէր վտանգ մեծ հասանել Նահանգին, արանց պատերազմողաց և թշնամեաց ժողովրդեանն Հռովմայ մերձաւոր լինել յընդարձակ և 'ի ցորենաւէտ տեղիսն: Վասն որոյ պատուարին զոր կանգնեաց՝ ետեղակալ իւր թողու զՏիտոս Լաբիենոս յոստիկանութիւն, և ինքն մեծարշաւ ճանապարհօք փութացեալ յԻտալիա, անդ գունդ կրկին գումարտակ առնէ, և զերիսն որ զԱկուիլեաւ ձմերէին՝ հանեալ 'ի ձմերոցացն, հնգեքումբք գնդօքն խաղայ գնայ ընդ Ալպիս՝ ընդ կարճոյ ճանապարհ՝ 'ի յայնկոյս Գաղլիա: Ցայն տեղիս Կենտրոնք և Գրայօկէլք և Կատուրիգք կալեալ զբարձունսն, արգելուլ ջանային զզօրն 'ի ճանապարհէն: Վանեալ զսոսա 'ի մարտս բազումս, յՕկելեայ՝ 'ի վերջին ծագաց յայս կոյս գաւառին՝ գայ հասանէ յաւուր եօթներորդի 'ի սահմանս վոկոնտիացւոց յայնկոյս գաւառին. անտի յԱլլոբրոգաց սահմանս, յԱլլոբրոգաց ածէ ըզզօրն 'ի սեգուսեանս. սոքա արտաքոյ են Նահանգին՝ յայնկոյս Հռոդանոսի առաջինք:

ԺԱ. Հելուետացիք ընդ կապանս և ընդ սահմանս սեկուանացւոց զզօրս իւրեանց անցուցեալ և հասեալ 'ի սահմանս էդուացւոց՝ զանդաստանս նոցա աւար հարկանէին: Էդուացւոց յանհնարս մտեալ պահել 'ի նոցանէ զանձինս և զստացուածս իւրեանց, հրեշտակս առնեն առ Կեսար աղաչել զնա յօգնութիւն. այնպէս յամենայն ժամ առ ժողովուրդն հռովմէական երախտաւոր երևեալ, զի ոչ երբէք՝ գրեթէ ակն յանդիման զօրաց մերոց՝ երկիր իւրեանց աւերեցաւ, որդիք իւրեանց 'ի գերութեան վարեցան, և քա-

ղեկք յառ յաղթու մատնիցեն: Ի նմին ժամանակի յա-ռամ եղաւագին. և Ամբառք կե՛ կարևոր բարեկամք Է-դուացւոց և ազգականք՝ ծանուցանեն Կեսարու, Թէ 'ի զերծիլ ապարանոց՝ ոչ դիւրաւ կարասցեն 'ի քաղաքաց զբռնութիւն Թշնամեաց. նոյն և Ալոբրոգք՝ որոց գիւղք և ստացուածք էին յայնկոյս Հռոդանու, փախստեայ առ Կե-սար անկեալք՝ ցուցանեն ոչինչ մնացեալ նոցա բաց 'ի գետ-նոյ անդաստանացն: Յայսցանէ շարժեալ Կեսարու՝ ոչ պարտ համարեցաւ այլ ևս կալ մնալ, մինչև ապականել հե-լուետացւոց զամենայն ինչ դաշնակցացն՝ 'ի Սանտոնան հասանիցեն:

ԺԲ. Գետ մի է Արար ընդ միջ սահմանացն Էդուա-ցւոց և Սեկուանոց հոսեալ 'ի Հռոդանոս՝ անհնարին ծան-րաքայլ, մինչև ոչ կարել աչաց ընտրել յոր կոյս ընԹա-նայցէ. յանցանել ընդ այս կոյսն հելուետացիք լաստիւք և կարկառայիւք նշելովք: Տեղեկացեալ Կեսարու 'ի լըր-տեսաց, զի զերիս մասունս զօրացն անցուցեալ էր հելուե-տացւոց ընդ գետն, և երիր մասն կայր յայսկոյս Արար գետոյ, յերրորդում պահու զիշերոյն խաղացեալ 'ի ճամ-բարէն երիւք գնդօք, յայն մասն հասանէ՝ որոյ չև էր ան-ցեալ զգետն: Յանկարծուստ դիպեալ տուեալ 'ի նոսա 'ի ծանրաբեռինսն՝ զմեծագոյն մասն նոցա եհար, մնացեալքն 'ի փախուստ դարձան, և Թաքեան 'ի մերձակայ անտառ-սըն: Մարզն այն կոչէր Տիգուրեան. զի ամենայն աշխարհն հելուետացւոց 'ի չորս մարզս բաժանի: Այն մարզ միայն ելեալ երբեմն 'ի տանէ՝ ըստ աւանդելոյ հարց մերոց՝ սպա-նեալ էր զընդհանուր Լ. Կասսիոս, և զզօրս նորա ընդ լծով մուծեալ: Արդ, կամ ըստ դիպայ կամ գիտնանիմանհից խորհրդով, մասն աշխարհին հելուետացւոց՝ որոյ զուժգին աղէտսն հասուցեալ էր ազգին հռովմայեցւոց, այն նախ և զվրէժսն ելոյծ. որով ոչ միայն զաշխարհին ՟ի՟ասաւ զվրէժս հանեալ Կեսարու, այլ և զիւրն առանձինն. քանզի զհաւ-աներոյն իւրոյ Լ. Պիսոնի՝ զԼ. Պիսոն զօրավարահ սպա-նեալ էր տիգուրեանց 'ի նմին մարտի յորում և զԿասսիոս:

ԺԳ. Յետ այսր կռուոյ վճարելոյ, առ զհետ պնդելոյ այլոց զօրացն հելուետացւոց, փութայ կամուրջ արկանել զԱրարիւ, և այնպէս անցուցանէ զբանակն։ Յանկարծահաս գալստեամբ նորա խռովեալ հելուետացւոց, զի զոր նոքա յաւուրս քսան հազիւ էին կատարեալ՝ անցանել ընդ գետն, լուան 'ի միում աւուր բովանդակեալ 'ի նմանէ, հրեշտակութիւն առաքեն առ նա՝ որում գլուխ էր Դիւիկոն, այն որ 'ի Կասսիական մարտին զօրավարեալ էր հելուետացւոց։ Սա այսպէս խօսեցաւ ընդ Կեսարու. Զի եթէ ժողովուրդն հռովմէական հաշտութիւն ընդ հելուետացիս արասցէ, հելուետացիք յայն կողմ գնասցեն և անդ կացցեն ուր և կարգեսցէ զնոսա Կեսար և կամեսցի կալ. իսկ եթէ պատերազմաւ վանել նկրտիցի, յուշ լիցին նմա հին ձախողանք հռովմէական ժողովրդեանն և առաջին քաջութիւն հելուետացւոց։ Զի զմարզ մի յեղակարծումն յարձակեալ եհար, մինչդեռ անցեալքն յայնկոյս գետոյն ոչ կարէին 'ի թիկունս հասանել իւրեանցայոցն, մի զայն մեծ իմն անձին առաքինութեան գրեսցէ, կամ զինքեանս անգոսնեսցէ. զի նոցա 'ի հարց և յերիցագունից ուսեալ է, քաջութեամբ մանաւանդ քան նենգով կռուել, կամ 'ի դարան մտանել։ Վասն որոյ զգոյշ լիցի, գուցէ տեղին յորում կայցեն՝ յաղետից հռովմէական ժողովրդեան և 'ի սատակմանէ զօրուն անուն ժառանգեսցէ կամ յիշատակ թողուցու։

ԺԴ. Զայս նոցա Կեսար ետ պատասխանի. Աներկմիտ լիցին թէ յիշատակեալքն 'ի հրեշտակացն հելուետացւոց անմոռաց 'ի մտի կան նորա և առաւել ընդ այն վշտանայ զի այն անցք տարապարտուց անցին ընդ ժողովուրդն հռովմէական. զոր եթէ միտք իւր յանիրաւութիւն ինչ ըստգտանէին, չէր ինչ գժուարին զգոյշ և պատրաստ լինել. բայց պատրեցաւ զի զանձին ինչ չգիտէր գործեալ՝ յորմէ երկիցէ, և ոչ առանց իրիք վնասու երկնչել արժան համարէր։ Զի թէ և զհին թշնամանսն մոռացօնս առնել կամիցի, միթէ կարասցէ անյիշատակ առնել և զարդի արհամար-

հանսն , զի առանց իւրոյ հրամանի ընդ նահանգն բռնաբար խաղալ գնալ ջանացան , զի զԷդուացիս , զի զԱմբարս , զի զԱլլոբրոգս չարչարեցին , զի ընդ յաղթութիւն իւրեանց այնչափ յանդգնագոյնս պարծիցին , և զի ընդ այնքան երկար ժամանակ անպատուհաս անիրաւել իւրեանց զարմացին , և այդ 'ի նոյն միտս գայ . զի յորժամ 'ի յեղաշրջել իրաց՝ ուժգին ապաշաւեսցեն մարդիկ յորոց վասն ամպարշտութեան նոցա վրէժս պահանջիցեն աստուածք անմահք , նոցա երբեմն յաջողուածս և երկար արձակուրդ 'ի պատժոց սովոր են շնորհել : Այսոքիկ այսպէս . սակայն եթէ տացին ինքեան պատանդք 'ի նոցանէ , 'ի միտ առնուլ՝ թէ կատարելոց են զոր ինչ խոստանայցեն , և եթէ Էդուացւոց՝ ընդ զրկանացն զոր հասուցեալ են նոցա և նիզակակցաց նոցին , նոյն և Ալլոբրոգաց , փոխարէնս հատուսցեն , խաղաղութիւն արասցէ և ինքն ընդ նոսա : Դիւիկոն ետ պատասխանի . Ի նախնեաց անտի իւրեանց խրատեալ հելուետացիք , առնուլ միայն պատանդս , և ոչ տալ սովոր են . և այսմ վկայ և ժողովուրդն հռովմէական : Զայս տուեալ պատասխանի՝ էլ գնաց :

ԺԵ . Ի վաղիւ անդր բառնան 'ի տեղւոջէ անտի զբանակն , զնոյն առնէ և Կեսար . և բովանդակ զայրուձին , արս չորեքհազար , զոր յամենայն նահանգէն և յԷդուացւոց և 'ի նոցին նիզակակցաց ժողովեալ էր , առաջոյ արձակէ՝ երթալ լրտեսել յոր կողմն խաղայցեն թշնամիք . որոց ընդդագոյնս զհետ մտեալ վերջապահ գնդին , յանդէպ վայրի մղեն մարտ ընդ առնուձիոյ հելուետացւոց , և սակաւք ոմանք 'ի մերոցն անկանին . սովին կռուով մեծամտեալ հելուետացւոց , զի հինգհարիւր հեծելով զայնպիսի բազմութիւն այրուձիոյ վանեալ էին , սկսան զտեղի առնուլ յանդըգնագոյնս և վերջապահ գնդաւն ընդ մերսն 'ի մարտ գրգռել : Կեսար զիւրսն արգելոյր 'ի կռուոյ , և առ ժամն շատ համարէր խափան լինել թշնամւոյն 'ի յափշտակութենէ և յաւարառութենէ : Աւուրս հնգետասան այնպէս ուղևորեցան , զի ընդ վերջապահ գունդն թշնամեաց և ընդ

մեր առաջապահս՝ ոչ աւելի ինչ քան զհինգ կամ վեց հազար քայլ ընդ մէջ էր։

ԺԶ. Անդ յայնժամ հանապազօր Թախանձէր Կեսար զէդուացիսն՝ վասն ցորենոյն զոր խոստացեալ էին աշխարհաւ. քանզի առ ցրտոյն, զի որպէս յառաջագոյն ասացաւ, զհիւսիսեաւ կայ Գալլիա, ոչ միայն ցորեան հասուն ոչ գտանէր յանդաստանսն, այլ և ոչ անասնոց ճարակ առատ. իսկ զցորեանն զոր ընդ գետն Արար նաւուք էր ածեալ՝ ոչ կարէր առնուլ 'ի պէտս, զի յԱրարէ 'ի բաց խոտորեալ էր զընթացսն հելուետացւոց, յորոց ոչ կամէր հեռանալ. Էդուացիք օր 'ի յօր առնէին, թէ հաւաքի և կրի և մերձ է։ Իբրև ետես թէ օրէ յօր յերկարաձգի, և 'ի վերայ կայ օրն բաժանելոյ զօրացն ցորեան, կոչեցեալ զիշխանս նոցա, յորոց բազումք էին 'ի ճամբարին, ընդ որս և զԴիւիտիակ, և զԼիսկոս՝ զգլխաւոր իշխանութեանն, (զոր Վերգոբրետ անուանեն էդուացիք՝ ընտրեալ ամի ամի, տէր կենաց և մահու 'ի վերայ իւրոցն), ամբաստան լինի զնոցանէ, զի զոր ոչ ուստեք է գնել և ոչ յանդոց ժողովել, 'ի կարևոր ժամանակին և յառ կռան կալ թշնամեաց, չօգնեն ինչ նոքա նմա, մանաւանդ զի 'ի նոցա պաղատանացն ածեալ՝ յանձն առեալ էր զպատերազմն. առաւել և բողոք ծանր ընդ այն արկանէ, զի անխնամ՝ ընդ վայր հարեալ էր 'ի նոցանէ։

ԺԷ. Յայնժամ ապա ուրեմն 'ի բանիցն Կեսարու շարժեալ Լիսկոսի, զոր լռեալն էր յառաջագոյն՝ առաջի առնէ. թէ՝ են ոմանք՝ որոց իշխանութիւն առաւել զօրէ առ ամբոխին, և նոքին ինքեանք սոսկականքն առաւել կարօղ են քան զմեզ զբուն իշխանքս. սոքա աղմկարար և չարաթոյն բանիւք արգելուն զռամիկն չբերել ցորեան, զի եթէ ոչ զօրեսցուք, ասեն, 'ի բուռն առնուլ զտէրութիւն Գալլիոյ, լաւ ևս է գալլիացւոց իշխանութեան հպատակել քան հռոմայեցւոց. և անշուշտ լերուք, զի եթէ հելուետացւոց յաղթեսցեն հռոմայեցիք, ընդ այլում ամենայնի Գալլիաստանի՝ և զէդուացւոց ազատութիւն կապտեսցեն։ Ի սոցունց ասոր խորհուրդք մեր և որ ինչ 'ի ճամբարիս գոր-

ծլցի, առ թշնամիսն պատմին. և սանձել զսոսա ես չեմ ձեռնհաս. և թէպէտ 'ի հարկէն ստիպեալ յայտնեմ զայս յունեկն Կեսարու, իմանամ քանի՜ վտանգ է ինձ այդ գործ. վասն որոյ և որչափ յերկար հնար եղև, լուռ կացի։

ԺԸ. Ի միտ առնոյր Կեսար զի Լիսկոս 'ի բանսն զԴումնորիքս նկարագրէր զեղբայրն Դիւիտիակայ, այլ քանզի չկամէր բազմաց առջ. եղելոցն հրապարակագոյժ առնել զիրսն, արձակեաց վաղվաղակի զատեանն. կալաւ զԼիսկոս, և 'ի նմանէ հարցանէ առանձինն զասացեալսն 'ի ժողովին. Նա ևս աղատօրէն և համարձակագոյնս խօսի. զնոյնս հարցանէ և յայլոց 'ի ծածուկ, և ճշմարիտ գտանէ. զի նոյն ինքն Դումնորիքս՝ 'ի ծայր յանդգնութեան հասեալ, և առատութեամբն շնորհս մեծ գտեալ առ խառնաղանճին, և յապստամբութիւն մտաբերեալ, ընդ ամս բազումս զբաժանցից և զամենայն բեկար էդուացւոց՝ խոտանաւ յինքն էր գրաւեալ. զի 'ի նորա համարձակելն՝ ոչ ոք այլ իշխէր համարձակել։ Սովին և զստացուածսն աճեցուցեալ, և գանձ բազում մթերեալ յառատաձեռնութիւն, ջոկիր մեծ առն և ձիոյ իւրով ծախիւք սնուցանէր հանապազ, և զիւրև ունէր. և ոչ միայն յիւրում բնին, այլ և 'ի մերձաւոր քաղաքս զօրաւոր էր յոյժ։ Այսր հարստութեան աղագաւ՝ զմայրն յամուսնութիւն էր տուեալ 'ի բիտուրիգեանս՝ առն ազնուի և ճոխի 'ի նոսա. իսկ ինքն 'ի հելուետացւոց անտի կին արարեալ. զքոյրն առ 'ի մօրէն, և զմերձաւոր ազգականս իւր հարսնացուցեալ էր յայլ քաղաքս. վասն այնր խնամութեան օգնական և սիրող էր հելուետացւոց. ատեայր ինքնօրէն առանձինն զԿեսար և զհռովմայեցիս, զի նոցա գալստեամբն՝ իշխանութիւն իւր նուազեալ էր, և եղբայր իւր Դիւիտիակ յառաջին չափս շնորհաց և շքոյ դարձեալ։ Եթէ ինչ հռովմայեցւոյն պատահեսցէ, ակնկալութիւն յոյժ էր նմա հասանել 'ի թագաւորութիւն 'ի հելուետացւոց. իսկ տէրութեամբ ժողովրդեանն Հռովմայ՝ ոչ միայն յարքայութենէ, այլ և 'ի շնորհացն զոր ունէր՝ անյոյս լինել։ Քննութեամբն 'ի վերայ հասանէր Կեսար, զի

սկիզբն փախստեան հեծելազգունդ մարտին ձախողելոյ՝ 'ի Դումնորիգեայ. և յայրուձիոյն իւրմէ եղեալ էր. զի Դումնորիգս ինքն իսկ էր իշխան այրուձիոյն զոր Եդուացիք տուաքեալ էին Կեսարու. և նոցա փախստեամբն միւս ևս հեծելազօրն զարհուրեալ էր։

ԺԹ. Այսմ ամենայնի հաստ եղեալ, իբրև այսց կասկածանաց այլ ևս հաւաստիք 'ի վերայ յաւելուին, այն զի ընդ սահմանս սեկուանացւոց անցուցեալ էր հելուետացիս, և տուեալ նոցա պատանդս տալ միմեանց, և զայս ամենայն ոչ միայն անհրաման յիւրմէ և յազգէն արարեալ, այլ և առանց նոցա գիտութեան, և զի յիշխանացն Եդուացւոց ամբաստանութիւն էր զնմանէ, բաւական համարէր զնշան ինքնին պատուհասելոյ զնա, կամ պատուէր տալոյ ազգին պատուհասել։ Այսմ ամենայնի մի ինչ ևեթ ընդդէմ կայր, զի զեղբօր նորա զԴիւիտիակեայ զմեծ իղձամն առ ժողովուրդն հռովմէական և զմեծ նորա առ ինքըն սիրականութիւն, զանստգիւտ հաւատան զարդարութիւնն և զզգօնութիւն ծանուցեալ գիտէր. զի պատկառէր՝ նորա պատուհասիւն վիրաւորել զսիրտ Դիւիտիակայ։ Վասն որոյ մինչչև ինչ արարեալ, հրաման տայ կոչել առ ինքն զԴիւիտիակ, և զհանապազօրեայ թարգմանսն 'ի բաց տարեալ, 'ի ձեռն Կ. Վալերիոսի Պրոկիլլոսի, իշխանի գաւառին Գալլիոյ՝ իւրում ընտանւոյ, որում հաւատս մեծ ընծայէր յամենայնի, խօսի ընդ նմա, յուշ արարեալ նմա որ ինչ 'ի ժողովն իշխանացն գալլիացւոց զԴումնորիգեայ առաջի իւր բանք եղեն. ցուցանէ ևս որ ինչ իւրաքանչիւր ոք առանձինն առ իւր խօսեցան. խնդրէ և յորդորէ՝ զի առանց վշտանալոյ, 'ի միտ առեալ զնշան, ինքնին զնմանէ դատ արասցէ, կամ պատուէր տացէ ազգին՝ առնել դատ։

Ի. Դիւիտիակ գիրկս արկեալ Կեսարու բազում արտասուօք սկսաւ պաղատել, մի խստութեամբ դատել զեղբայրն. գիտեմ, ասէ, զի ճշմարիտ են այդոքիկ, և չիք ոք որ 'ի նմանէ առաւել քան զիս լցէ վշտացեալ. այնու զի մինչդեռ ես առաւելն և յամենայն գալլիաստան կարող յոյժ էի

շնորհիւ, և նա վասն մանկութեանն ոչ ինչ, ինև աճեաց և յառաջ եկն: Նովին ճոխութեամբ և հարստութեամբ՝ ոչ միայն 'ի նուազել զշնորհս իմ, նա և 'ի կորուստ իմ վարեցաւ, այլ իմ յեղբայրական սիրոյս և 'ի մեծարանաց ամբոխին շարժեալ է: Զի եթէ խստագոյն ինչ ընդ նա անցուսցէ Կեսար, քանզի իմ յայն չափս բարեկամութեան հասեալ է առ նմա, ոչ ոք համարեսցի արտաքոյ իմոց կամացս զայն եղեալ, որով ելցի սրտից համօրէն Գաղղիոյ յինէն ուծանալ: Իբրև զայս բազում բանիւք արտասուախառն հայցէր 'ի Կեսարէ, կալեալ Կեսար զաջոյ նորա, մխիթարեաց և աղաչէր վախճան առնել բանիցն. այնչափ մեծ է, ասէ, քո շնորհդ առ իս, զի և զպետութեանն թշնամանս և զիմ վիշտս՝ կամաց և աղաչանաց քոց շնորհեմ: Կոչէ առ իւր զԴումնորիքս. զեղբայրն անդր մատուցանէ. մերկանայ որ ինչ նա 'ի նմա ըստգիւտ տեսանիցէ, որ ինչ ինքն իմանայցէ, և որ ինչ քաղաքն բողոք հարկանիցէ՝ առաջի առնէ. խրատ տայ՝ յայնմհետէ յամենայն կասկածելեաց զգոյշ լինել. զանցեալսն եղբօր քում Դիւիտիակոյ շնորհեմ, ասէ: Պահապանս կացուցանէ Դումնորիքսի, զի զոր ինչ գործիցէ և ընդ որս խօսիցի՝ գիտել մարթասցի:

ԻԱ. Ի նմին աւուր 'ի լրտեսացն իրազեկ լեալ, թէ թշնամիք դարեալ կան ընդ լերամբ՝ ութհազար քայլ հեռի յիւրմէ ճամբարէն, դէտս արձակեաց տեսանել զբնութիւն լերինն, և զինչ ելք շուրջ զնովաւ. ազդ եղև թէ դիւրին էր: Յերրորդում պահու իսկ և իսկ հրաման տայ Տիտոսի Լաբիենոսի տեղակալին՝ երկոքումբք գնդովք, և նովին առաջնորդօք որոց լրտեսեալ էր զճանապարհն, ելանել 'ի գագաթն սարոյն. զինչ միտք իցեն իւր՝ յայտ առնէ: Ինքն 'ի չորրորդ պահուն նովին շաւղօք ընդ որ գնացեալ էր թշնամեաց, դիմէ առ նոսա, և զայրուձին յառաջուց արձակէ: Պ. Կոնսիդիոս՝ այր իրաց պատերազմի հմուտ համարեալ, գտեալ երբեմն 'ի բանակին Լ. Սիլլայի և ապա 'ի Մ. Կրասոսին, յառաջագոյն ընդ լրտեսսն առաքի:

ԻԲ. Ընդ աշալուշն, իբրև հասեալ էր Տ. Լաբիենոս 'ի

գլուխ լերինն, և ինքն 'ի Ճամբարէ Թշնամեաց ոչ քան ըզհազար հինգ հարիւր քայլ հեռի, և որպէս 'ի գերեացն հաւաստեաց ապա, ոչ իւր և ոչ Լաբիենի գալուստ ծանուցեալ ինչ էր, Կոնսիդիոս արձակերասան առ նա ընթանայ. զլեառն զոր Լաբիենոսի պատուիրեալ էր ըմբռնել, պատմէ գրաւեալ զայն 'ի Թշնամեաց, զորս 'ի գաղղիական զինուցն և 'ի նշանաց էր ծանուցեալ: Կեսարոս զզօրս իւր 'ի մերձակայ բլուրն խաղացուցեալ, անդ զռազմն յօրինեաց: Լաբիենոս, որպէս հրամայեալն էր նմա 'ի Կեսարէ՝ մի՛ մարտ գնել, մինչև զօրք իւր հուպ երևեսցին 'ի Ճամբար Թշնամեացն, որպէս զի յամենուստ միանգամայն յարձակեսցին 'ի Թշնամիսն, կալեալ զլեառնն և 'ի կռուոյ ժուժկալեալ՝ ակն ունէր մերոցն: Ապա յետ բազում ժամուց աւուրն՝ գիտաց Կեսար՝ զի իւրքն կալեալ էին զլեառնն, և հելուետացւոցն չու արարեալ, և Կոնսիդիոս ահաբեկ զարհուրեալ՝ զչտեսեալն իբրև տեսեալ պատմեալ էր:

ԻԳ. Ի նմին աւուր՝ որով սովորն էր միջօրեաւ՝ զհետ պնդել Թշնամեացն, և երեք հազար քայլ հեռի 'ի նոցա Ճամբարէն՝ հարկանէ զբանակ իւր: Ի վաղիւ անդր զի երկու ևեթ աւուրք մնացին բաշխելոյ ցորեան զօրականին, և զի 'ի մեծ և 'ի Ճոխ աւանէն Էդուացւոց՝ 'ի Բիբրակդէ, ոչ աւելի քան զութ և տասն հազար քայլ հեռի էր, զցորենոյ խնամ տանել արժան գատեցաւ, և խոտորեալ զուղին 'ի հելուետացւոց՝ դէմ եդ գնալ 'ի Բիբրակդ: Ի փախստէից Լ. Եմիլիոսի գումապետի այրուձիոյն գաղղիացւոց ազդ լինի բանն առ Թշնամիս: Հելուետացիք՝ կամ յահէ իւրեանց խուճապաւ փախուցեալ կարծելով յինքեանց զհռովմայեցիս, մանաւանդ զի յառաջնում աւուրն՝ մինչդեռ տիրացեալ էին բարձանցն՝ ոչ մղեցին զմարտն, կամ յուսացեալ արգելուլ 'ի ցորենոյ, փոխեալ զմիտսն և շրջեալ զճանապարհն, սկսան հետամուտ լինել մերոցն 'ի վերջապահ գընդէն կուսէ, և գրգռել ընդ նոսա:

ԻԴ. Այսմ 'ի վերայ կայեալ Կեսարոս, ած զզօրսն 'ի մերձակայ բլուրն, և արձակեաց զայրուձին՝ զդէմ ունել

յարձակման թշնամեաց. ինքն 'ի նմին ժամու երեքկին ճակատ յարդարեաց 'ի մէջ բլրոյն 'ի չորից հնաւուրց գնդացն, իսկ 'ի ծայրս սարոյն 'ի վեր քան զինքն՝ կացոյց զերկոսին զգունդսն զորս նորոգ գումարեալ էր յայնկոյս Գաղղիոյ, և զամենայն նիզակակիցսն, և բովանդակ զբլուրն խտացոյց արամբք: Յայնժամ հրաման ետ զսարուփալթայն 'ի մի վայր ժողովել, և վերին ճակատուն պահել զնոսա: Հելուետացւոց համօրէն սայլիւքն զհետ անկեալ, հաւաքեցին 'ի մի վայր զկահ և զկարասին և ինքեանք խուռն ճակատու վանեալ զմեր այրուձին, առապարափակ արարեալ եկին հասին յառաջակարգ ռազմն մեր:

ԻԵ. Կեսար, նախ յիւրոց երեսաց և ապա յամենեցունց՝ զերիվարսն 'ի բաց հաներալ, զի 'ի հաւասարել վըտանգին՝ բարձցէ զյոյս փախստի, և զիւրսն քաջալերեալ, մղեաց զճակատն: Արձակեալ մարտկաց զաշտեայսն 'ի բարձանց անտի, բեկին զապարափակ թշնամեացն. 'ի քայքայել նորա՝ սուր հաներալ դիմեցին 'ի վերայ նոցա: Խափան մեծ էր գաղղիացւոց 'ի մարտ, [զի բազմաց 'ի նոյանէ ասպարք 'ի հարուածոց աշտէիցն խոցեալ թափանցանց և ընկաղձեալ, զի 'ի կորանալ սլաքին՝ ոչ խլել կարէին, և ոչ 'ի խափանել ձախոյ բազկին՝ դիւրաւ ինչ մարտնչել. մինչև բազմաց՝ յերկար տատանելոյ բազկին՝ ցանկալի էր ընկենուլ 'ի ձեռաց զվահանսն, և մերկամարմին մրցել: Հուսկ ապա 'ի վիրացն պարտասեալք, սկսան վերջանալ, և 'ի լեառնն իբրև հազար քայլ մօտակայ՝ երթալ պատսպարել: Ի ժամանել նոցա 'ի լեառնն և մերոյն 'ի վերայ հասանել, բոյացիք և տուլինգեանք, իբրև հնգետասան հազար այր՝ որ ըզվերջս բանակին թշնամեաց կալեալ՝ յետնոց նոցա կային 'ի թիկունս, բացեալ զճանապարհայն զթև իւրեանց՝ սկսան գալ 'ի վերայ և պաշարել զմերսն. զոր տեսեալ հելուետացւոց ընկրկելոց 'ի լեառնն՝ սկսան և նոքա անդրէն միջամուխ լինել և նորոգել զմարտն: Հռովմայեցիք 'ի դիմի հարեալ նոցունն՝ յերիս առաջս 'ի վերայ յարձակեցան, առաջինն և երկրորդ առաջքն՝ առ ընդդէմ ունել պարտելոցն և վանելոց, երրորդն՝ եկելոցն ընդդէմ դառնալ:

ԻԶ. Այսպէս անվճար կռուով՝ մղեցաւ մարտ ուժգին և երկար: Իբրև ոչ ևս այլ զօրէին զդէմ ունել մերոցն յարձակման, կէսք՝ որպէս յառաջն՝ 'ի լեառնն ընկըրկեցան, կէսք առ կահ կարասին և առ սայլս իւրեանց ժողովեցան. քանզի 'ի բոլոր յայսմ մարտի, յեօթն ժամէ մինչև ցընդերեկս պատերազմեալ, ոչ ոք կարաց զթշնամին թիկնադարձոյց տեսանել: Առ կարասեաւն ևս մինչև 'ի խոր գիշեր մղեցաւ պատերազմ. զի զսայլսն պատնէշ ընդդէմ կանգնեալ, 'ի մերսն յարձակեալս նետաձիգ 'ի բարձանց լինէին, և ոմանք 'ի մէջ սայլիցն և անուոց զլայն գեղարդունս և զմկունդս ընկեցեալ՝ վիրաւորէին զմերսն: Յետ երկար մարտի, տիրեցին մերքն կարասւոյն և ճամբարին: Անդ դուստրն Որգետորիքսի և մի յորդւոցն ձերբակալ եղեն: Ի կռուոյ անտի ապրեցան արք իբրև հարիւր երեսուն հազար, և զգիշերն զայն ողջոյն գնացին անդադար. և ոչ ըզմասն ինչ գիշերոյն զկայ առեալ յընթացիցն, յաւուրն չորրորդի հասին 'ի սահմանս Լինգոնաց. զի մերքն 'ի հոգս վիրաւորաց և թաղելոյ զդիականց յամեալ աւուրս երիս՝ ոչ մարթացան պնդիլ զհետ նոցա: Գրեաց Կեսար առ Լինգոնս և պատգամ յղեաց՝ ոչ ցորենով և ոչ այլով իւիք օգնել նոցա. իսկ թէ օգնեսցեն, 'ի նոյն համարի զնոսա ունել յորում զհելուետացիսն: Ինքն աւուրս երիս պարապ տուեալ, ամենայն զօրօքն անկաւ զհետ նոցա:

ԻԷ. Հելուետացիք ամենայն պիտոյից կարօտութեամբ ցականեալք՝ առաքեն առ նա պատգամաւորս՝ անձնատուր լինել. որոց հասեալ առ նա զճանապարհայն՝ և անկեալք առ ոտս նորա, աղերսախառն պաղատանօք խաղաղութիւն հայցէին. Նորա հրամայեալ՝ անդէն ուր էինն յայնժամ՝ զալստեան իւրում սպասել, հնազանդ եղեն: Հասեալ Կեսարու առ նոսա՝ պահանջեաց զպատանդսն, զզէնսն և ըզծառայսն գնացականս առ նոսա: Մինչդեռ 'ի խնդիր էին և ժողովէին զնոսա, պարապ առեալ զգիշերն՝ իբրև չորք հազարք արանց Ուրբիգէն անուանելոյ քաղաքին, կամ յերկիւղէն տոկացեալք՝ թէ գուցէ 'ի զինաղերծն լինել 'ի պա-

ատուհաս մահանեացն, կամ 'ի յուսոյ փրկութեան յորդորեալք՝ թէ յայնչափ բազմութեան անձնատուր եղելոց թաքիցէ փախուստ իւրեանց, կամ համարեալ թէ ամենեւին իսկ անյայտ մնասցէ, յառաջին պահու գիշերոյն ելեալք 'ի ճամբարէն հելուետացւոց՝ 'ի Հռենոս կոյս և 'ի սահմանս գերմանացւոց դիմեցան։

ԻԸ. Զոր իբրև գիտաց Կեսար, ընդ որոց սահմանսն անցեալ էին՝ հրամայեաց նոցա խնդրել ածել և դարձուցանել, եթէ անպարսաւս կամիցին լինել յաչս իւր. զդարձեալսն 'ի թշնամեաց սակի կալաւ, զայլսն ամենեսեան՝ կապուտեալս 'ի պատանդից, 'ի զինուց և 'ի փախստէից, ընկալաւ յանձնատուրս։ Հելուետացւոց՝ Տուլինգաց և Լատոբրիգաց պատուէր ետ դառնալ 'ի սահմանս իւրեանց ուստի ելեալքն էին. և զի բնաւ զարմտիսն կորուսեալ էր, և չէր ինչ 'ի տան 'ի դարման քաղցի, հրամայեաց Ալլոբրոգաց՝ մատուցանել նոցա ցորեան. իսկ նոցա զքաղաքսն և զգիւղս զոր հրկէզ արարեալ էին՝ պատուիրեաց շինել։ Զայն յայն դէմս արար մանաւանդ, զի զտեղին՝ ուստի մեկնեալ էին հելուետացիք՝ ոչ կամեցաւ մնալ ապալէր, զի մի առ անդոյն բեղնաւորութեան՝ բնակեալքն յայնկոյս Հռենոսի գերմանացիք 'ի սահմանաց իւրեանց անցանիցեն 'ի սահմանս հելուետացւոց, և սահմանորդք լիցին նահանգին Գալլիոյ և Ալլոբրոգաց։ Ի խնդրել եդուացւոց՝ զբոյացիսն վասն մեծի անուան առաքինութեան նոցա 'ի սահմանս իւրեանց նստուցանել, շնորհեաց նոցա զայն. որոց ետուն նոքա ագարակս, և ապա հասարակորդս իրաւանց և ազատութեան իւրեանց ընկալան զնոսա։

ԻԹ. Ի բանակին հելուետացւոց գտան տախտակք յունարէն նշանագրօք դրոշմեալք, և ածան առ Կեսար. 'ի տախտակսն յայնս յականէ յանուանէ հաշիւ արարեալ կայր՝ քանիք ոմանք ելեալ էին 'ի տանէ, ոյք կարողք զէն առնուլ. և ուրոյն՝ մանկունք, ծերք և կանայք։ Բովանդակութիւն համարէն, 'ի հելուետացւոց՝ գլուխք երկերիւր վաթսուն և երեք հազար, 'ի Տուլինգաց՝ երեսուն և վեց

հազար, 'ի Լատոբրիգաց՝ չորեքտասան, 'ի Ռաւրակացւոց՝ քսան և երեք, 'ի Բոյացւոց՝ երեսուն և երկու. 'ի սոցանէ կարողք 'ի զէն բառնալ՝ իբր իննսուն և երկու հազար. ընդ ամենայն՝ երեք հարիւր վաթսուն և ութ հազարք էին. դարձելոցն 'ի տուն համար արարեալ՝ գտան հարիւր տասն հազարք։

Լ. Ի կատարել Հելուետացւոց մարտին՝ հրեշտակք համօրէն Գալլիոյ՝ իշխանք քաղաքաց եկին առ Կեսար 'ի շնորհակալութիւն. խնդամուտ լինիմք, ասեն, զի թէպէտ և ժողովուրդն Հռովմէական վասն առաջնոց մխտուցն Հելուետացւոց պատերազմաւ վրէժս խնդրեաց 'ի նոցանէ, բայց ոչինչ պակաս երկրին Գալլիոյ քան ժողովրդեանն Հռովմայ եղև այն օգուտ. վասն զի զբարգաւաճ իրս իրեանց և զտունս լքեալ էր Հելուետացւոց առ 'ի պատերազմ մղել ընդ ողջոյն Գալլիոյ, տիրել աշխարհին, և վայր բնակութեան յընդարձակածաւալ աշխարհէն ընտրել, զոր և 'ի համօրէն Գալլիոյ վայելչագոյն և արգասաւոր դատեցին, և զայլ ազգս հարկատուս կացուցանել։ Խնդրեցին՝ ժողովոյ հրաման տալ իւրեանց՝ բովանդակ Գալլիոյ 'ի նըկատեալ ինչ աւուր, զի Կեսարուն հաճութեամբ օրէն իցէ զայն առնել, զի իրք ինչ են նոցա՝ զոր հասարակաց հաւանութեամբ կամին խնդրել 'ի նմանէ։ Այնմ դուռ և պատուէր եղեալ, օր սահմանեցին յատենի, և երդմամբ հաստատեցին 'ի միջի իւրեանց՝ մի՛ ումեք պատմել, բայց որոց հասարակաց խորհրդով պատուիրեալն էր։

ԼԱ. Իբրև ատեանն արձակեցաւ, նոյն իշխանք քաղաքաց՝ որոց յառաջագոյն եկեալ էր առ Կեսար, դարձան անդրէն և խնդրեցին, թոյլ առնել ինքեանց՝ խօսել ընդ իւր 'ի ծածուկ զփրկութենէ իւրեանց և զամենեցուն։ Ընկալեալ զխնդիրն անկան առ հասարակ արտասուալից առ ոտս Կեսարու. ոչ յայն և եթ ուշ ունիմք, ասեն, և ջանամք՝ զի բանքս մեր մի՛ պատմեսցին, այլ և զի հայցուածք մեր կատարեսցին. այն զի եթէ պատմեսցի ինչ, 'ի մեծ խոշտանգանս անկանիցիմք։ Փոխանակ ընդ նոցա Ճառեաց

Դիւիտիակոս էդուացի. Ոլջոյն Գալլիոյ, ասէ, երկու են բաժինք. զմիոյն իշխանութիւն ունին էդուացիք, զերկրորդին՝ արուեռնացիք: Սոքա իբրև ամս բազում կռուեցան յոյժ ընդ միմեանս զտէրութենէն, դէպ եղև զի արուեռնացիք և սեկուանացիք 'ի վարձու կալան զԳերմանացիս, յորոց զառաջինն հազարք իբրև հնգետասան անցին ըստ Հռենոս. վայրագ և խուժդուժ արանցն հարեալ միանգամ 'ի սէր անդաստանաց և մշակութեան և առատութեան գալլիացւոց, բազումք անցին թափեցան յայսկոյս. են այժմ 'ի Գալլիա իբրև հարիւր քսան հազարք. ընդ սոսա էդուացիք և որք ընդ իւրեանց ձեռամբ՝ մի և երկիցս անգամ զինուք մրցեցան, աղէտք մեծամեծք հասին պարտելոցն, զամենայն տոհմիկսն, զամենայն ծերակոյտն և զբնաւ այրուձին կորուսին. նովին գուպարածօք և աղետիւք բեկեալք, որ երբեմն քաջութեամբ իւրեանց և ասպնջականութեամբ ժողովրդեան Հռովմայ՝ և բարեկամութեամբ զօրաւորքն էին յոյժ 'ի Գալլիա, բռնադատեցան պատանդս տալ սեկուանացւոց զազնուագոյնս յազգէն, և երդմնիւ ուխտել զազգն՝ մի՛ պահանջել զպատանդսն, մի՛ օգնականութիւն հայցել 'ի հռովմայեցւոց, և մի՛ խորշել չլինել յաւէժաբար ընդ իւրեանց ձեռամբ և տէրութեամբ: Ես միայն եմ, ասէ, յազգէն էդուացւոց, որ ոչ յանձն առի երդնուլ, և ոչ զորդիս իմ տալ պատանդս. և վասն այսորիկ փախեայ 'ի քաղաքէս և եկի 'ի Հռովմ առ ծերակոյտն՝ խնդրել զօրավիգն, զի ոչ յերդուեմն և ոչ 'ի պատանդս պարաւանդեալ եմ: Բայց չար ևս անցք ընդ յաղթող սեկուանացիսն անցին, քան ընդ պարտեալսն էդուացիս. զի Արիովիստոս թագաւոր գերմանացւոց եկն նստաւ 'ի սահմանս նոցա, և զերիր մասն սեկուանեան երկրին՝ զլաւագոյնն համօրէն Գալլիոյ՝ յինքն վարեալ ունի, և այժմ 'ի միւսմէ երրորդ մասնէն ևս հրամայէ ելանել սեկուանացւոց. զի յառաջ քան զսակաւ ամիսս՝ քսան և չորք հազար արք 'ի Հարուդաց առ նա եկեալ էին, որոց տեղի և կայան պատրաստել պարտ էր. հարկ լիցի 'ի սակաւ ամս՝ հալածիլ ամենեցուն 'ի սահ-

մանացն Գաղղիոյ, և ամենայն գերմանացւոց ընդ Հռենոս անցանել. զի ոչինչ համեմատութիւն է ընդ գաղղիական երկիրն և ընդ գերմանացւոցն, և ոչ ընդ վարս այսր կենացս ընդ այնր: Իսկ Արիովիստ՝ իբրև գամ մի 'ի պարտութիւն մատնեաց զգաղղիացւոցն զօրս՝ պատերազմաւն մղելով յԱմագետոբրիա, գոռոզաբար և անողորմս իշխէ, զմէն միոյ յազնուացն խնդրէ զորդիսն պատանդս, և 'ի նոսին զամենայն ազգ տանջանաց մատուցանէ, եթէ ինչ ոչ ըստ ակնարկութեան կամ ըստ կամաց իւրոց գործիցի. այր վայրենամիտ է, բարկասիրտ և ձեռներէց. չէ հնար այլ ևս համբերել տէրութեան նորա. եթէ չլինիցի ինչ օգնութիւն 'ի Կեսարէ կամ 'ի հռովմէական ժողովրդենէ, ամենայն գաղղիացւոց զնոյն հասցէ առնել, զոր ինչ հելուետացիքն արարին, հատուած երթալ 'ի տանէ, այլ օթևան, այլ բընակարանս խնդրել՝ հեռաւորս 'ի գերմանացւոց, և բաղդ՝ որ զինչ և պատահեսցէ, զփորձ առնուլ. այսուքիկ եթէ հասցեն յունկն Արիովիստայ, չիք երկբայութիւն՝ զի ընդ ամենայն պատանդսն որ առ նմա՝ ծանր պատուհաս արասցէ. Կեսար կամ իւրով իշխանութեամբ և զօրացն, կամ նորով յաղթութեամբն և կամ անուամբ հռովմէական ժողովրդեան կարող է ահ արկանել նոցա, զի մի մեծ ևս ամբոխ գերմանացւոց անցցէ ընդ Հռենոս, և զԳաղղիա ողջոյն պահպանել յանիրաւութենէն Արիովիստայ կարող է:

ԼԲ. Դիւիտիակոյ զայս ճառ արկեալ, ամենեքեան որ անդ կային մեծաւ ողբովք սկսան օգնութիւն խնդրել 'ի Կեսարէ: Զգաստ եղև Կեսար՝ զի սեկուանացիք միայն յամենեցունց ոչ ինչ առնէին յորոց այլքն գործէին, այլ տըրտումք և կոր 'ի գլուխ զերկիր նշմարէին: Զարմացեալ ընդ իրսն, եհարց 'ի նոցանէ զպատճառսն: Ոչինչ ետուն պատասխանի սեկուանացիքն, այլ 'ի նմին տխրութեան կարկեալ կային: Իբրև բազում անգամ հարցեալ 'ի նոցանէ՝ և ոչ ինչ կարաց հանել ինչ բարբառ, նոյն Դիւիտիակ արար պատասխանի. թէ՝ Թշուառագոյն և դառնագոյն բաղդ սեկուանացւոց այն էր քան զայլոց, զի նոքա միայն չիշխէին

և ոչ զաղտ բողոքել և ոչ օգնութիւն խնդրել, և յանդը-թութենէ հեռաւորին Արիովիստայ այնպէս զարհուրէին, որպէս եթէ անդ յանդիման կայցէ. զի այլոց՝ գոնէ փախըստեան կարողութիւն էր, իսկ սեկուանացւոց՝ որ 'ի սահմանս իւրեանց ընկալան զԱրիովիստ, որոց և քաղաքք ամենայն 'ի ձեռին նորա էին, ամենայն չարչարանաց ժուժկալել հասանէր:

ԼԳ. Այսմ ամենայնի խելամուտ լեալ Կեսար, քաջալերեաց բանիւք զսիրտս գալլիացւոցն, և խոստացաւ հոգ տանել իրացն. Յոյս մեծ ունիմ, ասէ, զի յիմմէ բարերարութենէս և յիշխանութենէ յորդորեալ դադարեսցէ Արիովիստ յանիրաւութեանցն: Զայս ասացեալ՝ զժողովն արձակեաց: Եւ ըստ այսոցիկ՝ բազում ինչ եւս խրախոյս տայրին նմա՝ խորհել և յանձն առնուլ զիրսն. և նախ այն՝ զի էդուացիքն, բազում անգամ եղբարք և արենակիցք 'ի ծերակուտէն անուանեալք, տեսանէր զի 'ի գերութիւն և 'ի տէրութիւն գերմանացւոցն էին նուաճեալք, և իմանայր զի պատանդք էին նոցա առ Արիովիստ և առ սեկուանացիս. զոր յահաւոր տէրութեան ժողովրդեանն Հռոմայ՝ անպատեհ իւր և ընկերհաշտութեանն վարկանէր: Եւ զի առ փոքր փոքր սովորեալ գերմանացւոց անցանել ըստ Հռենոս, մեծ ամբոխութիւն 'ի նոցանէ թափէր 'ի Գալլիա, որ վտանգաւոր թուէր հռովմէական ժողովրդեան. և չունէր ակն՝ թէ արք ամեհիք և դուժք, զգօնասցին և մի, որպէս կիմբրացիքն և Տևտոնք արարին, ելեալ ողջոյն Գալլիոյ՝ արշաւեսցեն 'ի Նահանգն, և անտի յԻտալիա ձգտեսցին. մանաւանդ զի զսեկուանացիսն 'ի մերմէ գաւառէն Հռոդանոս ևեթ բաժանէ. այսոցիկ վաղագոյն զառաջս ունել պարտ համարէր: Իսկ ինքն Արիովիստ յայնքան ամբարտաւանութիւն և 'ի խրոխտանս յաւելեալ է, զի անտանելի երևէր:

ԼԴ. Վասն այսորիկ հաճոյ թուեցաւ նմա՝ հրեշտակս առնել առ Արիովիստ, խնդրել 'ի նմանէ՝ զի 'ի միջավայրի ուրեք երկոցուն ընտրեսցէ ինչ տեղի երեսելոյ և խօսից ընդ

իրեարս. զի իւր կամք են զընկերհաշտութենէն և զկարեւոր իրաց իւրաքանչիւր՝ խօսել ընդ նմա։ Այնմ հրեշտակութեան պատասխանի արար Արիովիստ. Եթէ ինձ՚ի Կեսարէ պէտք ինչ էին, ես ինքնին առ նա գայի. իսկ եթէ նա ինչ յինէն կամիցի, նմա պարտ է առ իս գալ. Թող զայդ, ես ոչ առանց զօրու ՚ի կողմանս յայնս Գաղղիոյ իշխեմ գալ, որ ՚ի ձեռին կայցեն Կեսարու, և ոչ զզօրն առանց մեծի կարաւանի և հանդերձանաց ՚ի մի վայր կարեմ ժողովել. և զարմանք թուին ինձ, թէ յիմս Գաղղիա՝ որում մարտիւ յաղթեալ է իմ, զինչ իրք իցեն Կեսարու կամ բնաւ իսկ հռովմէական ժողովրդեան։

ԼԵ. Զայս առեալ Կեսարու պատասխանիս, կրկնէ առաքէ առ նա միւսանգամ հրեշտակս սովին պատուիրանօք. Որովհետև բազում բարերարութիւն գտեալ յիւրմէ և՚ի հռովմէական ժողովրդենէն, զի ՚ի բդեշխութեան իւրում՝ թագաւոր և բարեկամ ՚ի ծերակուտէն կոչեցաւ, զայս ինքեան և ժողովրդեանն Հռովմայ հատուցանէ շնորհս, զի ՚ի խօսակցութիւն հրաւիրեալ գալ՝ դժկամակի, և ոչ զհասարակաց իրացս խօսելոյ և գիտելոյ ինչ իւր արժանի համարի, որ ՚ի նմանէն էր պահանջելի՝ այս է. Նախ, մի ևս այսուհետև ամբոխ ինչ մարդկան ընդ Հռենոս ՚ի Գաղղիա մուծանիցէ. զայնր զհետ՝ զպատանդսն գտեալս առ իւր յէդուացւոց, տացէ դարձուսցէ, և սեկուանացւոց թոյլ տացէ, զի՛ զորս կանն առ նոսա՝ իւրով կամաւ օրէն լիցի նոցա տալ անդրէն ՚ի դուրս. զէդուացիս մի ինչ հարստահարեսցէ, մի ընդ նոսա և մի ընդ նիզակակիցս նոցին տայցէ պատերազմ. Եթէ զայս առնիցէ, իւր և հռովմէական ժողովրդեան անպակաս շնորհ և բարեկամութիւն եղիցի ընդ նմա. իսկ եթէ չլինիցի լսելի, (քանզի ՚ի բդեշխութեան Մ. Մեսաղայ և Մ. Պիսոնի՝ հրաման ետ ծերակոյտն, որ ոք հրամանատար կայցէ Գաղղիոյ, զոր ՚ի շահ օգտի ընկերհաշտութեանն կարօղն է առնել, պաշտպան լիցի էդուացւոց և այլոց բարեկամաց ժողովրդեանն Հռովմայ), ինքն ոչ անփոյթ առնիցէ զզրկանաց էդուացւոցն։

ԼԶ. Այսոցիկ զայս դարձոյց պատասխանի Արիովիստոս․ Իրաւունք են պատերազմի, յաղթողացն այնպէս տիրել պարտեցելոց՝ որպէս և կամք իցեն. նոյն և ժողովուրդն Հռովմէական՝ ոչ ըստ օտարի հրամանաց՝ այլ ըստ կամս իւր սովոր է իշխել. եթէ ինքն չտայ ինչ պատուէր ժողովրդեանն Հռովմայ՝ թէ զիարդ իւրով իրաւամբքն վարեսցի, չէ օրէն Հռովմէական ժողովրդեան զնա յիւրոց իրաւանցն խափանել. Եդուացիք քանզի զբաղդ մարտի փորձեալ և զինուք կռուեալ և 'ի պարտութիւն մատնեալ՝ ընդ հարկաւ եղան, մեծապէս անիրաւէ Կեսար, իւրով միջամուխն լինելով, նուազ առնել զհարկս իւր։ Եդուացւոց ըզպատանդսն դարձուցանեմ ոչ. ոչ ընդ նոսա և ոչ ընդ նիզակակիցս նոցին մղեմ մարտ յանիրաւի, եթէ 'ի նմին կացցեն միաբանեցեն զոր ուխտեցինն, և զհարկսն ամ ըստ ամէ հատուսցեն. իսկ եթէ զայդ չառնիցեն, 'ի բացեայ յոյժ եղիցի 'ի նոցանէ եղբայրութեան անուն Հռովմէական ժողովրդեանն։ Իսկ զի ազդ առնէ Կեսար չլինել իւր անփոյթ զզրկանացն Եդուացւոց, ոչ ոք առանց անձին կորստեան մարտուցեալ է ընդ իւր. եթէ կամի՝ մատիցէ 'ի կռիւ. 'ի միտ առնուցու, զոյժ պնդութեան անպարտելի պատերազմափորձ գերմանացւոցն, որոց ընդ ամս չորեքտասան չիք մտեալ ընդ յարկաւ։

ԼԷ. Ի միում ժամանակի պատմէին Կեսարու պատգամքս այսոքիկ, և հրեշտակք յԵդուացւոց և 'ի Տրեւիրաց հասանէին, Եդուացիքն՝ 'ի բողոքել, զի Հարուդք՝ դեռ այնինչ հատուած եկեալք 'ի Գաղղիա, զսահմանս իւրեանց աւար հարկանէին, և զի ինքեանք՝ և ոչ պատանդս տալով կարող լինէին շահել զհաշտութիւն Արիովիստայ. իսկ Տրեւիրք, զի հարիւր աւանք [1] Սուեւաց յափն Հռենոսի բանակեալ՝ անցանել նկրտէին. իշխանք են նոցա Նասուա և Կիմբերիոս եղբարք։ Ցայսցանէ՝ 'ի վեր ընդոստուցեալ Կեսար, պարտ

1 Այս է, տասն բիւրք Սուեւաց. զի որպէս ինքն Կեսար 'ի Դ. գիրսն ասէ, հազար այր ապառազէն յիւրաքանչիւր աւանէ 'ի պատերազմ ելանէին։

համարեցաւ աճապարել. գուցէ նոր գունդ Սուեւաց ընդ վաղահաս զօրուն Արիովիստայ միախառնեալ 'ի վերայ գումարեալ, ոչ դիւրին լինիցի դիմակալել նոցա. վասն որոյ՝ ցարեան 'ի պաշար փութանակի ժողովեալ, մեծամեծ ճանապարհօք չու արար դիմեալ առ Արիովիստ:

ԼԸ. Իբրեւ գնաց երեքօրեայ ճանապարհ, զեկուցանեն, թէ Արիովիստ համագունդ ամենայն զօրօք խաղայ ըմբռնել զՎեսոնտիոն քաղաք մեծ սեկուանացւոց, և երեց աւուրց ճանապարհ մեկնեալ է յիւրոց սահմանաց: Խափանել զայն մեծապէս պարտ անձին համարեցաւ Կեսար. զի ամենայն իրաց կարեւորաց 'ի պատերազմ՝ առատութիւն յոյժ էր 'ի քաղաքի անդ. և ինքն 'ի բնութենէ տեղւոյն այնպէս էր պատսպարեալ, զի դիւրութիւն մեծ մատուցանէր 'ի գործ պատերազմի. քանզի Դուբիս գետ՝ իբրու կարկինեալ իմն զնովաւ՝ պատէ գոգցես զքաղաքն ողջոյն շուրջանակի. զմնացեալ վայրն, որ չէ ինչ աւելի քան զվեց հարիւր ոտնաչափ, զորով զանց առնէ գետն, ունի լեառն իմն ահագին բարձրութեամբ, այնպէս զի մինչ 'ի ստորոտս լերինն այնորիկ յերկոցուն կողմանց հասանեն ափունք գետոյն. զվայրն զայն՝ պարիսպ շուրջ ածեալ՝ բերդանման կազմէ և կցէ ընդ քաղաքին: Այսր խաղայ Կեսար զցայգ և զտիւ մեծարշաւ ուղեւորութեամբ, և կալեալ զքաղաքն՝ պահնակս 'ի նմին կացուցանէ:

ԼԹ. Մինչդեռ 'ի պատճառս ցորենոյ և համբարոց աւուրս քանի մի յամենայ 'ի Վեսոնտիոն, 'ի հարցանելոյ մերոցն և 'ի չչնչմանց գաղղիացւոց և թանգարաց, որք 'ի մեծայաղթ վիթխարութենէ սաստկանդամ մարմնոց գերմանացւոցն՝ ուժգնութիւն անհնարին և հրահանգս համարէին նոցա 'ի զէնս, և յաճախ մարտուցեալ ընդ նոսա, ասէին, ոչ երեսաց նոցա և ոչ գժնէութեան աչացն հանդուրժել կարացեալ. 'ի բանից սաստ այնչափ երկիւղ յանկարծակի կալաւ զբանակն ողջոյն, մինչև վրդովել ոչ չափաւորապէս զամենեցուն զմիտս և զսիրտ: Այս սկիզբն առնախ 'ի հազարապետաց զօրուն և յասպահապետաց, և

յայլոց ամանց որ 'ի դէմս բարեկամութեան յՈստանէն ըղ-հետ եկեալք Կեսարու, ողբային զմեծ վտանգն, զի ոչ մեծ ինչ փորձ էր նոցա 'ի գործ պատերազմի. յորոց այլ ոք այլ ինչ ածեալ իւր պատճառ կարեւոր 'ի գնալ՝ խնդրէր իւրով հրամանաւն մեկնիլ գնալ. այլք յամօթոյ պատկառեալք, առ 'ի խորշելոյ 'ի կարծեաց երկիւղի, կային մնային. սոքա ոչ զերեսան կեղծաւորել, երբեմն և ոչ յարտասուաց ժոյժ ունել մարթացեալք, թաքուցեալք 'ի խորանսն՝ կամ զօրհաս իւրեանց աշխարհէին, կամ ընդ ընտանիսն՝ զհասարակաց վիշտ վտանգին ողբային. և 'ի բանակն առհասարակ կտագիրք լինէին: Ի ձայնից սոցա և յարհաւրաց՝ նոքին իսկ որ քաջափորձքն էին ճամբարաց, զինուորք և հարիւրապետք և իշխանք առն և ձիոյ, առ սակաւ սակաւ խռովէին: Որ ոք 'ի սոցանէ ոչ կարի երկչոտ կարծեցուցանել կամէին զանձինս, ոչ 'ի թշնամւոյն զանգիտել ասէին, այլ յանձուկ կրճից ճանապարհէին, և 'ի մեծութենէ անտառաց եղելոց ընդ մէջ իւրեանց և Արիովիստոսյ, կամ 'ի չկարելոյ դիւրաւ բառնալ բաւական պաշար ցորենոյ: Ոմանք ևս գուշակ լինէին Կեսարու, թէ յորժամ բանակ առնուլ և նշանս 'ի կռիւ մարտի բառնալ տացէ հրաման՝ ոչ անսայցեն զօրականք, և առ ահին ոչ յարձակեսցին:

Խ. Այսոցիկ միտ եդեալ Կեսարու, ժողով կոչեալ, և յամենայն կարգէ զհարիւրապետսն յատեան անդր մատուցեալ, ծանուենս յանդիմանեաց զնոսա. նախ, զի արժան էր նոցա խնդրել կամ զմտաւ ածել՝ յոր կողմ վարիցին կամ որո՛վ խորհրդով: Ի բդեշխութեան իւրում՝ ջերմագոյնս ցանկացեալ Արիովիստ բարեկամութեան հռովմէական ժողովրդեանն, է՞ր իցէ ումեք համարել զնա յանդգնաբար յիւրոց պատշաճից նշկահել: Ի միտ առեալ զխնդիրս նորա և յարդարութիւն պայմանացն հայեցեալ, հաւանեալ եմ թէ ոչ զիմ ինչ և ոչ զհռովմէական ժողովրդեան զշնորհըս արհամարհիցէ նա: Իսկ եթէ մոլեգնեալ և խելագարութեամբ ճակատ տայցէ, զմ՞է զանգիտիցէք. կամ ընդէ՞ր զանձանց քաջութենէ կամ զիմմէ՞ խնամոց անյուսք իցէք.

այդմ Թշնամւոյ եղեալ է հանդէս յաւուրս հարց մերոց, յորժամ կիմբրացւոց և Տեւտոնաց հալածեալ'ի Կ. Մարիոսէ՝ ոչ սակաւ գովութեան զօրն քան զինքնին իսկ զզօրավարն գտեցաւ արժանի. եղև և զարդիս յԻտալիա 'ի ծառայապատամբ խաղմի անդ, որոց և փոքր ինչ և հրահանգք առ 'ի մէնջ ընկալեալք՝ նպաստ լինէին. յորմէ իմանալ է, քանի առաւելութիւն իցէ արիական ժուժկալութեան. զի յորոց երբեմն յանզինուց անգամ երկնչէցին վայրապար, յետոյ զզինեալսն իսկ և զյաղթականսն 'ի պարտութիւն մատնիցեն. հուսկ ապա, սոքա այն գերմանացիք են՝ ընդ որս յաճախ պատերազմեալ հելուետացւոց, ոչ միայն յիւրեանց աշխարհին, այլ և 'ի նոցայն ևս յաղթահարեալ են զնոսա. և սակայն մերում զօրականին ոչ ունիցին գալ'ի կշիռ: Իսկ եթէ ոմանց խրտուցիլ ինչ անկանիցի ձախող պատերազմին և փախուստ գաղղիացւոց, սոքա եթէ քննիցեն՝ 'ի վերայ հասանիցեն, զի յերկարութենէ գուպարածին յոգնեալ գաղղիացւոց, իբրև Արիովիստ ամիս բազում կայր միայն 'ի ճամբարին և 'ի ճահիճսն և ոչ 'ի կռիւ ինչ ելանէր, 'ի յուսահատել նոցա 'ի մարտէ և 'ի ցրուել նա յանկարծի յեղակարծուստ իմն անկեալ նոցա 'ի վերայ, խելօք և հանճարով քան քաջութեամբ յաղթեաց նոցա: Բայց խելք որ ընդ խուժս և անհմուտս տեղի ունիցի, նովին և ոչ ինքն ակն ունի զմեր զօրս ըմբռնել: Իսկ որք զերկիւղ 'ի ցորեան և յանձուկս ճանապարհաց պատճառիցեն, ժպրհութեամբ գնան. զի կամ զխնամոց զօրավարին լինին յուսահատ, կամ պատուէր հրամանի նմա 'ի վերայ դնել թուէին. այդոքիկ ինձ անկ են. զցորեան՝ սեկուանացիք, լեւկացիք, Լինգոնք մատակարարեսցեն. կայ իսկ այժմէն ցորեան հասուն յանդաստանս: Զճանապարհէն՝ դուք ձեզէն 'ի կարճոյ լինիջիք խելամուտ: Իսկ զի անունկնդիր ասին լինել հրամանիս և ոչ դիմագրաւ արշաւել, ոչ ինչ ընդ այդ խռովիմ. քանզի գիտեմ ընդ ոյս ոմանս է զօրուն անսաստութիւն հրամանի, զի կամ չարաւ վճարեալ իրացն՝ ձախողանք պատահեալ են, կամ եղեալ ինչ

երևեալ՝ ագահութիւն յանդիմանեալ. իմ անարատութիւն՝ 'ի բովանդակ կեանս իմ, իսկ յաջողութիւն՝ 'ի հելուետացւոց անդ մարտին տեսաւ։ Վասն որոյ, զոր յառաջադելոցն էր այլ ես ասուրս, վճարեցից 'ի մօտոյ. և 'ի գիշերի աստ յայսմիկ՝ զչորրորդ պահու՝ չու արարից զի փութով առից 'ի միտ, պատկառա՞նք արդեօք և հարկ պաշտաման ազդողագոյն իցէ 'ի ձեզ, թէ երկիւղ։ Իսկ եթէ այնուհետև ոչ ոք եկեսցէ զհետ, սակայն ես՝ տասներորդ գնդաւն և եթ երթայց, զորմէ ոչ ինչ յերկուանամ, և եղիցի ինձ այն՝ գունդ գլխապահ։ Ընդ գունդն ընդ այն առաւել սիրական էր Կեսար, և վասն քաջութեանն վստահ յոյժ 'ի նոսա։

ԽԱ. Ի բանից աստի յայսցանէ՝ ամենեցուն միտք փոխեցան սքանչելապէս, և մեծ զուարթութիւն և ցանկութիւն մարտի պատերազմի զարթեաւ 'ի նոսա. և յառաջ քան զայլս՝ գունդն տասներորդ 'ի ձեռն հազարապետաց զօրուն մատոյց նմա շնորհս զբարւոք մտաց նորին հանդիսէ վասն իւր, և զինքն կազմ և պատրաստ խոստովանեաց 'ի մարտ պատերազմի։ Զնոյն ապա և այլ գունդք արարին 'ի ձեռն հազարապետաց զօրուն և հարիւրապետաց յառաջակարգ դասուցն, քաւել զանձինս առ Կեսարու, թէ չէք բնաւ յերկուացեալ նոցա և ոչ երկուցեալ. և զելից պատերազմին ոչ անձանց համարեալ զդատաստանն, այլ զօրավարին։ Եւ 'ի ձեռն Դիւիտիակայ՝ զոր 'ի գաղղիացւոց անտի հաւատարիմ յոյժ համարէր՝ հարցփորձ արարեալ ճանապարհին, առաւել քան զքառասուն վտաւանաց շրջանաւ, տանել զզօրն ընդ դիւր, 'ի չորրորդ պահուն՝ որպէս և ասացեալն էր, յուղի անկաւ։ Անդուլ ընթացիւք յաւուրն եօթներորդի լու եղև նմա 'ի լրտեսաց, թէ բանակ Արիովիստայ քսան և չորս հազար քայլ հեռի էր 'ի մերոցն։

ԽԲ. Արիովիստ՝ զգաստ եղեալ զգալստեանն Կեսարու, հրեշտակս առնէ առ նա, թէ զոր յառաջն էր ցանկացեալ բանակցութիւն նոցա ընդ միմեանս, ինքնին մարթի այնմ լինել, զի մօտ հասեալ կան, և իւր ես անվտանգ վարկանի կատարել։ Ոչ մերժեաց Կեսար զառաջարկութիւնն. զի

համարեցաւ զնա յառաջ միտս եկեալ, զի զոր նախ 'ի խնդրել իւրում զլացեալն էր՝ այժմ ինքնին խոստանայր։ Եւ 'ի մեծ ակնկալութեան գայր, թէ զիւր զայնչափ և զժողովրդեանն Հռոմայ առ ինքն զբարերարութիւնսն կշռեալ, 'ի միտ առեալ և զպահանջանս իւր, 'ի բաց կացցէ 'ի յամառութենէն։ Բանակցութեան օր յայտ արարին, զհինգերորդն յօրէն յայնմանէ։ Մինչև ցայն քանզի պատգամաւոր ասաւի անաւի երթայեն և գային 'ի միջի, խնդրեաց Արիովիստ, մի՛ զոք հետևակ ածել Կեսարու յատեան անդր, խիթամ, ասէ, դուցէ զարանակալ ինձ լինիցի. երկոքեան հեծելովք մատիցուք. ապա թէ ոչ, ոչ եկից։ Կեսարու ոչ կամեցեալ զովլին ողաղաւ զբանակցութիւնն խափանել. և ոչ զանձն առնուձիոյ գաղղիացւոցն իշխել հաւատալ, յոյժ իմն առ ձեռն պատրաստ համարեցաւ, հանեալ զամենայն երիվար 'ի գաղղիացի այրուձիոյն՝ հեծուցանել 'ի նոսա զդասականս գնդին տասներորդի յորս վստահն էր յոյժ. զի լիցին նմա թիկնապահք հաւատարիմք, եթէ պէտք ինչ լինիցին. 'ի գործել իրացն՝ մի ոմն 'ի զօրականէ տասներորդ գնդին ասէ ընդ խաղս. Քան զոր խոստացաւն առնէ Կեսար. խոստացաւ 'ի տեղի գլխապահ ջոկատի ունել զգունդս տասներորդ, և այժմ 'ի հեծելազօր[1] ամբառնայ։

ԽԳ. Էր դաշտ մի լայն, և 'ի նմա բլուր մեծ. վայր հաւասար միջոցաւ հեռի յերկոցունց բանակացն։ Անդր՝ որպէս սահմանեալն էր՝ մատեան 'ի խօսել։ Զգունդն զոր Կեսարու երիվարօք էր ածեալ, կացոյց քայլս երկերիւր հեռի 'ի բլրոյն, նոյն և այրուձին Արիովիստայ եկաց հաւասար միջոցաւ զտեղի առեալ։ Խնդրեաց Արիովիստ՝ յերիվարաց անտի խօսել, և բաց յանձանց՝ տասն եւս առընթերակացս ընդ իւրեանս առնուլ։ Իբրև անդր հասին, յուշ արար նմա Կեսար 'ի սկիզբն խօսիցն զիւր առ նա երախտիսն և զծերակուտին, զի յաւագանւոյ անտի թագաւոր էր

1 Զի հեծեալքն ազնուագոյն համարէին քան զհետիս։

անուանեալ և բարեկամ, և պարգևք մեծամեծարք առ նա էին առաքեալք. որում սակաւք, ասէ, վիճակեալ են, և հռովմայեցիք 'ի մեծ սպաս պաշտաման մարդկան սովոր են ընծայել զայն. իսկ քո ոչ մուտս ինչ ունելով և արդար պատճառս խնդրելոյ, յիմմէ և յաւագանւոյն առատ բարերարութենէ 'ի պարգևսն վայելեցեր: Իրազեկ ես առնէր՝ քանի՜ վաղնջական և արդար իրաւունք նոցա 'ի միջի կային ընդ էդուացիսն մտերմութեան. որպիսի և քանիցս և քանի՜ աւագամեծար 'ի վերայ նոցա վճիռք եղեալ էին. մինչև յամենայն ժամանակս իշխանութիւն ունել էդուացւոց զհամօրէն Գալլիոյ՝ մինչ չև ինչ խնդրեալ նոցա զմեր բարեկամութիւն. և զի օրէնք են հռովմէական ժողովրդեան, ընկերաց և բարեկամաց իւրոց ոչ միայն չկորուսանել ինչ, այլ և շնորհօք և փառօք և պատուով աճեցուն լինել: Իսկ զոր ինչ գամ մի բարեկամութեան ժողովրդեանն Հռովմայ մատուցեալ իցեն, ո՞վ հանդուրժեսցէ թէ յափշտակեսցի այն 'ի նոցանէ: Ցետ այնորիկ պահանջեաց որչափ ինչ տուեալ էր հրեշտակացն պատուէր, մի՛ ընդ էդուացիս կամ ընդ ընկերս նոցա տալ պատերազմ, զպատանդսն դարձուցանել. և եթէ ոչ զոք 'ի գերմանացւոց յետս 'ի տուն առաքել կարող իցէ, մի՛ ումեք յայնմհետէ թոյլ տալ անցանել ըստ Հռենոս:

ԽԴ. Առ պահանջմունս Կեսարու սակաւ ինչ ետ Արիովիստ պատասխանի, զանձին առաքինութեանց բազում ինչ ճառեաց. Իմ ոչ կամաւ է, ասէ, անցեալ ըստ Հռենոս. այլ 'ի ժտելոյ և 'ի հրաւիրմանէ նոցին գալլիացւոց. ոչ առանց մեծի յուսոյ և մեծաց փոխարինաց զտուն և զազգ իմ լքեալ. տուն բնակութեան է իմ 'ի Գալլիա 'ի նոցունց շնորհեալ, պատանդք նոցա յօժարակամ մատուցան ինձ. հարկս հանեմ իրաւամբք պատերազմի՝ զոր յաղթողաց է արկանել պարտելոց. ոչ ես ընդ գալլիացիսն, այլ գալլիացիք ընդ իս եդուն պատերազմ. ամենայն քաղաքք Գալլիոյ յարեան 'ի վերայ իմ 'ի պատերազմ և ընդդէմ ինձ բանակ կառուցին. զամենայն զօրն զայն միով ճակատու վարատեցի վկան-

դեալ․ եթէ այլ կամիցին փորձ փորձել, 'ի մաքառել պատրաստ եմ․ իսկ եթէ 'ի խաղաղութեան կալ լաւ համարին, անօրէն է յուրաստ կալ 'ի հարկաց զոր ցայսօր ժամանակի հաստուցեալ է։ Բարեկամութեան Հռովմէական ժողովրդեան ինձ 'ի զարդ և 'ի թիկունս արժան է լինել, ոչ 'ի վընաս․ և նովին յուսով խնդրեցի ես զայն․ եթէ ժողովուրդն Հռովմէական հատանիցէ զհարկս և հանցէ յինէն զհպատակս, ոչ սակաւ յօժարութեամբ հրաժարեցայց մտադիւր 'ի բարեկամութենէ ժողովրդեանն Հռովմայ, քան զոր փափաքեցի։ Իսկ զբազմութիւն գերմանացւոց 'ի Գալլիա անցուցանել, զայդ ոչ 'ի կռուել ընդ նոսա առնեմ, այլ յիմ յապահովութիւն․ վկայ է այսմ, զի չեկի՝ բայց եթէ աղաչեալ․ և ոչ պատերազմ ետու, այլ ընդդէմ կացի։ Իմ նախ քան զժողովուրդն Հռովմէական եկեալ է 'ի Գալլիա։ Յառաջ քան զայս ժամանակ՝ ոչ երբէք բանակք ժողովրդեանն Հռովմայ ըստ սահմանս նահանգին Գալլիոյ ելեալ էին։ Արդ զի՞նչ կամիցի այս լինել։ Ընդէ՞ր իցէ գալ 'ի ստացուածս իմ, այս իմ է նահանգ Գալլիա, որպէս այն՝ ձեր։ Որպէս ինձ չէ օրէն 'ի ձեր սահմանս արշաւել, այսպէս և ձեզ անիրաւ է՝ խափանել զիս յիմոց իրաւանցս։ Իսկ զի զէդուացիս բարեկամս ասես կոչեցեալ 'ի հրամանէ աւագանւոյն, ոչ այնպէս խժական ոք եմ ես և ոչ այնպէս անտեղեակ իրաց, մինչև չգիտել՝ թէ յայն ինչ անցեալ պատերազմին Ալլոբրոգաց՝ օգնականութիւն մատուցին էդուացիք Հռովմայեցւոց, և նոքա 'ի մարտս պատերազմացն ընդ իս և ընդ սեկուանացիս 'ի թիկունս առին զժողովուրդն Հռովմէական։ Պարտ է ինձ կասկածել թէ կեղծուպատիր բարեկամութեամբ ունիս դու զօրս 'ի Գալլիա առ 'ի զիս նուաճել։ Եթէ ոչ 'ի բաց գնայցես կամ զզօրսն 'ի կողմանց աստի հանիցես, ես զքեզ ոչ առ բարեկամս այլ առ թըշնամիս կալայց․ զի եթէ սպանից ես զքեզ՝ բազմաց յազնուականաց և իշխանաց ժողովրդեանն Հռովմայ մտահաճոյ ինչ գործիցեմ․ զայս և 'ի հրեշտակաց անտի նոցա տեղեկացեալ գիտեմ, զորոց ամենեցուն նոցա զշնորհս և ըզ-

բարեկամութիւն՝ քոյով մահուամբն շահիցիմ. իսկ եթէ թափեսցիս յինէն, և ազատ թողուցուս ինձ զգալլիական ստացուածս, պարգևս մեծամեծս ընդ այնր հատուցից քեզ, և որ զինչ պատերազմ կամիցիս մղել, անաշխատ և անվտանգ վճարեսցես:

ԽԵ. Բազում ինչ խօսեցաւ Կեսար 'ի վերայ բանիցն, թէ ընդէր չմարթէր լինել 'ի գործոյն ձեռնթափ, և ոչ իւր և ոչ հռովմէական ժողովրդեանն օրէն ներէր լքանել զերախտաւոր նիզակակիցսն, և զի զԳալլիա ոչ առաւել Արիովիստայ համարէր լինել քան հռովմէական ժողովրդեանն: Արուեռնայք, ասէ, և Հռուտենք 'ի պարտութիւն մատնեցան առաջի Կ. Փաբիոսի Մաքսիմոսի, որոց ներեաց ժողովուրդն հռովմէական, և ոչ իւր 'ի գաւառս եհատ ըզնոսա, և ոչ արկ նոցա հարկս: Իսկ եթէ ակն 'ի վաղնջուց ժամանակսն արկանիցեմք, հռովմէական ժողովրդեանն ամենայն իրաւամբք է իշխանութիւն 'ի Գալլիա. և թէ զդատաստան աւագանւոյն պահել պարտ իցէ, հարկ է ազատ լինել Գալլիոյ, որում պատերազմաւ յաղթեալ՝ թոյլ ետ աղիկամի իւրեանց օրինօքն վարել:

ԽԶ. Մինչդեռ զբանիւքս անկանէին, ազդ եղև Կեսարու թէ այրուձին Արիովիստայ հուպ 'ի բլուրն մատչի և առ մերսն երիվարեն, քարինս և նետս արձակէն 'ի մերսն: Կեսարու վախճան արարեալ խօսիցն՝ մեկնեցաւ առ իւրսն, հրաման տուեալ նոցա՝ մի՛ ինչ բնաւ նետաձիգ լինել 'ի թշնամիսն: Զի թէպէտ և անվտանգ տեսանէր ամենևին ըզգուպար գնդին իւրոյ ընտրելոյ ընդ այրուձիոյն, սակայն ոչ արժան դատեցաւ 'ի կռիւ մխել, գուցէ 'ի հալածել թըշնամեացն՝ ասիցի թէ վասն ուխտի դաշանցն նենգեցան 'ի բանակցութեանն: Իբրև համբաւն 'ի դուրս յամբոխ զօրուն յածախեաց, որով յանդգնութեամբ 'ի բանսն իւր Արիովիստ 'ի բովանդակ Գալլիոյ արգելոյր զհռովմայեցիս, և հեծեալքն նորա դրոյթ 'ի մերսն ետուն՝ մինչև ընդմիջել բանակցութեանն, առաւել իմն ժրութիւն և մեծ ևս եռանդն մարտի հարաւ 'ի զօրականն:

ԽԷ. Չհետ երկուց աւուրց՝ հրեշտակս յղէ Արիովիստ առ Կեսար, թէ զիրացն զորոց ընդ միմեանս խօսել կալան, և ոչ յանգ ելին, կամէր խօսել ընդ նմա. զի միւսանգամ օր յայտ արասցէ 'ի բանակցութիւն, կամ թէ զայդ ոչ կամիցի, յետեզակալաց իւրոց զոք առ ինքն առաքեսցէ: Կեսարու ոչ երևեցաւ խօսակցութեան ինչ պատճառ, մանաւանդ զի յառաջնում աւուրն ոչ արգելան գերմանացիք նետաձիգ առնել 'ի վերայ մերոցն: Համարէր վտանգ անհնարին՝ երեսփոխան զոք յիւրոցն առ նա առաքել, և արկանել առաջի արանցն վայրենեաց: Պատշաճագոյն թուեցաւ յղել առ նա զՄ. Վալերիոս Պրոկիլլոս, զԿ. Վալերիոսի Կաբուրի որդին, զպատանին քաջ և բարեբարոյ, (որոյ հայրն 'ի Կ. Վալերիոսէ Փլակկոսէ 'ի քաղաքակցութեան պատիւ վերառեալ էր), թէ վասն մտերմութեանն, և թէ վասն լեզուագիտութեան գաղղիականին, որով 'ի յաճախ յերկար վարժութենէ սովոր էր վարել Արիովիստ. և զի մեղանչելոյ 'ի նա չգոյր ինչ տեղի գերմանացւոց. ընդ նմին և զՄ. Մետիոս՝ զվայելեալն ասպնջականութեամբ Արիովիստայ: Պատուիրեաց նոցա՝ 'ի միտ առնուլ զբանսն Արիովիստայ, և առ ինքն հասուցանել: Զորս իբրև 'ի ճամբարին առ իւր ետես Արիովիստ, յանդիման զօրացն ամենեցուն զաղաղակ եհար. Առ ի՞նչ գալ դոցա առ իս. միթէ 'ի լրտեսե՞լ: Ի ջանալ նոցա խօսել, արգել, և արկ 'ի կապանս:

ԽԸ. Ի նմին աւուր խաղացոյց զբանակն, և վեց հազար քայլ 'ի ճամբարէն Կեսարու ընդ լերամբն նստաւ: Ի վաղիւ անդր փոխեաց զզօրսն անդր քան զճամբարն Կեսարու, և քայլս երկու հազար անդրագոյն քան զնա եհար զբանակ իւր. որպէս զի խափանեսցէ զԿեսար 'ի ցորենոյ և 'ի համբարոց որ 'ի սեկուանացւոց և յեդուացւոց գային: Յայնմ օրէ աւուրս հինգ հանապազորդ եհան Կեսար զզօրսն առաջի ճամբարին՝ կազմեալ ճակատու, զի թէ կամ իցէ Արիովիստայ մղել պատերազմ, առ ձեռն ունիցի: Զամենայն աւուրսն զայնոսիկ Արիովիստ 'ի ճամբարին պահեալ զզօրսն, հեծելախումբ մարտիւ օր ըստ օրէ մարտեաւ

'ի կախ: Յայս օրինակ գուպարածի կիրթք էին գերմանացիք: Վեց հազար այրուձիոյ էր, նոյնչափ հետեւակազօրք ժիրք և կորովիք, զորս 'ի բոլոր բազմութենէն ընտրեալ էին իւրաքանչիւր մին մի 'ի փրկութիւն անձանց: Ընդ սոսա դեգերէին 'ի մարտս, առ սոսա ապաւինէին հեծեալքն. եթէ դժուարին ինչ պատահէր, սոքա անդր դիմէին, եթէ կարեւոր վէր առեալ ուրուք՝ 'ի ձիոյն գլորէր՝ նոքա շուրջ կային. եթէ հեռագոյն ուրեք երթալ էր, կամ երագագոյն 'ի փախուստ անձապարել, այնքան էր նոցա 'ի կրթութենէն արագութիւն՝ զի 'ի բաշս երիվարացն կռուեալք՝ զուգընթաց արշաւէին:

ԽԹ. Իբրեւ գիտաց Կեսար թէ նա 'ի ճամբարին է կալոց, զի մի յերկարագոյնս 'ի պաշարոյ արգելցի, անդր քան զբանակետեղն գերմանացւոց՝ իբրեւ վեց հարիւր քայլ հեռի 'ի նոցանէ ընտրեաց տեղի գիպան, և ռազմ երեքկարգեան յօրինեալ՝ 'ի տեղի անդր մատեաւ: Առաջնում և երկրորդի կարգին՝ հրաման ետ վառիլ 'ի զէն, երրորդին՝ բանակ հարկանել: Այս տեղի, որպէս ասացաւ, իբր վեց հարիւր քայլ հեռի էր 'ի թշնամւոյն: Անդր յղեաց Արիովիստ վեշտասան հազար մեկնակազէնս ամենայն հեծելազնդաւն հանդերձ, պակուցանել զմերսն, և զգործ պատնիշացն խափանել: Սակայն և այնպէս Կեսար, որպէս յառաջագոյն կարգեալ էր, երկոցուն ճակատուցն պատուիրեաց վանել զթշնամին, երրորդին՝ զգործն կատարել: Ամրացուցեալ զբանագիրս բանակացն՝ եթող անդ երկուս գունդս և զմասն ինչ օգնական գնդացն. իսկ զչորեսին այլս՝ ած 'ի մեծ ճամբարն:

Ծ. Ի վաղիւ անդր Կեսար ըստ մտաց խորհրդոց իւրոց՝ յերկոցունց անտի բանակետեղաց եհան զզօրսն, և փոքր մի յառաջ անցեալ 'ի մեծ ճամբարէն, ճակատ յօրինեաց, տուեալ թշնամւոյն համարձակութիւն 'ի մարտ: Իբրեւ ետես զի և ոչ յայնժամ ելանէին, իբրեւ զհասարակ աւուրբ դարձոյց զզօրն 'ի բանակսն: Յղեաց յայնժամ ապա Արիովիստ զմասն ինչ զօրուն՝ տալ պատերազմ 'ի վերայ փոքու

ճամբարին։ Եղև յերկոցունց կողմանց մարտ սաստիկ մին-չև ցերեկոյ։ Յետ բազում վիրաց աստի անտի տուրևառ լինելոյ, Արիոխիա ընդ մուտս արևուն ած զզօրս իւր 'ի ճամբար։ Հարցեալ Կեսարու 'ի ձերբակալեալն, առ իմէ Արիոխիա չմղիցէ մարտ, զայս ինչ գտանէր պատճառս, զի առ գերմանացիս յօրէնս էր՝ տանտիկնանց նոցա նախ վիճակս ընկենուլ և գուշակութեամբ յայտ առնել՝ եթէ իցէ օրէն թէ ոչ՝ տալ պատերազմ. արդ նոքա ասեն՝ թէ իրաւունքն չտան գերմանացւոց յաղթութիւն, եթէ յառաջ քան զնորել լուսնի ճակատ տայցեն։

ԾԱ. Ի վաղիւ անդր աւուրն այնորիկ, թողեալ Կեսարու պահնակս յերկուսին ճամբարսն ըստ արժան բաւականի, զամենայն թևակիցսն[1] հան ճակատեցոյց յանդիման թշնամեացն զառաջեաւ ճամբարին փոքու. զի առ ամբոխ բազմութեան թշնամեաց՝ անօսրագոյն էր գնդացն թուով զօրականի, առ 'ի զարդ պաճուճանաց զթևակիցսն վարել։ Ինքն երեքկին կարգեալ ճակատու, մատեաւ մինչև 'ի ճամբար թշնամեացն։ Անդ ուրեմն 'ի հարկէ հանեին գերմանացիք 'ի ճամբարացն զզօրս իւրեանց և կարգեալ ճակատեցան ազգ ըստ ազգի՝ զուգաչափ անջրպետեալք 'ի միմեանց՝ Հարուդք, Մարկոմանք, Տրիբոկք, Վանգիոնք, Նեմետք, Սեգուսացիք, Սուեւք, և զռազմն իւրեանց համակ պատեալ պաշարեցին 'ի սայլս և 'ի յուղնակս, առ 'ի չմնալոյ բնաւ յոյս փախստեան։ Անդ նստուցին զկանայսն, որ ձեռս կարկառեալ՝ ողբովք պաղատէին առ ռազմամուտ զօրականն՝ մի մատնել զնոսա 'ի գերութիւն հռովմայեցւոց։

ԾԲ. Կեսար՝ իւրաքանչիւր գնդի մէն մի տեղակալ և գանձապահ կարգեաց՝ լինել նոցա 'ի վկայս առն առն իւրաքանչիւր քաջութեան։ Ինքն յաջոյ թևոյն սկիզբն արար մարտին, զի զայն կողմն թշնամեաց ոչինչ պնդակազմ տեսանէր։ Ի տալ նշանին՝ մերքն գազանաբար յարձակե-

1 Թևակից կոչէին օգնական գունդս նիզակակցաց, յերկոսին թևս ճակատուն կարգեալս։

ցան 'ի թշնամիսն։ Անդ յանկարծուստ արագապէս յառաջ զեռեալ խաղացին թշնամիքն՝ չթողուլ մեզ տեղի բաւական արգելընկէց 'ի թշնամի անդր լինելոյ։ Յայնժամ մերքն զաշտէսն 'ի բաց ընկեցեալ՝ սուսերօք մօտ ընդ մօտ մատեան 'ի կռիւ։ Բայց գերմանացւոց անդէն և անդ ըստ սովորութեանն ասպարափակ արարեալ զգումարտակն, զդէմ կալան սուսերացն բռնութեան։ Բազումք գտան 'ի մերմէ զօրականէս, որոց 'ի սպարափակ անդր ոստուցեալ և զվահանսն 'ի ձեռացն կորզեալ՝ հարկանէին 'ի վերուստ։ Իբրև ճակատ թշնամեացն 'ի ձախակողմ թևոյն վանեալ և 'ի փախուստ դարձեալ լինէր, յաջակողմ թևոյն բազմութեամբ իւրեանց զմեր ճակատն անհնարին տագնապէին։ Զայն տեսեալ պատանին Պ. Կրասսոս՝ որ սպարապետն էր հեծելազին, քանզի պատրաստագոյն էր քան զորս 'ի ռազմին կային, զճակատն երրորդ 'ի թիկունս արձակեաց մերոցն վտանգելոց։

ԾԳ. Զօրացաւ այսպէս պատերազմն, և թշնամիքն առհասարակ թիկունս դարձուցին, և փախեան անդադար մինչև հասին 'ի Հռենոս գետ՝ քայլս իբրև յիսուն հազար 'ի տեղւոջէ անտի։ Անդ նուազունք ոմանք՝ կամ յոյժ իւրեանց յուսացեալք անկան 'ի լող անցանել յայնկոյս, կամ գտեալ մակոյկս զփրկութիւն անձանց հայթայթեցին։ Ընդ սոսին և Արիովիստ՝ գտեալ նաւակ մի կապեալ յեզր գետոյն, փախեաւ նովաւ. զայլսն՝ 'ի վերայ հասեալ մերոյ այրուձիոյն՝ կոտորեաց առհասարակ։ Արիովիստայ էին երկու կանայք, մին յազգէ սուեւեան՝ զոր ընդ իւր էր ածեալ 'ի տանէն, երկրորդն նորիկեցի՝ քոյր Վոկիոնի արքայի՝ զոր անդէն 'ի Գաղլիա էր առեալ՝ յեղբօրն առաքելոյ. երկոքեան եւս կորեան 'ի փախստեանն։ Երկու դստերք սոցա, մին սպանաւ, միւսն ձերբակալ եղև։ Կ. Վալերիոս Պրոկիլլոս, որ երիւք կապեալ շղթայիւք 'ի պահապանացն վարէր 'ի փախստեանն, դիպաւ նմին ինքեան Կեսարու մինչդեռ հալածական տանէր զայրուձին թշնամեաց։ Այս ոչ սակաւ քան զնոյն իսկ յաղթութիւնն հեշտու-

Թխուն մատոյց Կեսարու, զի զայր մի պատուաւոր դգաւառին Գալլիոյ, զիւր ընտանի և զասպնջական Թափեալ'ի ձեռաց Թշնամեաց, առ իւր դարձեալ տեսանէր. և ոչ առ աղէտից նորա նուազեցուցեալ ինչ էր բաղձելին 'ի մեծ հեշտութենէ անտի և 'ի խնդութենէն: Պատմէր սա թէ երիցս, իւր լու 'ի լու, զվիճակս հարցեալ էին զնմանէ, թէ արդեօք փութանակի հրով սպանցի, թէ յայլ ժամանակ պահեսցի. յերախտեաց վիճակին ասէր զանձն ողջանդամ ապրեալ: Նոյնպէս և Մ. Մետիոս գտաւ, և ածաւ անդրէն առ նա:

ԾԴ. Իբրև այս յաղթութեան համբաւ պատմեցաւ յայնկոյս Հռենոսի, Սուեւք՝ որոց եկեալ էր 'ի գետեզերս Հռենոսի, սկսան 'ի տուն դառնալ. որոց զարհուրանացն 'ի վերայ կացեալ մերձակայ բնակիչք Հռենոսի, զհետ պընդեալ նոցա՝ սատակեցին 'ի նոցանէ ամբոխ բազում: Կեսար 'ի միում ամարայնի երկուս մեծամեծ պատերազմունս 'ի գլուխ հանեալ, փոքր մի վաղագոյն քան զպէտս ժամանակի տարւոյն՝ ած զզօրսն 'ի ձմերոց 'ի սեկուանացիս. զԼաբիենոս եդ վերակացու ձմերոցացն, ինքն գնաց յայսկոյս 'ի Գալլիա զժողովսն գումարել:

---

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ԳԱՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Գլուխ Ա—Դ. Բելգացիք յուխտ միաբանութեան մտանեն ընդդէմ հռովմէական ժողովրդեան, բաց 'ի Ռեմեանց: Ե. Կեսար ընդդէմ նոցա տանի զզօրն յայնկոյս Աքսոնա գետոյն. Է, Ի Բիբրակդ քաղաք, և առ Կ. Տիտուրիոս տեղակալաւ ընդ որս պատերազմէին Բելգացիք, օգնութիւն առաքէ. Ժ. Նոցա 'ի նանիր յայն մարտս ջանացեալ՝ իւրաքանչիւր զօրահաստոյց լինին 'ի պաշտպանել սահմանաց իւրեանց. ԺԲ—ԺԵ. Ի խաղաղանալ նոցա Կեսար զհետ մտեալ՝ զՍուեսոնս, զԲելլովակս, և զԱմբիանս ընդունի 'ի նուաճութիւն: ԺԶ. ԶՆերվեանսն՝ արիաբար կռուեալ՝ նկուն առնէ. ԻԹ. Նոյնպէս և զԱդուատիկեցիս:

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱՂՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## ԳԻՐՔ Բ.

Ա. Մինչդեռ Կեսար 'ի յայսկոյս Գաղղիա էր 'ի ձմերոց, որպէս 'ի վեր անդր ցուցաք, ստէպ գային առ նա զրոյցք, և 'ի թղթոցն Լաբիենի տեղեկանայր, թէ բելգացիք առ հասարակ, զոր երրորդ մասն Գաղղիոյ լինել ասացեալ է, միաբանեալ իցեն ընդդէմ հռովմէական ժողովրդեան, և պատանդս միմեանց տուեալ։ Եւ միաբանութեանն պատճառք՝ այսոքիկ. նախ՝ զի խիթային, թէ գուցէ 'ի խաղաղել համօրէն Գաղղիոյ, բանակք մեր առ նոսա վարեսցին. երկրորդ՝ 'ի գաղղիացւոց ոմանց յայն հրապուրեալք, 'ի կիսոց՝ որք որպէս ոչ կամէին գերմանացւոց յերկար 'ի Գաղղիա դեգերել, նոյնպէս զօրաց հռովմէական ժողովրդեանն 'ի Գաղղիա ձմերել և յօրանալ դժկամակ լինէին. և յայլոց՝ որ փոփոխութեամբ և թեթևութեամբ մտաց՝ նորանոր իշխանութեանց ցանկային. և յոմանց ևս, վասն զի 'ի Գաղղիա՝ 'ի զօրագունից և յորոց բաւականքն էին 'ի վարձութիւն մարդկան, խառնիխուռն արքայութեան հասանէին, զոր 'ի մերում տէրութեան չէր հնար դիւրաւ 'ի ձեռս բերել։

Բ. Ի գուժկանաց անտի և 'ի նամականւոյ շարժեալ Կեսար, երկուս գունդս նորս զօրաժողով արար անդ յայսկոյս Գալլիա. և 'ի բանալ դրանց գարնայնոյ՝ եառ 'ի ձեռս Կ. Պեդիոսի տեղակալի՝ առնուլ տանել 'ի յայնկոյս Գալլիա։ Ինքն իսկ և իսկ 'ի յաճախել արօտոյ՝ եկն 'ի բանակն։ Սենոնաց և այլոց գալլիացւոց՝ բելգացւոցն սահմանակցաց՝ գործ 'ի ձեռն եառ, տեղեկանալ որ ինչ միանգամ առ նոսա գործիցի, և ցուցանել նմա։ Սոքա ամենեքեան միաբան պատմեցին նմա, թէ գումարտակ առնի, և բանակն 'ի մի վայր գումարի։ Յայնժամ ոչինչ յերկուացաւ խաղալ 'ի վերայ նոցա յաւուրն երկոտասաներորդի. և զպաշար ցորենոյ առեալ՝ խաղացոյց զբանակն, և յաւուրս հնգետասան եհաս 'ի սահմանս բելգացւոց։

Գ. Իբրև եկն եհաս անդր յանկարծակի և արագ քան զկարծիս մտաց ամենեցուն, հռեմեանք՝ մերձաւորագոյնք Գալլիոյ 'ի բելգացւոց անտի, հրեշտակս արարին առ նա զԻկկիոս և զԱնտեբրոգիոս՝ զգլխաւորս քաղաքին իւրեանց, ասել ցնա, թէ զանձինս և զամենայն ինչ զիւրեանց 'ի հաւատս և յիշխանութիւն հռովմէական ժողովրդեան ապաստան առնեն, չիք նոցա ուխտ դաշանց ընդ այլ բելգացիս, և ոչ ընդդէմ ժողովրդեանն Հռովմայ 'ի գաւ մտեալ, այլ պատրաստ են և պատանդս տալ, և զամենայն հրամանսն կատարել, և 'ի ներքս 'ի քաղաքսն ժողովել, և ցորենով և այլով ամենայնիւ նպաստ լինել։ Բելգացիք ամենայն 'ի զէնս են, գերմանացիք յայսկոյս բնակեալք Հռենոսի՝ ընդ նոսա են միաբանեալք. և այնչափ է ամենեցուն նոցա մոլեգնութիւն, զի Սուեսսիոնք և ոչ զեղբարս և զհարազատութիւն իւրեանց՝ ընդ նովին իրաւամբք և օրինօք կացեալս, զմի տէրութիւն և զնոյն իշխանութիւն ընդ իւրեանս ունելով, կարող գտան երկուցանել՝ զի մի ընդ նոսին միաբանիցեն։

Դ. Իբրև հարցանէր 'ի նոցանէ, ո՞ր այն քաղաքք իցեն և քանի՞ որ 'ի կռիւ կայցեն, և զի՞նչ նոցա կար պատերազմի, գտանէր՝ զի յոլովք 'ի բելգացւոց սերունդ էին գեր-

մանացւոց, և 'ի վաղ ժամանակաց հետէ անցեալք յայսկոյս՝ վասն արգասաւորութեան երկրին անդ նստան, և վանեցին զգալլիացիս զբնակս վայրացն. և նոքա միայն են՝ որ յաւուրց անտի հարց մերոց, յաւարառութեան բոլոր Գալլիոյ, չետուն թոյլ Տեւտոնաց և Կիմբրաց կոխել 'ի սահմանս իւրեանց. ուստի և յիշատակաւ իւրացն մեծ իշխանութիւն առին անձանց և մեծս մեծամեծս յիրս պատերազմի: Զթիւ համարոյ բազմութեան նոցա ճշդիւք լրտեսեալ ասէին հռեմեանք, վասն ազգակցութեան նոցա և խնամութեան, և գիտել զինչ ամբոխ 'ի հասարակաց անդ ժողովի բելգացւոց խոստացեալ իցէ տալ յայս պատերազմ: Զօրաւոր յոյժ են 'ի նոսա Բելովակք՝ քաջութեամբ և իշխանութեամբ և ամբոխիւ մարդկան. սոցա կարողութիւն է գումարտակ առնել տասն բիւր մարտկաց, 'ի համարոյ սոցա ընտիրս վաթսուն հազար խոստացեալ են, և խնդրեալ իւրեանց զհրամանատարութիւն բովանդակ պատերազմին: Սուեսսիոնք, ասեն, սահմանորդք են մեր, և լայնածաւալ և արգաւանդահող անդաստանաց տէր. առ մերով իսկ ժամանակօք՝ էր առ նոսա թագաւոր Դիւիտիակ՝ հզօրագոյն 'ի բովանդակ Գալլիա, որ զմեծ կէս աշխարհացս այսոցիկ և զտէրութիւն բրիտանացւոց 'ի ձեռին ունէր. իսկ այժմ թագաւոր[1] է Գալբա. սմա 'ի հասարակ հաւանութենէ յանձն է լրութիւն պատերազմիս՝ վասն արդարակորովութեան և խոհականութեան իւրոյ. քաղաքք են նորա երկոտասան, և խոստանայ յիսուն հազարս վառելոց, նոյնչափ Ներուեանք՝ ամեհագոյնքն 'ի նոսա համարեալք, և հեռաբնակք յոյժ. հնգետասան հազարս Ատրեբատք. Ամբիանք՝ տասն հազար. Մորինք՝ երկու բիւր և հինգ հազար. Մենապեանք՝ ինն հազար. Կալէտք՝ բիւր մի, Վելոկասք և Վերոմանդուացիք՝ նոյնն չափով. Ադուատիկք՝ հազարս իննուտասն. Կոնդրուսք, Եբուրոնք, Կերեսք, Պեմանք, միով անուամբ Գերմանացիքն յորջորջեալք, համարին 'ի քառասուն հազար:

---

1 Իմա՝ երկոտասան քաղաքաց տէր:

Ե. Կեսարու քաջալերեալ զհռեմեանս, և առատաբար ճառ արկեալ նոցա, հրաման ետ առ ինքն ժողովել ամենայն աւագանւոյն, և ածել մատուցանել զորդիս իշխանացն 'ի պատանդութիւն. զոր փութով առ օրէն կատարեցին նոքա զամենայն: Ինքն զԴիւիտիակ Եդուացի մեծապէս յորդորեալ՝ խելամուտ առնէ զնա, քանի օգուտ լիցէ ընկերահաշտութեանն և հասարակաց փրկութեանն՝ բաժանել զզօրութիւնս թշնամեաց, զի մի ընդ այնքան բուժանի 'ի միում ժամանակի միանգամայն հասանիցէ կռուել. այսմ հնար լիցէ, եթէ զզօրս իւրեանց մուծցեն Եդուացիք 'ի սահմանս Բելլովակաց, և զերկիր նոցա սկսանիցեն աւար հարկանել: Սովին պատուիրանօք արձակեաց զնա յիւրմէ: Իսկ իբրև յառաջելոց լրտեսացն իւրոց և 'ի հռեմեանց անտի գիտաց զամենայն զօրս Բելգացւոց միագունդ 'ի միոջ վայրի գումարտ խմբեալ և յինքն դիմեալ և ոչ իսկ հեռի ուրեք, փութացաւ անցուցանել զզօրսն յայնկոյս գետոյն Աքսոնայ՝ որ է 'ի ծագս վերջին սահմանացն հռեմեանց, և անդ բանակ եհար. որով և զմի կողմն բանակին գետափամբն ամրացուցանէր, և որ զհետ իւր էին՝ յապահովս դնէր յերեսաց թշնամեաց, և զհամբարոցն գալուստ առ ինքն 'ի հռեմեանց անտի և յայլոց քաղաքաց՝ անվտանգ կացուցանէր: Էր կամուրջ մի 'ի վերայ գետոյն. դնէ անդ պահապանս, և յայնկոյս գետոյն թողու զԿ. Տիտուրիոս սապինացի տեղակալ՝ վեց խմբիւք հանդերձ. ըզբանակետղն՝ երկոտասան ոտնաչափ 'ի բարձրութիւն, հրաման տայ ամրացուցանել ցցապատնիշօք և պարկէն փոսիւ յութուտասան ոտնաչափ:

Զ. Ի բանակէ անտի՝ Բիբրաքս անուն հռեմեանցն քաղաք հեռի էր ութ հազար քայլ: Բելգացիք գուն եդին զճանապարհայն մեծաւ ուժով առնուլ զնա: Ամրականքն զայն օր հազիւ ժուժկալեցին: Բելգացւոց նոյն և մի օրինակ է մարտի ընդ գալլիացւոցն: Սոքա իբրև ամբոխիւ մարդկանն շուրջ պաշարեալ զպարիսպն ողջոյն՝ սկսան յամենուստ քարինս տեղալ 'ի պարիսպ անդր և պարիսպն

ամայացաւ 'ի վերամարտկաց, անդէն ասպարափակ արարեալ դիմեն 'ի գրուհան և խրամատեն զպարիսպն, զի դիւրին էր յայնժամ զայն առնել, քանզի այնքան խուռն բազմութիւն նետս և քարինս արձակէին, մինչ չէր ումեք հնար տեւել կալ 'ի վերայ պարսպին։ Իբրև գիշեր դուլ արար մարտին, Իկկիոս հռեմեան, այր աւագամեծար և շնորհագիւտ 'ի մէջ նոցա, որ իշխանն էր յայնժամ քաղաքին, մի յորոց հրեշտակութեամբ վասն խաղաղութեան եկին առ Կեսար, պատգամաւորս առաքեաց առ նա, զի թէ ոչ ձեռն տացէ առ նա, չմարթէ այլ ևս բաւել տոկալ։

Է. Զնոսին զեկեալսն յԻկկիոսէ հրեշտակութեամբ՝ առաջնորդ կալեալ Կեսար՝ առաքէ ընդ նոսին ամրականացն օգնութիւն զնումիդացիսն և զկրետացիս աղեղնաւորս և զբալէարեանսն պարսաւորս. 'ի սոցա հասանելոյ՝ 'ի հռեմեանսն հանդերձ յուսով պաշտպանութեան արծարծեցաւ եռանդն մարտի, և թշնամիք յայն աղագս լքան հատան 'ի յուսոյ 'ի բուռն առնլոյ զքաղաքն։ Վասն այնորիկ սուղ ինչ յամեալ առ քաղաքին, և զագարակս հռեմեանց յաւարի առեալ, զգիւղսն առ հասարակ և զշէնս յորս կարէին մերձենալ՝ հրձիգ արարեալ, հանդերձ ամենայն զօրօք խաղացին 'ի բանակն Կեսարու, և սուղ ինչ պակաս քան զերկու հազար քայլիւք 'ի բացէ հարին զխորանս իւրեանց, որք 'ի ծխոյն և 'ի խարոյկացն գուշակելոյ՝ տարածանէր ընդ լայնութիւն աւելի քան զութ հազար քայլ։

Ը. Կեսար՝ առ անհնարին բազմութեան թշնամեացն և մեծի անուան քաջութեան նոցա՝ եդ նախ 'ի մտի յապաղել զմարտն։ Բայց զօր ամենայն հեծելազօրուն մրցութեամբք հանդէս առնէր զօրութեան թշնամւոյն և մերոցն կարողութեան։ Իբրև զմերսն ոչ 'ի վայր ինչ ետես քան զնոսա, առաջի բանակետեղն իւրոյ տեսեալ տեղի դիպան և պատշաճ 'ի բնէ առ 'ի ճակատ կազմել, — զի բլուրն ուր բանակ հարեալ էր՝ փոքր ինչ 'ի դաշտագետնոյն ամբարձեալ, այնչափ ևեթ զառաջեաւ ձգէր 'ի լայնութիւն, որչափ ինչ տեղի կարէր գրաւել ճակատն յարդարեալ, և

յերկոցունց կողմանց կողիցն էր զառ 'ի թափ, ուր ինչ 'ի ներս կոյս բոլորեալ և սութեալ, առ փոքր փոքր 'ի հարթատակ դառնայր, — յերկոցունց անտի կողաց բլրոցն, կողմնակի ած ընդ մէջ փոս՝ գոգցես չորեքհարիւր քայլ, և 'ի ծայրս փոսիցն կառոյց ամրոցս, և եդ անդ զպատերազմական կազմածս գործեաց, զի մի 'ի կարգել իւրում զաւազմ ճակատուն՝ թշնամիք հարստաբուան զօրութեամբ իւրեանց մարտ եդեալ 'ի կողից պատեալ պաշարեսցեն զպատերազմողսն իւր: Զայն գործ կատարեալ, զերկասին դեռընտիր գունդսն 'ի բանակսն թողեալ, զի եթէ պէտք ինչ լինիցին՝ 'ի թիկունս օգնականութեան հասանիցեն, զմիւս գունդսն վեցեսին հանեալ առաջի բանակին ճակատեցոյց: Նոյնպէս և թշնամեացն՝ հանեալ 'ի ճամբարացն զզօրս իւրեանց՝ ճակատ յօրինեալ էր:

Թ. Ընդ մէջ մերոյ զօրուն և թշնամեացն էր ճահիճ մի ոչ ընդարձակ: Թշնամիք ակն ունէին մերոցն ընդ այն անցանելոյ. իսկ մերքն, եթէ նոքա սկիզբն առնիցեն անցանել, կազմ 'ի զէնս կային անկանել 'ի վերայ նոցա 'ի տագնապի անդ: Յայնմ պահու հեծելազօրն 'ի մէջ երկուց ճակատուցն 'ի կռիւ շահատակէր: Իբրև ոչ ոք սկիզբն առնէր անցանելոյ, և մերում այրուձիոյն աջող էր մարտն, ած Կեսար զիւրսն 'ի բանակն: Թշնամիք նոյնժամայն 'ի տեղւոջէ յայնմանէ դրոհ ետուն 'ի գետն Աքսոնա, զոր ասացաք 'ի թիկանց կալ մերոյ ճամբարին: Անդ գտեալ հունս ինչ, գուն գործեցին անցուցանել յայնկոյս զմասն ինչ զօրուն, զի եթէ հնար իցէ՝ կալցին զամրոցն, յորում իշխէր Կ. Տիտուրիոս փոխանորդ, և զկամուրջն հատանիցեն. իսկ թէ ոչ, զերկիրն հռովմայեցւոց յաւարի առնուցուն, որ կարի կարևոր էր մեզ 'ի պէտս պատերազմին մղելոյ, և զհամբարս մեր մատուցանէր:

Ժ. Այսմ զգացեալ Կեսար 'ի Տիտուրիոսէ, զայրուձին զամենայն և զմեկնակազէն նումիդացիս, զպարսաւորսն և զաղեղնաւորսն անցուցանէ ընդ կամուրջն, և խաղայ առ նոսա: Մարտ սաստիկ 'ի տեղւոջ անդ մղեցաւ:

Թշնամեացն տագնապելոց 'ի վերայ յարձակեալ մերքն 'ի գետ անդր, սաստակեցին ամբոխ յոյժ 'ի նոցանէ։ Զայլսն որ ընդ դիւակուտս նոցա յանդգնաբար անցանել ջանային, տեղատարափ նետիւքն վանեցին։ Զյառաջագոյն անցեալսն 'ի մէջ առեալ հեծելազնդին՝ կոտորեաց։ Տեսեալ Թշնամեաց՝ զի յոյս տիրելոյ քաղաքին և ընդ գետն անցանելոյ 'ի դերև ել, և չիմացան զմերոցն առ սէր մարտի յանպատեհ վայր ինչ ուրեք դիմեալ անկանել, եւս և զի սկսեալ էր նոցա պակասել ցորեան, ժողով կոչեալ հաստատեցին՝ Թէ լաւ իցէ իւրաքանչիւր 'ի տուն դառնալ, և յորոց սահմանսն զօրս ածեալ մուծեալ էր հռովմայեցւոց, 'ի զօրավիգն նոցին երթալ գումարել, և քան յօտար սահմանս՝ յիւրեանցն տալ պատերազմ, և առանին առատութեամբ ցորենոյ վայելել։ Ընդ այլ պատճառս՝ այս եւս Թելադիր լինէր նոցա յայն խորհուրդ, զի 'ի միտ առեալ էին Թէ Դիւիտիակ և էդուացիք երԹային և մերձենային 'ի սահմանս Բելլովակաց։ Անհնար էր 'ի հաւան ածել զնոսա՝ այլևս յամենալ, և մի 'ի Թիկունս ընտանեացն հասանել։

ԺԱ. Զայս խորհուրդ հաստատեալ, և ամբոխ աղաղակաւ և դղորդմամբ ելեալք 'ի ճամբարացն յերկրորդում պահու գիշերայնոյն խառնիխուռն չփոԹիւք՝ իւրաքանչիւր 'ի ճանապարհ աճապարել շտապեալք և 'ի տուն ժաման լինել, փախստեան իմն հանգոյն զչուն երևեցուցին։ Զազդ իրին առեալ վաղվաղակի Կեսարու 'ի լրտեսացն, առ ոչ հաւատեաւ 'ի վերայ կալոյ տակաւին պատճառաց չուելոյ նոցա՝ 'ի կասկածանս դարանակալութեան անկեալ, զզօրսըն և զայրուձին պահեաց 'ի բանակին։ Ընդ այգս այգուն ստուգեալ զիրսն 'ի լրտեսացն, արձակեաց նախ զհեծեալսըն՝ արգել լինել յետամնաց ամբոխին, առաջնորդ կարգեալ նոցա զԿ. Պեդիոս և զԼ. Աւրունկուլէյոս զետեղակալսն, և Տ. Լաբիենոսի տեղապահին հրաման ետ երեքումբք գնդովք զհետ նոցա ընԹանալ։ Յարձակեալ սոցա 'ի վերայ վերջնոցն, և հազարաւոր քայլս հալածական տարեալ, կոտորեցին 'ի փախստէից անտի բազմուԹիւն յոյժ։ Իբրև

յամբոխէ անտի վերջնոյ նոցա յորս հասեալքն էաք՝ կանգ-նեցան կացին՝ արիաբար 'ի դիմի հարկանել բռնութեան մերոյ զօրականին, նախընթացքն հեռի զանձինս կարծեալ 'ի վտանգէն, և ոչ 'ի հարկէ ինչ կամ յիշխանութենէ ըն-թադրեալք, ընդ առնուլ զձայն աղաղակին, աղմկեալ առ հասարակ խառնափնդոր 'ի փախուստ ապաւինեցան: Այս-պէս ամենեքին անվտանգ զանհնարին ամբոխութիւն նոցա սատակեցին մերքն 'ի միում տուընջեան ժամանակի. ընդ մուտս արեւուն դադարեցին 'ի հետամուտն լինելոյ, և ըստ հրամանին ժողովեցան 'ի ճամբարն:

ԺԲ. Ի վաղիւ անդր այնր աւուր՝ մինչ չև թշնամեաց յերկիւղէն և 'ի փախստենէն անձին զգացեալ, ած զզօրն 'ի սահմանս Սուեսոնաց՝ մերձաւորացն հռեմեանց, և մեծ ճանապարհ արարեալ՝ դիմէ 'ի քաղաքն Նովիոդուն: Ջեռն արկեալ առնուլ զայն, զի լսէր թափուր 'ի պահապանաց. վասն փոսոյն լայնութեան և բարձրութեան պարսպին, թէպէտ և սակաւք էին որ ներս պահ ունէին, ոչ կարաց առնուլ: Զճամբարն ամրացուցեալ, սկսաւ կազմել ոզորա-հիւս պահանդակալ պատնէշս և ինչ որ պիտոյն էր 'ի հար-կանել զքաղաքն: Ի նմին պահու ամենայն բազմութիւն Սուեսոնաց յառաջիկայ գիշերին ժողովեցան 'ի քաղաք անդր: Արագ արագ զպատնէշսն 'ի քաղաքն մատուցեալ, լիր արկեալ, ամբարտակ յարուցեալ և շինեալ մարտկոցս, յահաւորութենէ անտի գործոցն՝ զոր ոչ տեսեալ և ոչ լուեալ էր գալլիացւոց, և յարագութենէ հռովմայեցւոցն զարհուրեալք, առաքեն առ Կեսար հրեշտակութիւն՝ ձեռն տալ 'ի նա, և յաղերսել հռեմեանց զի մի՛ սատակեսցին, լինին լսելի:

ԺԳ. Կեսար պատանդ առեալ զառաջինսն 'ի քաղա-քէն, և զնորին իսկ արքային Գալբայ զերկոսին որդիս, և յամենայն զինուց թափեալ զքաղաքն, ընկալաւ զՍուես-սոնս 'ի հպատակութիւն, և առ գնաց զզօրն 'ի Բելլովակս. որ քանզի զանձինս և զամենայն ինչ զիւրեանց փոխեալ էին 'ի քաղաքն Բրատուսպանտ, և Կեսար հինգ հազար

քայլիւ չափ զօրացն հանդերձ 'ի բացեայ էր 'ի քաղաքէ ան-
տի, ամենայն երիցագոյն հասակաւ ելեալք 'ի քաղաքէն՝
սկսան ձեռս առ Կեսար ձգել, և 'ի ձայն բարբառոյ աղա-
ղակել, թէ 'ի նորա հաւատս և յիշխանութիւն եկեալ կան,
և բնաւ կռուին ոչ՝ ընդ հռովմէական ժողովրդեան: Նոյն-
պէս և յորժամ 'ի քաղաքն մատեաւ և բանակ եհար անդ,
մանկտին և կանանին 'ի պարսպէ անտի ձեռս ըստ սովո-
րութեան իւրեանց տարածեալ, հաշտութիւն 'ի հռովմա-
յեցւոց խնդրեցին:

ԺԴ. Դիւիտիակ, քանզի յետ մեկնելոյ բելգացւոց
արձակեալ զզօրսն էդուացւոց՝ առ նա էր դարձ արարեալ,
խօսեցաւ փոխանակ ընդ նոցա. թէ Բելլովակք յամենայն
ժամ 'ի հաւատ և 'ի բարեկամութեան կացեալ են քաղա-
քին Էդուայ. դրդեալք յիշխանաց անտի իւրեանց, որ ա-
սէին զէդուացիս 'ի Կեսարէ 'ի ծառայութիւն արկեալ, և
ամենայն թշնամանաց և այպանաց համբերեալ, յէդուա-
ցւոց իսկ ապստամբեցին, և ընդ ժողովրդեանն Հռովմայ 'ի
պատերազմ գրգռեցան. որք այսմ խորհրդոյ գլխաւորքն
էին, ծանուցեալ զմեծ նեղութիւնն զոր հասուցին քաղա-
քին, փախեան 'ի Բրիտանիա. արդ խնդրեն ոչ Բելլովակք
եւեթ; այլ և վասն նոցա էդուացիք, 'ի գթութեան և 'ի հե-
զութեան իւրում վայելել. զոր թէ շնորհեսցէ, զիշխանու-
թիւն էդուացւոց առ բնաւ իսկ բելգացիսն ընդարձակես-
ցէ, որոց սատարութեամբքն և նպաստիւք սովոր էին ժուժ-
կալել պատերազմացն դիպելոց:

ԺԵ. Կեսար, 'ի պատճառս պատուոյ Դիւիտիակայ և
էդուացւոցն, ընդունել խոստացաւ զնոսա 'ի հաւատ և
պահպանել. և զի քաղաք մեծ էր, և 'ի բելգացիս անդ իշ-
խանութեամբ և բազմամարդութեամբ նշանաւոր, պահան-
ջեաց պատանդս վեց հարիւր: Զնոսա առեալ և զամենայն
զէն 'ի քաղաքէն հաւաքեալ, յայնմ վայրէ գնաց եհաս 'ի
սահմանս Ամբիանաց, որ զանձինս և զիւրեանց զամենայն
ինչ անյապաղ 'ի ձեռս ետուն: Սահմանակից նոցա էին Նե-
րուեանք. զորոց զբնութիւնն և զբարս 'ի քննին առեալ Կե-
սարու, այսպէս գտանէր. Վաճառականաց չէք ինչ մուտ

առ նոսա. զինի և կամ բնաւ այլ ինչ 'ի զեխութեան աղէ-տըս՝ չառնուն բնաւ յանձն թէ 'ի ներքս մուծանիցի. զի նոքօք համարին թուլանալ ոգւոցն, և արութեան իւրեանց մեղկիլ. այրք ամեհիք են և քաջակորովք, կշտամբեն և բամ-բասեն զայլս 'ի բելգացւոց, որ ձեռն ետուն 'ի ժողովուր-դըն հռովմէական, և զհայրենի առաքինութիւնն յանձանց 'ի բաց ընկեցին. և պնդէին թէ մեք ոչ հրեշտակս առնեմք, և ոչ յուխտ ինչ խաղաղութեան մտանեմք:

ԺԶ. Մինչ դեռ ընդ սահմանս նոցա երեքօրեայ առնէր ճանապարհ, լսէր 'ի գերեացն զի Սաբին գետ ոչ ինչ հեռի էր 'ի ճամբարէն իւրմէ քան զտասն հազար քայլ, և Ներ-ուեանք ամենայն յայնկոյս գետոյն դարեալ նստէին, ըս-պասեալք գալստեան հռովմայեցւոց ընդ Ատրեբատս և վերոմանդուացիս սահմանորդս իւրեանց. զի զսոսա երկո-սեան 'ի բանի արարեալ էին՝ զնոյն բաղդ մարտի փորձել ընդ իւրեանս: Ադուատեանցն ևս միայն զօրացն՝ յուղւոջ եղելոց. զկանայս և որ 'ի տիոցն ումպէտ ինչ թուէին 'ի կռիւ, յայն վայր ընկեցեալ էին՝ ուր վասն ճախճախուտն լինելոյ անմատոյց էր զօրու:

ԺԷ. Այսոցիկ 'ի վերայ հասեալ Կեսարու, առաջեաց յառաջոյ լրտեսս և հարիւրապետս՝ երթալ ընտրել տեղի ինչ պատշաճ 'ի բանակատեղ: Եւ զի յոլովք յանձնատուր եղելոցն բելգացւոց և յայլոց գալլիացւոց զհետ երթեալք Կեսարու՝ նովին ճանապարհաւ ուղևորէին ընդ նմա, ո-մանք 'ի նոցանէ, որպէս ապա 'ի գերեացն ծանուցաւ, ուշ եդեալ ընթացից ճանապարհի մերոյ բանակին յաւուրսն յայնս, գիշերայն առ Ներուեանս հասեալ՝ ցուցին նոցա, թէ 'ի մէն միում գնդի կահ և կարասի բազում է. և ոչ դժուարին ինչ իցէ, 'ի ժամանել առաջնոյ գնդին 'ի ճամ-բարն, մինչդեռ այլ գունդք մեծաւ անջրպետութեամբ գտանիցին 'ի բացեայ, անկանել 'ի վերայ գնդին այնորիկ մինչդեռ ևս ընդ բեռամբքն [1] իցէ. յորոյ 'ի վանելն և 'ի

---

1 Քանզի սովոր էին հռովմայեցիք 'ի չուել բանակին ընդ իւ-րեանս բառնալ զպարէն, զկահս, զձողս և զզէնս:

ձիարշաւոյն կողոպտել՝ այլք ոչ ևս իշխեսցեն կալ առաջի։ Գուշակացն խորհրդոց նպաստ լինէր և այն, զի Ներուեանց իսկզբանէ չունելով ինչ կար այրուձիոյ, — զի և ոչ զարդիս այժմ խնամ տանին, այլ ամենայն զօրութիւն նոցա 'ի հետևակազօրն է, — 'ի խափանել դիւրաւ զհեծելագունդն սահմանորդաց, եթէ յաւար ասպատակ տայցեն առ նոսա, զմորչս ծառոցն հատեալ և յերկիր կորացուցեալ, և խիտ առ խիտ ոստս լայնասփիռ ծնուցեալ, մորենիս և մացառս ևս ընդ մէջ սփռեալ, ցանկ իմն իբր որմափակ, պատուար գործեցին յամրութիւն, ընդ որ ոչ միայն մտանել, այլ և նկատել իսկ անհնար էր։ Որոց արկեալ սովին Ճանապարհի ամբոխին մերոյ, ոչ ևս արժան համարեցան Ներուեանք կասել 'ի մտաց խորհրդոց իւրեանց։

ԺԸ. Տեղին զոր ընտրեալ էր մերոցն 'ի բանակատեղ, այսպիսի էր բնութիւն նորա. բլուր մի վերուստ 'ի վայր շուրջանակի զառ 'ի թափ իջանէր 'ի գետն Սաբին, զոր 'ի վեր անդր յիշեցաք. 'ի գետոյ անտի համբառնայր նոյնպէս զառ 'ի վայր այլ իմն բլուր 'ի հանդիպոյ նորին և դէմ ընդդէմ, ստորոտ իւր իբրև երկերիւր քայլ՝ դիւր, իսկ վերնակողմն՝ անտառախիտ, մինչ ոչ դիւրին էր 'ի ներքս հայել։ Ի մայրիս անդ գաղտագողի կային թշնամիքն։ Ի հարթ տեղին ընդ գետն երևէին սակաւաւոր կայեանք հեծելոց։ Խորութիւն գետոյն էր գոգցես իմն երեք ոտնաչափ։

ԺԹ. Յառաջագոյն արձակեալ Կեսարու զայրուձին, զկնի ընթանայր բովանդակ զօրօքն։ Այլ հանգամանք և կարգ չուոյն այլ իմն ազգ էր քան զոր բելգացւոց գուշակեալն էր առ Ներուեանս։ Զի առ մերձ կալոյ թշնամեաց, Կեսար ըստ իւրում սովորութեան զվեցեսին գունդսն առանց ինչ բեռին վարէր, զկնի նոցա կարգեալ զկարասի բոլոր բանակին, ապա երկոքին նորաժողով գունդքն փակէին զամբոխն բովանդակ, և կարաւոյն պահ ունէին։ Այրուձին մեր ընդ պարսաւորսն և ընդ աղեղնաւորս անցեալք ընդ գետն՝ ձեռն 'ի գործ մխեն պատերազմի։ Նոքա իբրև հետ ընդ հետ 'ի մայրիս առ իւրեանցսն փախուցեալ

առ նոսա· գինի և կամ բնաւ այլ ի
տըս՝ չառնուն բնաւ յանձն թէ 'ի
նոքօք համարին թուլանալ ոգւոցն,
մեղկիլ· արք ամեհիք են և քաջակոր
քասեն զայլս 'ի բելգացւոց, որ ձեռ
դըն հռովմէական, և զհայրենի առա
'ի բաց ընկեցին. և պնդէին թէ մեք ո
և ոչ յուխտ ինչ խաղաղութեան մտ

**ԺԶ.** Մինչ դեռ ընդ սահմանս նոց
Ճանապարհ, լսէր 'ի գերեացն զի Սա
էր 'ի Ճամբարէն իւրմէ քան զտասն հ
րուեանք ամենայն յայնկոյս գետոյն գ
պասեալք գալստեան հռովմայեցւոց
վերոմանդուացիս սահմանորդս իւրեա
սեան 'ի բանի արարեալ էին՝ զնոյն բ
ընդ իւրեանս: Ադուատեանցն ևս մնայ
եղելոց· զկանայս և որ 'ի տիոցն ում
կռիւ, յայն վայր ընկեցեալ էին՝ որ վա
լինելոյ անմատոյց էր զօրու:

**ԺԷ.** Այսոցիկ 'ի վերայ հասեալ Կեսա
յառաջոյ լրտեսս և հարիւրապետս՝ երթալ
ինչ պատշաճ 'ի բանակետղ: Եւ զի յոլովք
եղելոցն բելգացւոց և այլոց գաղղիացւոց զհ
Կեսարու՝ նովին Ճանապարհաւ ուղևորէին ը
մանք 'ի նոցանէ, որպէս ապա 'ի գերեացն ծանո
եդեալ ընթացից Ճանապարհի մերոյ բանակին
յայնս, գիշերայն առ Ներուեանս հասեալ՝ ցուցի
թէ 'ի մէն միում գնդի կահ և կարասի բազում
դժուարին ինչ իցէ, 'ի ժամանել առաջնոյ գնդին 'ի
բարն, մինչդեռ այլ դունդք մեծաւ անջրպետութ-
գտանիցին 'ի բացեայ, անկանել 'ի վերայ գնդին այն
մինչդեռ ևս ընդ բեռամբքն [1] իցէ· յորոյ 'ի վանելն և

---

1 Քանզի՛ սովոր էին հռովմայեցիք 'ի չուել բանակին ընդ բեռանս բառնալ զպարէն, զկահս, զձողս և զզէնս:

և այսրէն 'ի մայրեացն 'ի մերան գլոհ տային, և մերըզն ոչ անդր քան զսահման հարթ և դիւր վայրացն իշխէին զփախուցեալսն հալածել, 'ի նմին ժամանակի զունդքն մե-ցեքին նախաժամանք չափեալ զտեղին՝ սկսան կառուցանել զճամբարն: Իբրև առաջին կարասի բանակին մերոյ յերևան եկն մացառաղօղ որջացելոցն, զի զայն ժամ կէտ եդեալ էր նոցա 'ի մարտ, նովին ճակատու և ռազմիւ որովք կազմեալ կային 'ի մայրիսն, իսկ և իսկ ամենայն ամբոխիւ սլացեալ խոյացան 'ի հեծելախումբն մեր: Զսոսա առ ետեղ պարզեալ պղտորեալ՝ անհնարին արընթացիւք արշաւեցին 'ի գետն, մինչև գրեթէ 'ի միում ժամու՝ յանտառին և 'ի գետն և 'ի մեր հեռո երևել թշնամեացն: Նովին երագութեամբ 'ի հանդիպահայեաց բլրոյն դիմեցին և 'ի ճամբար մեր և 'ի գործաւորս գործոյն:

Ի. Կեսարու զամենայն ինչ միանգամայն հասանէր առնել. պարզել զդրօշն կարմիր՝ զնշանակն մարտի, փողանըշան հարկանել, դադարեցուցանել զզօրականն 'ի գործոյն, զփոքր մի 'ի բաց հեռացեալսն 'ի խնդիր հողակուտի՝ յետս կոչել, ճակատ յօրինել, սրտապնդել զզօրն, նշանս բաշխել. յորոց ոչ սակաւ մասն խափանէր կարճութիւն ժամանակին, թշնամեացն եկք և յարձակումն: Այսմ ամենայնի տագնապ տարակուսանաց երկու ինչ 'ի դէպ ելանէին յաջողուածք. գիտութիւն զօրականին և փորձութիւն. զի յառաջին պատերազմունսն ընդ կիրթ անցեալք, քան յայլոց ուսանել՝ ինքնին դիւրաւ իմանային զարժանն գործելոյ. և զի Կեսարու չէր հրամայեալ ումեք 'ի գործոյն և տեղակալաց իւրաքանչիւր գնդի գնդի 'ի բաց ելանել, բայց միայն 'ի բովանդակել գործոյ ամրութեան ճամբարին: Սոքա առ երագութեան և հպարտութեան թշնամեաց ոչ ինչ կարօտէին հրամանին Կեսարու, այլ որ ինչ 'ի դէպն էր՝ իւրովի 'ի գործ տանէին:

ԻԱ. Կեսար, զկարևորսն հրաման տուեալ, ընթացաւ 'ի քաջալերել զզօրական յո՛ և դէպն եա. և եհաս 'ի Տասներորդ գունդն: Ոչ երկայն ինչ խօսիւք խրախոյս ետ մարտ-

կացն, այլ զի զառաջին քաջութիւնսն յիշեսցեն, և մի ինչ խռովեսցին յանձինս, և արիաբար զդէմ կալցին բանութեան թշնամւոյն. և զի քան զնետընկէց մի չէին հեռի թշնամիք, նշան ետ սկիզբն մարտին առնելոյ. անդ 'ի միւս կողմն յորդորանաց սակս ընթացեալ, եդին զնոսա 'ի մարտ մտեալ։ Այնչափ էր ժամանակն կարճատեալ, և ոգիք թշնամեացն յօժարափոյթք 'ի կռիւ, զի ոչ միայն առ 'ի զարդն յօրինել, այլ և 'ի սաղաւարտս ագանել և զծածկոյթս վահանացն մերկանալ՝ պակասեաց ժամ։ Ըստ դիպաց յորում կողման և գտաւ ոք 'ի գործոյն, և զոր նշանս և ետես, անդ եկաց. զի մի 'ի խնդրել զիւրսն՝ ժամավաճառ լինիցի 'ի մարտէն։

ԻԲ. Զճակատն յարդարեալ, ոչ այնչափ ըստ ռազմական օրինի և կարգի՝ քան ըստ վայրացն բնութեան և զառ 'ի վայրի բլրոյն և հարկի ժամանակին, զի 'ի տեղիս տեղիս այսր անդր գունդք այլ և այլ՝ յայլ և այլ կողմանս զթըշնամիսն մղէին, և թանձրախիտ ցանկովքն արգելովք՝ որպէս կանխեցաք ցուցաք՝ հեռաւոր տեսիլն խափանէր, յայս սակս չէր մարթ անվրէպ թիկունս կացուցանել, ոչ զիւրաքանչիւր կողման զպէտսն հայթայթել, և ոչ զամենայն հրաման միում միայնոյ ամենեցուն հասուցանել։ Վասն որոյ՝ յայնչափ դժուարին հանգամանս իրաց և բաղդին պատահարք այլ և այլ հանդիպէին։

ԻԳ. Մարտիկք իններորդ և տասներորդ գնդացն՝ 'ի ձախում թևի ճակատուն կացեալք, փութապէս զմըկունդսն արձակեալ 'ի բարձուանդակէն 'ի գետ անդր վանեցին զխոնջ և զվաստակաբեկ և զվիրաւոր Ատրեբատսն՝ որ յայն կողմն էին վիճակեալք. և 'ի ձեռպէն յանցսն՝ հասեալ 'ի վերայ սուսերօք 'ի տագնապի անդ՝ սատակեցին 'ի նոցանէ ամբոխ բազում։ Ինքեանք համարձակ անցեալ ընդ գետն և 'ի տեղի ինչ դժուարուտ անկեալ, 'ի դառնալ թշնամեացն ընդ կռուկ և 'ի ճակատ տալ, անդրէն 'ի կռիւ չահատակեալ՝ 'ի փախուստ դարձուցին։ Նոյնպէս յայլում ուրեք կողման երկու այլ գունդք՝ մեռանին և

ութերորդ, հալածեալ զվերոմանդուացիս՝ ընդ որս մարտընչէինն, 'ի բարձուանդակէն 'ի ստոր առ ափամբք իսկ գետոյն մղէին պատերազմ: Սակայն յառաջոյ և 'ի ձախմէ կուսէ դրեթէ բնաւ ամայացեալ ճամբարին, մինչդեռ յաջում թևին կայր գունդն երկոտասան և եօթներորդն ոչ ինչ կարի 'ի բացեայ 'ի նմանէ, ներուեանք առ հասարակ յոգնախուռն ամբոխիւ՝ որոց զօրավարէր Բոդուոգնատ իշխանապետ՝ 'ի նոյն տեղի դիմեցին. կէսք զթևան տարածեալ՝ զգունդսն պաշարել սկսան, և կէսք 'ի բանակետղն ընթանալ:

ԻԴ. Ի նմին ժամանակի այրուձին մեր և մեկնակաղէն հետևակամարտք, զորս ընդ առաջին վանեալսն 'ի յարձակմանէ թշնամեացն լինել ասացաք, մինչդեռ 'ի ճամբարն ապաստան գային, թշնամեացն պատահեալք՝ անդրէն ընդ այլ կոյս փախուստ խնդրէին, և ռամիկապաք զօրականէին որ 'ի յետկոյս դրանէ ճամբարին և 'ի գլխոյ բլրոյն տեսին զմերսն յաղթողս անցեալս ընդ գետն, ելեալք 'ի դուրս յառ և յապուռ, իբրև դարձան հայեցան, և զթշնամիսն 'ի բանակս մեր տեսին երթևեկեալ, շտապ տագնապաւ 'ի փախուստ աճապարէին: Անդէն և որոց զկարասին բարձեալ գային՝ ելանէր աղաղակն և մռնչիւն, և այլք այլուր ղարհուրեալ խուճապէին: Յայսմ ամենայնէ խռովեալ այրուձին տրեւիրեան, որոց առ գալլիացիս նշանաւոր է համբաւ քաջութեան, և 'ի քաղաքէն 'ի թիկունս առաքեալ եկեալ էին առ Կեսար, իբրև տեսին զբանակետղն մեր լցեալ 'ի խռանէ թշնամեաց, զգունդսն հարստահարեալս և դրեթէ պաշարեալս, ռամիկսպասքն՝ հեծեալք՝ պարսաւոր նումիդացիք այսր անդր ցրուեալ և ընդ բնաւ կողմանս հեղեալ 'ի փախուստ, յուսահատ եղեալ 'ի մերոց իրացս՝ խաղացին գնացին 'ի տուն. պատմեցին 'ի քաղաքն, թէ հռովմայեցիք վանեալ գձձեալ 'ի պարտութիւն մատնեալ, և ճամբար նոցա և կարասին 'ի բուռն անկեալ թշնամեաց:

ԻԵ. Կեսար, յետ սրտապնդելոյ զգունդն տասներորդ՝ ընթացեալ յաջ թևն, իբրև ետես զի իւրքն նեղեալ տագ-

Նապլէին, և ամենեցուն 'ի մի վայր յարձակելոյ՝ երկոտասան գնդին զօրականք խռնեալ կուտեալ՝ խափան լինէին միմեանց 'ի կռիւ, ամենայն հարիւրապետք գնդին չորրորդի կոտորեալք էին, և նշանակիրն կորուսեալ զնշանն՝ ինքն սպանեալ, այլոց ևս խմբիցն գրեթէ ամենայն հարիւրապետաց՝ էր որ վիրաւոր, էր որ սատակեալ, ընդ որս և Նախաշտէն[1] Պ. Սեքստիոս Բակուլոս այրն կորովի, բազում և հաստոյր վիրօք հարեալ՝ մինչ չզօրել յոտին կալ, և այլքն յուլացեալ, և ոմանց 'ի Նորամուտից[2] դասալիք եղեալ 'ի կռուոյն ելանէին և 'ի զինուց խուսափէին, թշնամիք՝ ոչ 'ի դիմաց կուսէ 'ի ստորէ դադարէին դիմել, և ոչ յերկոցունց կողմանց յաջմէ և յահեկէ 'ի վերայ երթալ, և յանձկի և 'ի կարևոր կայր գործն, և չգոյր ուստեք օգնութիւն առնելոյ, անդէն 'ի Նորամուտից առեալ զմիոյ զինուորի զվահանն հանեալ, — զի ինքն առանց վահանի էր անդր եկեալ, — ընթացաւ յառաջին ճակատն. և յանուանէ ձայնեալ զհարիւրապետսն, և առ այլ ռազմականսն խրախոյս հարեալ, զրոհ տալ միահամուռ հրաման ետ, և զջոկատսն անօսրել, զի դիւր լինիցի սուր 'ի գործ արկանել: Նորա գալստեամբն խրախոյս առեալ զօրականին և 'ի յոյս արծարծեալ, զի իւրաքանչիւր ոք և 'ի տագնապին իւրում ջանայր գուն գործել առաջի զօրագլխին, նահանջեցաւ փոքր մի թշնամեացն բռնութիւն:

ԻԶ. Տեսեալ Կեսարու և զգունդն եօթներորդ զմերձակայ՝ տագնապեալ յերեսաց թշնամւոյն, հազարապետաց զօրուն ազդ արար՝ զի փոքր մի մերձեսցին գունդք առ

---

1 Նախաշտէ կամ Նախաշտէն կոչէր առաջինն 'ի հարիւրապետս երրորդ կարգի դասականաց ճակատուն՝ աշտէնաւորաց, իշխանն ամենայն հարիւրապետաց, որ աստիճան մեծ էր՝ գրգ. հաւասար հազարապետաց:

2 Ցանկանել ուրուք յառաջին կամ յերկրորդ կարգէ դասականաց՝ այլք յերրորդէն անցանէին 'ի տեղի նոցա, և նոքա են Նորամուտքն անուանեալք:

միմեանս և միահամուռ 'ի թշնամիսն յարձակեսցին: Զոր արարեալ, և միմեանց ձեռն մատուցեալ, աներկիւղ յընդդէմ կալն առ 'ի թշնամւոյն պաշարելոյ, սկսան յախորտագոյնս դիմանալ և քաջասիրտս մաքառել: Ի նմին ժամուցորք երկուց գնդացն՝ որ 'ի վերջս բանակին կային 'ի պահ կարասւոյն, 'ի շաւինդ մարտին անդէն արշաւասոյր երևէին թշնամեաց 'ի գլուխ բլրոյն: Եւ Տ. Լաբիենոս առեալ զբանակս թշնամեացն, և 'ի բարձուէ անտի տեսեալ զեղեալսն 'ի մերում բանակին, առաքեաց 'ի թիկունս մերոցն զգունդըն տասներորդ: Որոց 'ի հեծելոցն և 'ի ռամիկսպասուցն փախստենէ ծանուցեալ յորում կողման իցէ գործն, և յարում վտանգի ճամբարն և գունդք և սպարապետն իւքնին գլխովին, ոչինչ պակաս արարին իւրեանց յերագութենէ:

ԻԷ. Ի սոցա եկիցն այնչափ փոփոխութիւն եղև իրաց, մինչև մերքն՝ ես և անկեալքն վիրաւորք, յեցեալ 'ի վահանսն անդրէն 'ի կռիւ խիզախէին. յայնժամ և ռամիկսպասաւքն՝ տեսեալ զթշնամիսն ահաբեկ, անզէն անգամ զինելոցն 'ի դիմի հարկանէին: Իսկ այրուձին, 'ի քերել յանձնէ զկեղտ փախստեանն քաջութեամբ, ընդ ամենայն տեղիս մղէր զպատերազմն՝ անցանել զանցանել զգնդացն մարտիկօք: Բայց թշնամեացն՝ և 'ի յուսահատութեան անդ իւրեանց այնչափ նահատակութիւն ցուցեալ, մինչև յանկանել առաջնոցն, առընթերակայք նոցին 'ի դիակունս նոցա ամբարձեալք՝ 'ի մարմնոց անտի նոցունց կռուէին. և 'ի սոցա անկանել և դիզանալ դիականց, մնացեալքն իբրև 'ի բլրոյ ինչ իմեքէ՝ նետաձիգ 'ի մերսն առնէին, և զաշտէսն յօդոյն յափշտակեալ՝ այսրէն առաքէին. զի ոչ վայրապար քաջացն այնպիսեաց համարելի էր՝ յանդգնել անցանել ընդ գետն լայն, ելանել ընդ բարձրաբերձ ափունսն, միջամուխ լինել 'ի գժնդակ վայրն. զորս 'ի կարի դժուարնոց դիւրինս էր արարեալ ոգւոցն մեծանձնութիւն:

ԻԸ. Ի կատարած մարտին և 'ի սպառասպուռ ընջիլ ազգի և անուան Ներուեանց, ծերունիքն զորս մանկտւով և կանամբք հանդերձ 'ի ճախճախուտս և 'ի ճահիճս ասացաք

ժողովեալ, ընդ առնուլ զլուր մարտին, ամենեքին անարգել այնուհետև զյաղթօղսն և ընաւ անյոյս զպարտեալսն համարեալ, ամենեցուն ապրեցելոցն հաւանութեամբ դեսպան արարեալ առ Կեսար, մտին նմա ընդ հարկաւ ծառայութեան, և յանմոռանալի աղէտս անդ ազգին՝ 'ի վեց հարիւր աւագանւոյ երիս ևեթ ասացին մնացեալս, և 'ի վաթսուն հազար առնէ՝ հազիւ հինգ հարիւր միայն զինակիրս. առ որս իբր 'ի տառապեալս և յաղաչաւորս գթութ խնամոցն ցուցանել կամեցեալ Կեսարու, սիրողաբար պատպանեաց զնոսա, և հրաման ետ երթալ նստել 'ի սահմանս իւրեանց և 'ի քաղաքս. և սահմանակցաց իւրեանց պատուիրեաց կարճել զանձինս և զարս իւրեանց 'ի զրկելոյ և 'ի խռովելոյ զնոսա։

ԻԹ. Ադուատուականք զորոց 'ի վերագոյնդ գրեցաք, թէ ամենայն զօրօք 'ի թիկունս օգնականութեան գային Ներուեանց, ընդ լու լինել պատերազմին՝ յուղւոյ անտի ելեալ դարձան 'ի տուն, և թողեալ ամայի զքաղաքս և զամուրս ամենայն, զամենայն ինչ զիւրեանց փոխեցին 'ի քաղաք մի պնդակազմ անդստին 'ի բնէ անձեռագործ ամրացեալ. որոյ էին յամենայն կուսէ շուրջ շուրջանակի ժայռք բարձրաբերձք և զառ 'ի թափ սեպացեալ հայեցուածք, և 'ի միոյ կողմանէ ևեթ մնացեալ հարթ դիւրընթաց՝ 'ի լայնութիւն ոչ աւելի քան զերկերիւր ոտնաչափ. զայն վայր՝ կրկին բարձր պարսպօք ամրացուցեալ էին, և քարինս ծանունս սատուարս և հեծանս ծայրատաշս 'ի պարսպին ագուցեալ։ Ինքեանք զարմ էին 'ի Կիմբրաց և 'ի Տևտոնաց. որոց երբեմն 'ի մեր նահանգ և յԻտալիա ճանապարհ արարեալ, զաղխ և զկարասին զոր ընդ իւրեանս վարել և տանել ոչ կարէին, 'ի պահեստ եդեալ յայսկոյս Հռենոս գետոյ, պահապանս և պահնակս յիւրեանցն թողին վեց հազարս արանց 'ի միասին։ Սոքա յետ մահու նոցին՝ ամս յամայր 'ի սահմանորդացն նեղեալք, այն զի մերթ ճակատս տային, մերթ զեկեալսն մղէին, նոցա ամենեցուն հասարակաց հաճութեամբ խաղաղութիւն արարեալ, զայս տեղի ընտրեցին իւրեանց բնակութեան։

Լ. Եւ 'ի սկիզբն գալստեան սպային մերոյ սակաւ սակաւ արշաւանս գնէին 'ի քաղաքէն, և թեթև մրցութեամբք ընդ մերսն կռուէին։ Ապա շերտափակ արարեալ յերկոտասան ոտնաչափ և շուրջ պատեալ 'ի հնգետասան հազար շուրջանակի, և խիտ առ խիտ ամրոցս զիւրեամբք ածեալ, ամրացան 'ի քաղաքն։ Իբրև տեսին թէ ողորահիւս պահանգակապ պատնէշք պատրաստին, ամբարտակ կանգնի և աշտարակ ամբառնայ 'ի հեռաստանէ, սկսան նախ այպն առնել 'ի պարսպէն, և 'ի ձայն բարձր ղաղաղակ հարկանել, թէ առ ի՞նչ այնքան կազմութիւն յայնչափ հեռաստանէ կառուցանիցի։ Որո՞վ ձեռօք կամ որո՞վ ուժով, արք մանաւանդ այնպիսի նկնահասակք, — քանզի բազմաց 'ի գաղղիացւոց առ յաղթանդամութեամբ մարմնոց իւրեանց արհամարհեալ է փոքրկութիւն մեր, — զայնքան մեծամարմին աշտարակ 'ի պարիսպս մեր յեցուցանել յուսայցեն։

ԼԱ. Իսկ իբրև հայեցեալ տեսին զի շարժի և մերձենայ 'ի պարիսպն, 'ի նորադործ և յանսովոր իրացն տեսլենէ պակուցեալք, առաքեցին առ Կեսար հրեշտակս 'ի հաշտութիւն խաղաղութեան, որ խօսեցան օրինակ զայս. Ոչ կարծեմք մեք առանց դիցն օգնականութեան պատերազմ մղել հռովմայեցւոց, որ կարօղն են զայդպիսի բարձրամուր կազմածս այդու արագութեամբ շարժել և 'ի մերձուստ տալ պատերազմ, զանձինս և զամենայն ինչ զիւրեանց՝ նոցա 'ի ձեռս տալ խոստացան։ Զայս միայն խնդրեալ և պաղատեալ, զի եթէ ըստ գթութեան և քաղցրութեան իւրում՝ զոր յայլոց լսէին՝ պահել կամիցի զԱդուատականս, մի՛ զզէնսն 'ի նոցանէ կապտեսցէ. զի գրեթէ ամենայն սահմանակիցք մեր, ասեն, թշնամի են ընդ մեզ և ընդ քաջութիւն մեր նախանձաբեկք, յորոց անհընար լիցի մեզ պաշտպանել անձանց՝ եթէ անզէն մնայցեմք. մեզ լաւ է, եթէ յայդ պայման հասանիցեմք, ամենայն վտանգից 'ի հռովմէական ժողովրդենէն համբերել, և մի՛ 'ի նոցանէ չարչարանօք վճարել, յորոց միջի իշխանաբար կեալ սովորն էաք։

ԼԲ. Առ այսոսիկ ետ Կեսար պատասխանի. թէ ոչ ըստ իւրեանց արժանեաց, այլ մանաւանդ ըստ իւրում բնաւորութեան պահէր զքաղաքն, եթէ չև հասեալ Խոյին 'ի պարիսպն՝ տուեալ էին 'ի նա ձեռն, այլ արդ չիք հնար նուաճութեան, բայց միայն զզէնսն 'ի ձեռս տալով. և ինքն զնոյն զօր ընդ Ներուեանս՝ և ընդ նոսա արասցէ, և հրաման տացէ սահմանակցացն, մի՛ ինչ մեղանչել հպատակաց ժողովրդեանն Հռովմայ: Պատմեալ զայս առ իւրեանցսն, նոքա զամենայն հրամանսն առնել խոստացան: Տեղջակոյտ մեծ զինուց բերեալ ընկեցեալ 'ի պարսպէն 'ի փոսն որ առաջի քաղաքին, մինչ գրեթէ 'ի ծայր բարձրութեան պարսպին և ամբարտակին հաւասարել դէզադէզ զինուցն զրահանք, և սակայն, որպէս ապա յայտ եղև, զերիր մասն ծածկեալ 'ի քաղաքին, դրօքն բացելովք այնօր 'ի խաղաղութեան կացին:

ԼԳ. Ընդ երեկս հրաման արար Կեսար տաականել ըզդրունսն և զօրուն ելանել 'ի քաղաքէն, գուցէ ինչ կրեսցեն 'ի վնաս քաղաքացիքն 'ի զօրականէն: Նոքա, ըստ որում 'ի վեր ել, յառաջագոյն 'ի միտս արկեալ, թէ նուաճութեամբ իւրեանց՝ մերքն ոչ ևս 'ի ներքս մուծանիցեն պարեկապանս, կամ գէթ ներողագոյնս պահեսցեն, զայս զմտաւ ածեալ՝ կէսք նովին որովք պահեալ և թաքուցեալ էին զինուք, այլք վահանս 'ի կեղևոյ ծառոց և կամ ոզորակապս կազմեալ, և ըստ շտապական բաշխոյ ժամու հարկին քեմրխտապատ արարեալ, յերրորդ պահու գիշերոյն՝ ընդ որ չէր ինչ կարի բարձր ելք յամուրս մերոց կազմածոց, ընդ այն յանկարծակի ամենայն զօրօք 'ի քաղաքէն 'ի դուրս ոստեան: Անդէն առ ժամայն, որպէս կանխեալ պատուիրեալ էր Կեսար, հրանշան ազդեցութիւն արարեալ, 'ի մօտաւոր ամրոցացն անդր ընթացաւ ամբոխն. և այնպէս ամենաբար կռուեցան թշնամիք, որպէս արժանն էր արանց քաջաց 'ի վերջին անդ վտանգի անձանց 'ի դժուարին տեղւոջն ընդդէմ այնոցիկ՝ որ 'ի պատնիշէն և 'ի մարտկոցացն 'ի նոսա նետաձիգ դնէին. զի 'ի քաջութեան էր ամենայն

յոյս փրկութեան իւրեանց։ Սպանեալ իբրև չորից հազարաց արանց, այլք փախստեայ արկան 'ի քաղաքն։ Ի վաղիւ անդր աւուրն, խորտակեալ զդրունսն, զի չէր ով որ պահ ունէր, և մուծեալ զզօրն մեր 'ի ներքս, զքաղաքն ողջոյն յարքունիս հատեալ 'ի վաճառ եհան հրապարակաւ Կեսար։ Յառգնողաց անտի գլխահամար առ ինքն ածաւ հազարաց յիսուն և երից։

ԼԴ. Ի նմին ժամանակի, 'ի Պ. Կրասոսէ՝ զոր միով գնդաւ առաքեալ էր առ Վենետս, Ունէլս, Ոսիսմեանս, Կուրիոսոլիտս, Սեսուվեանս, Աւլերկս, Հռետոնս, որ են ազգք ծովեզերեայք և հուպ յաշխարհածովն, տեղեկութիւն եկաւ՝ զի այն ամենայն ազգք ընդ ձեռամբ և ընդ իշխանութեամբ հռովմէական ժողովրդեանն էին նուաճեալք։

ԼԵ. Յետ այսր ամենայնի գործոց քաջութեան, խաղաղացեալ համօրէն Գաղլիա, այնպէս հռչակ հարեալ էր համբաւ պատերազմիս այսր առ խուժդուժսն, մինչև յազգաց ազգաց բնակաւորաց յայնկոյս Հռենոսի, առաքէին հրեշտակք առ Կեսար, պատանդութիւն յանձն առնուլ, և հլուական խոստանալ կամակատարութիւն։ Կեսար քանզի յԻտալիա և 'ի Լիւրիկէ փութայր երթալ, 'ի ըսկիզբն առաջիկայ ամարայնոյն առ ինքն դարձ առնել հրամայեաց։ Ինքն զգունդսն 'ի ձմերոց ածեալ 'ի Կարնուտս, յԱնդեկանս և 'ի Տուրոնս, որ քաղաքք մերձաւորք են տեղեացն յորս պատերազմն մղեցաւ, եւ գնաց յԻտալիա։ Իսկ յաղագս իրացն այնոցիկ՝ ըստ թղթոցն Կեսարու, պաղատանք սահմանեցան աւուրս հնգետասան գոհութեան առ դիս. որ ոչ ումեք էր եղեալ յառաջ քան զայն ժամանակ[1]։

---

1 Այս գոհութեան պաղատանք լինէին 'ի դիմաց քաղաքայաղթ զօրավարին երախտաւորի, աշխարհօրէն՝ բայց մանաւանդ յիշխանացն, անկանելով ոտից առաջի և առ տոն աստուածոցն. և կատարէին տօնօրաբար յաւուրս երկուս կամ երիս կամ ութ, և այլն։

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ԳԱՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## Գ Ի Ր Ք   Ե Ր Ր Ո Ր Դ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. Սեր. Գալբա տեղակալն՝ զազգս ինչ բնակեալս ընդ Ալպիս և ընդ Հռոդանոս՝ նուաճէ ախորժ պատերազմօք. Բ. ԶՍեդունս և զՎերագրեանս փոխարանջեալս՝ ծանր հարուածովք պատուհասէ. Է. Յայնու ժամանակաւ ապստամբեն և Վենետք, Ունելք, Կուրիոսոլիտք, և այլք ևս աշխարհածովուն գաղղատատան ժողովուրդք. ԺԲ—ԺԴ. Կեսար՝ 'ի զուր ընդ երկար կռուեալ ընդ Վենետս ցամաքային պատերազմաւ, հուսկ ապա նաւամարտիւ յաղթէ նոցա. ԺԷ—Ի. Ի նմին ժամանակի տեղակալքն, Կ. Տիտուրիոս ընդ Ունելս, և Պ. Կրասսոս ընդ ոչ սակաւ ազինս Ակուիտանիոյ յաջողաբար մղեն մարտս. ԻԸ. Կեսարու ձեռն 'ի Մորինս և 'ի Մենապեանս արկեալ, վասն յեղանակի տարւոյն յետս դարձուցանէ զզօրն:

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱՂՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



## ԳԻՐՔ Գ.

Ա. Ի գնալ Կեսարու յԻտալիա, զՍեր. Գալբա՝ ընդ երկոտասաներորդ գնդին և մասին ինչ առնեձիոյ՝ առաքեաց 'ի Նանտուանտս, 'ի Վերագրեանս և 'ի Սետունս, որք 'ի սահմանացն Ալլոբրոգաց և 'ի Լեման ծովակէն և 'ի Հռոդանոս գետոյ՝ ձգին մինչև 'ի գլուխս Ալպեանց: Պատճառ այն էր յղելոյ զնա, զի կամէր համարձակ լինել ճանապարհին ընդ Ալպիս, ընդ որ մեծաւ վտանգաւ և ծանր բաժիւք սովոր էին անցանել վաճառականք: Հրաման ետ նմա, զի եթէ պիտոյ համարեսցի՝ յայն տեղիս դիցէ զգունդըն ձմերել: Գալբա զմարտս ինչ աջողակաբար վճարեալ, և առեալ զբազում ամրոցս նոցա, եկեալ յամենուստ առ նա դեսպանաց, և պատանդաց մատուցեալ, և արարեալ հաշտութիւն, եդ 'ի մտի՝ խումբս երկուս 'ի Նանտուանտս կացուցանել, և ինքն՝ միւսովն խմբիւք նորին գնդի՝ ձմերել 'ի գեղջն Վերագրեանց յՈկտոդուրն անուանեալ: Այն գիւղ կառուցեալ 'ի հովտի, սուղ ինչ դաշտավայրին առ նմա, բարձրագագաթն լերամբք շուրջանակի պատեալ կայ. և զի գետովն յերկուս բաժանի մասն, զմի կողմն գեղջն շը-

նորհեաց գաղղիացւոցն, զմիւսն Թափուր 'ի նոցանէ Թողեալ՝ եւ գնդացն 'ի ձմերել. չերտափակ և փոսիւ ամրացուցեալ զտեղին։

Բ. Իբրև անցանէին հարուստ մի աւուրք ձմերոցաց, և նպարակել զտեղին էր հրամայեալ, տեղեկացաւ անդէն վաղվաղակի 'ի լրտեսացն, զի յայնմ կողմանէ գեղջն չնորհելոյ գաղղիացւոցն, ամենեքեան ելեալ գնացեալ էին գիշերայն, և անհունն ամբոխ Սեռունաց և Վերագրեանց ըմբռնեալ էին զբարձրաւանդակ մօտակայ լերինն։ Զայս յայլ և այլ գէմս էին արարեալ, զի խորհուրդ առնուցուն գաղղիացիք վերստին 'ի մարտ արշաւել և սատակել զգունդըն։ Մի՝ զի զգունդն զայն պակասաւոր՝ ոչ ամբողջ, վասն հատելոց անտի խմբիցն երկուց, և բազմաց՝ մանաւանդ առաքելոց 'ի պաշար համբարոց՝ պակասեալ անտի, արհամարհէին առ նուազութեանն. և դարձեալ՝ համարէին թէ առ խոժոռութեան առապար վայրացն, յորժամ ինքեանք 'ի լերանց անտի 'ի հովիտն նետս ճապաղելով հրոսեսցեն, և ոչ առաջի նախաձեռն յարձակման իւրեանց կարասցեն կալ։ Յաւելոյր ևս 'ի վերայ, զի սորջանայքն ընդ անջատումն որդւոց իւրեանց պատանդութեան անուամբ 'ի նոցանէ, և 'ի միտս իւրեանց հաւանեալ էին, թէ հռովմայեցիք՝ ոչ միայն 'ի պատճառս ճանապարհացն՝ զկատարս Ալպեանց գուն գործեն 'ի ձեռս բերել, այլ և 'ի մշտնջենաւորս տիրելոյ նոցա, և զայն տեղիս 'ի նահանգն իւրեանց խառնելոյ 'ի սահմանակից։

Գ. Զայս գուժկանս լուեալ Գալբայի, մինչդեռ ոչ ձմերոցացն պատրաստութիւնք և ամրութիւնք կատարեալ էին, և ոչ ցորեան և այլ համբար 'ի լիութիւն բաւականի ժողովեալ, վասն զի հպատակելով նոցին և պատանդիցն ընդունելով՝ ոչ ևս կասկած պատերազմի կարծէր, հապճեպով զատեանն ժողովեալ՝ սկսաւ խորհուրդ հարցանել։ Իբրև 'ի հրապարակի անդ բազում յանկարծահաս խէթ վտանգի քան զկարծիս գայր 'ի յայտ, և բովանդակ գրեթէ բարձունք խուժանաւ զինուորելոց խռն-

ղեալ երևէին, և 'ի խնուլ ճանապարհացն ոչ յօգնութիւն ինչ կարող էր գալ, ոչ համբար 'ի ներքս տանել. զրեթէ հատեալք 'ի յուսոյ կենաց՝ տային խորհուրդս այսպիսիս. Թողեալ զաղխս ամենայն՝ և 'ի գուրս վազեալ, նովին ճանապարհօք ընդ որս եկեալն էին՝ աճապարել 'ի փրկութիւն անձանց: Սակայն բազմաց հաճոյ թուեցաւ, պահեալ զայս խորհուրդ 'ի վերջին ապաւէն, առ ժամայն զիրացն յաջողութիւն նկատել և ամրացուցանել զբանակն:

Դ. Սուղ ինչ պարապ առեալ, մինչ հազիւ ժամանակ լինելոյ 'ի կարգել և 'ի բովանդակել զխորհեալսն, թշնամիք յամենայն կողմանց 'ի տալ նշանին 'ի վայր հոսեալ՝ վիրգս և զփայլատական սկսան թօթափել 'ի հովիտն: Մերքն զառաջինն դեռ ևս անխոնջք՝ քաջապէս պատերազմեալ լինէին, և ոչ մի նետ վայրապար առաքէին 'ի բարձունս. զի եթէ կողմ ինչ բանակին մերկանայր անպատսպար 'ի պահապանաց, անդր դիմէին յօգնութիւն. բայց այսու նկուն լինէին, զի եթէ երկարութեամբ մարտին պարտասեալ թշնամիք 'ի կռուոյն 'ի բաց եղանէին, այլք դեռ ևս անաշխատք 'ի տեղին յաջորդէին, որում չմարթէր լինել առ մերսն՝ վասն սակաւաձեռն գնդին լինելոյ. և ոչ խոնջելոյն միայն 'ի գուպարածէն մեկնել, այլ և ոչ խոցելոյն անգամ 'ի տեղւոջէն խլրտել և անձին զգալ կարողութիւն էր:

Ե. Յետ աւելի քան զժամս վեց 'ի կռուին ժուժկալելոյ, և ոչ միայն ուժոյն, այլ և զինուցն պակասելոյ մերոցն, մինչդեռ տակաւին 'ի վերայ կային թշնամիք, և առ մերոցն լքանելոյ՝ սկսանէին զչերտաւորսն պատառել և զփոսան լնուլ, և 'ի յետին վտանգ հասեալ կային իրքն, Պ. Սեքստոս Բակուլոս՝ նախաշաւէն հարիւրապետ՝ զոր 'ի Ներուեան խազմին բազմավէր եղեալ պատմեցաք, նոյնպէս և Կ. Վոլուսենոս՝ հազարապետն զօրու, այր մեծ խորհրդական և առաքինի, ընթացեալ երկոքեան առ Գալբա՝ մի և եթ յոյս փրկութեան զգացուցանեն 'ի միջի լինել, այն զի խուեն 'ի գուրս 'ի տեղւոջէն վազեալ՝ 'ի յետին հնարս ձեռն արկանիցեն: Անդ ապա կոչեցեալ զհարիւրապետսն՝

իսկ և իսկ ազդ առնէ ամբոխին, դադարել փոքր մի 'ի նըս-ռուայն, և յեկեալ զինուցն պահել ևեթ զանձինս, և ոչէ յաշխատութենէն առնուլ. ապա ընդ նշանին տալոյ՝ դառոյթ տալ խուռնընթաց 'ի ճամբարէն 'ի դուրս, և 'ի քաջութեան միայն ապաստան առնել զանձանց փրկութիւն:

Զ. Նոքա զհրամայեալսն կատարեն, և անդէն դրօշն առ հասարակ փետեկելովք արտաքս ստուցեալք, ոչ ե-րացն հասու լինել թէ զինչ այն իցէ՝ տան թշնամեաց, և ոչ ուշաբերել: Զայս օրինակ փոփոխելով բաղդին՝ զեկեալսն յուսով տիրելոյ բանակին՝ յամենուստ շուրջանակի պա-տեալ պաշարեալ սատակեն. և յերեսուն հազար և աւելի մարդկանէ, որչափ 'ի բանակն խուժեալ խմայնեաց յայտնի էր, առաւել քան զերիր մասն սպանեալ, զայլս զարհու-րեալս 'ի փախուստ դարձուցանեն, նա և ոչ 'ի բարձունսն անդ բունել թոյլ տան: Այսպէս վարատեալ բնաւ զթշնա-միս և 'ի զինուցն մերկացեալ, դան ժողովին 'ի բանակետղն և յամուրս իւրեանց: Ի վախճան պատերազմին, քանզի յաճախ հանդէս առնել բաղդին ոչ կամէր Գալբա, և տե-սանէր զի այլով խորհրդով եկեալ անդր 'ի ձմերոց, և այ-լոց իրաց հանդիպեալ էր, մանաւանդ 'ի պարենի և այլոց համբարոց չքաւորութենէ յորդորեալ, 'ի վաղիւ անդր հրձիգ արարեալ զամենայն շինուածս գեղջն, չու առնէ խաղալ գնալ 'ի մեր նահանգ. և անարգել 'ի թշնամւոյ ըն-կրճելոյ կամ զարանակէ առ ուղւոյ, անարատ ողջանդամ ածեալ զգունդն 'ի Նանտուանտս, և անտի յԱլլոբրոգս, անդ ձմերեաց:

Է. Յետ այսր ամենայնի գործոց քաջութեան՝ Կեսա-րու ամենայն իրաւամբք 'ի խաղաղութեան համարեալ ըզ-Գալլիա, բելգացիք նկուն եղեալք. գերմանացիք հալա-ծեալք, Սեդունք 'ի պարտութիւն մատնեալք յԱլպեանս. ապա այնուհետև 'ի մուտս ձմերայնոյն ինքն գնացեալ 'ի Լիւրիկէ, զի կամէր երթալ և առ ազգսն այնոսիկ և զաշ-խարհն տեսանել, ահա յանկարծոյն յարեաւ պատերազմ 'ի Գալլիա: Սկիզբն կռուոյն այս եղև: Պատանին Պ. Կրաս-

սոս ընդ եօթներորդ գնդին ձմերէր յԱնդեանս մերձ 'ի Ծովն համատարած: Առ կարօտութեան պարէնի 'ի կողմանսն՝ զբաղղումս յասպահապետացն և 'ի հազարապետաց զօրուն առաքէ սա 'ի քաղաքսն մօտաւորս 'ի խնդիր ցորենոյ և համբարոց. ընդ որս էր Տ. Տերրասիդիոս՝ յղեալ առ Ունէլս, Մ. Տրեբիոս Գալլոս՝ առ Կուրիոսոլիտս, Կ. Վելանիոս ընդ Տ. Սիլիոսի՝ առ Վենետս:

Ը. Ազգիս այսորիկ յոյժ ընդարձակածաւալ է իշխանութիւն ընդ ամենայն ծովեզերս կողմանցն այնոցիկ. զի և նաւք բազում են Վենետաց, որովք սովորեցին նաւել 'ի Բրիտանիա, և գիտութեամբ և հմտութեամբ նաւատականին զանցանեն զայլովք, և ընդ ահագին և լայնածիր ոլորտս բազմածուփ ծովուն, բաց 'ի սակաւուց ոմանց նաւահանգստեից զորս ինքեանք ունին 'ի միջի անդ, զայլս դրեթէ առ հասարակ՝ որոց գործ է 'ի նմին ծովու՝ ունին իւրեանց հարկատուս: Ի սոցանէ կալաւ սկիզբն 'ի պահանս ունել զՍիլիոս և զՎելանիոս. զի ակն ունէին նոքօք զբուամբ ածել զպատանդս իւրեանց զտուեալսն Կրասոսի: Ի սոցա ամենեցուն հրապուրեալ սահմանորդաց, ըստ արագամիտ և յանկարծածին խորհրդոցն գաղղիացւոց, 'ի նոյն միտս 'ի պահ արկանեն զՏրեբիոս և զՏերրասիդիոս, և վաղվաղակի դեսպանս արարեալ 'ի ձեռն իշխանաց իւրեանց՝ յուխտ մտանեն ընդ միմեանս, զամենայն ինչ աշխարհախորհ հաւանութեամբ միայն գործել, և զբնաւ ճակատագրին ելս հասարակ յանձն առնուլ: Դրդեն և զայլս 'ի քաղաքաց, կալ յաւերժանալ 'ի նմին ազատութեան՝ զոր 'ի հարց անտի ընկալեալ են, և ոչ զլուծ հռովմէացւոց ախորժել առնուլ: Զամենայն ծովեզերեայ սահմանս վաղընդփոյթ 'ի միտս իւրեանց յանկուցեալ, միաբան հրեշտակութիւն առաքեն առ Պ. Կրասոս, եթէ զիւրսն առնուլ կամիցի, արձակեսցէ յետս զպատանդսն:

Թ. Այսմ ամենայնի տեղեկացեալ Կեսար 'ի Կրասոսէ, զի ինքն յոյժ տարագէմ 'ի բացեայ էր անտի, պատուէր տայ կառուցանել նաւս պատերազմիկս 'ի գետն Լի-

գեր՝ որ հեռի յաշխարհածովէն, և քաշտիկս և նաւաստասխս և զեկամուտս 'ի գաւառէ անտի 'ի ներքս առնել։ Ի հայթայթել փութային այսր ամենայնի, ինքն ընդ ներել ժամանակի տարւոյն նոյն ընդ նոյն փութացաւ 'ի բանակն։ Վենետք և որ այլ են ազգք՝ խրազեկ եղեալ զգալստեանն Կեսարու, և զի 'ի միտ առնուին զոր առ նա էին մեղուցեալ, բանտք և կապանք տեղապահաց՝ որոց միշտ առ ամենայն ազինս սուրբ էր անուն և անմատոյց, ըստ մեծութեան վտանգին հանդերձին կազմել 'ի պատերազմ, և առաւել զնաւացն հոգալ պէտս. մեծաւ յուսով 'ի տեղւոյն բնութիւն վստահացեալք։ Ճանապարհք ընդ ցամաք՝ կտրեցեալք յերկուց երթևեկի ծովածփանացն, նաւարկութիւն արգելեալ յանհմտութենէ տեղեացն և 'ի սակաւութենէ նաւահանգստից, զայսոսիկ գիտէին. նա և զզօրս մեր ոչ հաւատային յամել առ նոսա ընդ երկար առ 'ի չգոյէ պարենի. և զի թէ և ամենայն ինչ ընդ հակառակս ելանիցէ մտաց իւրեանց, համայն հաստատուն զանձինս նաւուքն համարէին. իսկ զհռովմայեցիս նշմարէին՝ ոչ նաւատորմի ունել զօրութիւն, և ոչ զծակատու տեղեացն զխորուտս, զհանգրուանս և զկղզիսն ճանաչել. և զի այլ է ամենևին նաւաստութիւն յանձուկ 'ի շըրջափակ ծովու, և այլ 'ի համատարածն և յընդարձակատարր աշխարհածովէն։ Սովին խորհրդովք զքաղաքսն ամրացեն, յագարակաց 'ի քաղաքսն մթերեն ցորեան, 'ի Վենետիա՝ ուր յայտնի է նախաձեռն առնել Կեսարու 'ի խառնումն մարտին, ժողովեն զնաւացն ամբոխ բազմութիւն։ Ընկերս իւրեանց յայս պատերազմ կարդան 'ի թիկունս զՈսիսմեանս, զԼեքսովեանս, զՆաննետս, զԱմբիալիտս, զՄորինս, զԴիաբլինտս, զՄենապեանս. կոչեն սատարս 'ի Բրիտանիոյ՝ որ կայ հանդէպ գաւառացն այնոցիկ։

Ժ. Այս խոչք և խութք զոր ասացաք՝ առ ոսս կային պատերազմիս այսմ. այլ բազում ինչ խրախոյս տայր Կեսարու 'ի պատերազմ. թշնամանք կալանաւոր Ասպետացն հռովմայեցւոց, ապստամբութիւնն յետ հպատակութեան,

յետ պատանդան տալոյ վստարանջութիւն, այնչափ ազգաց միաբանութիւն 'ի դաւաճանս. և առաւել՝ զի մի՛ յանփոյթ առնել զամանէ, և այլ ևս ազինք արժան գտանիցին և ինքեանց 'ի նոյնս անկղխատանել: Վասն որոյ իբրև 'ի միտ էառ՝ ամենայն գալլիացւոց 'ի յեղափոխութիւն գոլն գործել, և թեթևաբար արագ արագ 'ի խաղմ յորդորել, և զի ամենայն մարդ 'ի բնէ խնամ ունի ազատութեան և ատեայ ըզծառայութիւն, մինչ չև ազգաց բազմաց 'ի մի միաբանեալ՝ հարկ համարեցաւ բաժանել և 'ի բազումս սփռել զզօրն:

ԺԱ. Արդ՝ առ Տրեվերս մերձաւորս Հռենոս գետոյ՝ առաքէ հանդերձ այրուձիով զՏ. Լաբիենոս. պատուէր տուեալ նմա խաղալ առ Հռեմեանս և առ այլ Բելգացիս, և 'ի հարկի հաստատութեան ունել զնոսա. և զԳերմանացիս՝ զորս ասէին 'ի թիկունս կոչեցեալ 'ի Բելգացւոց, եթէ բռնի ընդ գետն նաւօք անցանել կամիցին, արգելուլ: ԶՊ. Կրասոս՝ երկոտասան խմբիւք գնդականաց և հզօր ձեռամբ այրուձիոյ՝ խաղացուցանէ յԱկուիտանիա, զի մի՛ յազգացն այնոցիկ յօգնականութիւն առաքեսցին Գալլիոյ, և գունդ լիցի միաբանութեան ազգաց բազմաց: ԶԿ. Տիտուրիոս սաբինացի զտեղակալն՝ երիւք գնդօք առաքէ յՈւնէլս, 'ի Կուրիոսոլիտս և 'ի Լեքսովեանս՝ զի փոյթ կալցի արգելուլ զձեռն զայն: Զպատանեակն Դ. Բրուտոս՝ նաւատորմին և գալլիացի քաշտեայն՝ զորս 'ի Պիկտոնաց և 'ի Սանտոնաց և յայլոց հանդարտեալ կողմանց հրամայեալ էր գալ ժողովել, զօրավար սատիկան կացոյց. և պատուէր ետ նմա՝ ընդ ժամանելն փութալ դիմել 'ի Վենետս: Ինքն հետևակախումբ զօրօքն չու արարեալ խաղաց գնաց անդր:

ԺԲ. Քաղաքացն դրեթէ առ հասարակ այնպիսի էին դիրք, զի 'ի ծայրս լեզուաց ծովուն և 'ի սարաւանդս նըստեալք, ոչ հետևոտս էին մատչելի, զի ջուրցն յորձանք յանդնդոց ելեալ ողողէին, որ յերկոտասան ժամս երկիցս պատահէ. այլ և ոչ նաւօք, զի յանդորէն միւսանգամ նուազել և տեղի տալ մկանանց հոսանացն՝ նաւք 'ի ծան-

հութեան՝ նոցա առաւել դիւրադէպ և յարմարագոյն էր։ Եւ մերքն ոչ ինչ կարէին ստանանել նոցա առաջակողմ ցրակջքն, վասն անհնարին կարծրակուռ պնդութեան նոցա. և վասն բարձրութեան նոցին՝ ոչ դիւրին ինչ էր նետաձիգ ստանել 'ի նոսա, և նորին աղագաւ հեշտաբար 'ի ժայռս 'ի խութս սալարեալ զօղէին։ Յաւել ևս, զի 'ի վայրենանալ մրրկին՝ և սայլին զինքեանս հողմոյն և ալէկոծութեանն դիւրեաւ տանէին, և անկասկած 'ի խորտուտն կայէին, և 'ի Ջուրցն թողանալ ոչ ինչ 'ի վիմաց և 'ի քարանց զանգիտէին. որ մերոցս նաւաց վասնգ երկիւղալի էր այս ամենայն։

ԺԴ. Առեալ Կեսարու զբազումս 'ի քաղաքացն, տեսեալ զի ընդ վայր տաժանի յայն վաստակ, և ոչ յառնուլ քաղաքանւոյն՝ թշնամեացն կարծի փախուստ վարատակին, և ոչ հնար ինչ է հարկանել զնոսա, եդ 'ի մտի ըսպասել նաւատորմին. որ իբրև ժմեցաւ և յակն անկաւ թշնամեաց, որպէս թէ երկերիւր քան նաւք նոցա ամենակազմք և ազդի ազդի զինուք զարդարեալք, ելեալ 'ի հանդրուանաց ճակատեցան կացին դէմ յանդիման մերոցն։ Ոչ Բրուտոսի սպարապետի նաւահանգիստին, և ոչ հազարապետաց զօրուն և հարիւրապետացն, որոց մէն մի նաւք էին զատուցեալք, յայտնի էր ըստ արժանի թէ զինչ ունիցին առնել կամ զոր օրինակ մարտի ընտրեալ կացուցանել։ Զի ցուկաւ զնոսա խեթկել անհնարին գիտէին. իսկ եթէ մարտկոցս կանգնեսցեն, այնչափ առաւել էր խելաց բարձրութեան 'ի խծիցն նաւաց, զի ոչ 'ի ստորէ դիւրաւ ինչ նետաձիգ 'ի նոսա լինել մարթէր, և արձակեալքն 'ի գալլիացւոց ծանրագոյն անկանէին։ Մի ինչ եւեթ մեծ և կարևոր պատրաստեալ էր 'ի մերոցն, սայրասուր գերանդիք ագուցեալք և պնդեալք 'ի ձողս երկայնաչափս, նմանօրինակ պարսպամարտիկ գերանդեաց։ Սոքօք չուանքն՝ առագաստակալացն կապք 'ի կայմսն՝ ըմբռնեալք և ձգեալք, յուժգին թիավարել նաւին խզեալ լինէին. յորոց հատանելն՝ առագաստակալքն անկանէին ինքնին հարկաւ. և զի բնաւ յոյս գալլիական նաւաց՝ էր յառագաստսն և 'ի հան-

գերձանս կազմածոցն, 'ի հատանել սոցա՝ ումպէտ մնային ամենայն նաւք: Իսկ այլ ամենայն գուպարած 'ի քաջութիւն էր ապաստան՝ որով առաւել գտանէին զօրականքն մեր. մանաւանդ զի առաջի Կեսարու և զօրացն բոլորեցուն 'ի հանդիսի անցանէր գործն, և ոչ մի ինչ արարուած քաջութեան մարթէր թաքչել. զի ամենայն բլուրք և բարձունք՝ յորոց մօտուստ նշմարելի էր ծովն, ըմբռնեալ դրաւեալ էին 'ի սպայէն:

ԺԵ. Զընկեցեալ այդպէս զառագաստակալսն, իբրև մէն միոյ նաւի երկու կամ երեք միոյն առ երի մնային, մարտիկքն մեր ամենայն ուժով ջանային ելանել 'ի նաւս թըշնամեացն: Զոր տեսեալ խժիցն թէ ահա 'ի գործ գնեն, յետ 'ի պարտութիւն մատնելոյ բազմաց 'ի նաւացն, անպատապար և անօգնական զիրսն ծանուցեալ, փախստեամբ փութացան խնդրել զապրուստ անձանց: Եւ իբրև դարձուցին զնաւսն յընթացս հողմոյն, այնպիսի իմն հանդարտութիւն եղև և խաղաղութիւն յանկարծակի, զի ոչ կարէին խլրտել 'ի տեղւոջէն: Եւ այս՝ յոյժ 'ի դէպ եհաս 'ի վճարումն գործոյն. զի միում միում 'ի վերայ հասեալ մերքն՝ կալան զնոսա, մինչ զի յամենայն նաւատորմէ անտի սակաւք հասին 'ի ցամաք օգնականութեամբ գիշերոյն, իբրև 'ի չորրորդ ժամէ աւուրն մինչև 'ի մուտս արեգական պատերազմեալ:

ԺԶ. Սովին կռուով Վենետացւոց պատերազմ և համօրէն ծովեզերայց վճարեցաւ: Զի ամենայն արբունս մանկութեան և բոլոր բովանդակ ծանրացեալքն հասակաւ, յորս էր խորհրդականութիւն ինչ կամ պատիւ, անդ 'ի միասին ժողովեալ էին. ըստ նմին 'ի մի վայր գումարեալ կային և համախմբութեամբ նաւք առ հասարակ ուր և գտանէինն: Յորոց զամ մի կապուստ կողոպուստ միացեալ, չգոյր այլոց ոչ ուր ապաստան առնիցին, և ոչ որով զքաղաքսն պահեսցեն: Վասն որոյ զանձինս և զամենայն ինչ զիւրեանց ետուն 'ի ձեռս Կեսարու. յորոց և Կեսար մեծամեծ վրէժս արժան դատեցաւ պահանջել, զի յայնմհետէ և յառաջ՝ զգուշա-

գոյն պա՛հեսցեն խուժդուժք զիրաւունս տեղակալացն։ Ուստի զաւագանին ողջոյն 'ի մահ մատնեալ, զայլս ընդ պսակաւ վաճառեաց [1]։

ԺԷ. Մինչդեռ այս ամենայն 'ի Վենետան գործէին, Կ. Տիտուրիոս Սաբինացի՝ զօրօքն զոր առեալն էր 'ի Կեսարէ, երթեալ հասանէ յերկիր Ունելլաց։ Սոցա իշխան էր Վիրիդովիքս, և 'ի ձեռին ունէր բովանդակ զտէրութիւն ամենայն քաղաքացն նշկահելոց, յորոց բանակ բոլորեալ և զօրութիւն սաստիկ կուտեալ էր։ Եւ 'ի սակաւ աւուրս այսոսիկ՝ Աւլերկք, Եբուրովիկեանք և Լեքսովեանքն, սպանեալ զաւագանին իւրեանց, զի ոչ կամէին առաջնորդկալ 'ի գլուխ պատերազմին, զդրունսն առին, և միաբանեցին ընդ Վիրիդովիքսի, և մեծ ամբոխութիւն 'ի կուսոյ կուսոյ գալլիաստանեայց, որանց կորստականաց և աւազակաց խումբ առեալ ջոկիւս առեալ էին, զորս յոյս աւարառութեան և մրցական եռանդն պատերազմական ուծացուցեալ էր յերկրագործութենէ և 'ի հանապազորդ վաստակոց։ Սաբինացին զտեղ առեալ բանակեալ կայր 'ի տեղի ուրեք առ ամենայն ինչ քաջադէպ, իսկ Վիրիդովիքս յանդիման նորա նստեալ երկու մղոն 'ի բացեայ՝ զօր ամենայն հանեալ զգումարտակսն՝ համարձակութիւն տայր պատերազմի, մինչև ոչ Թշնամեաց միայն յարհամարհանս գնալ Սաբինացւոյն՝ այլ և մերոյ զօրականին ձայնիւք պարսաւ լինել. և այնչափ երկեղուկս արկ 'ի կարծիս, մինչև խրախուսել Թշնամեաց գալ մատչել 'ի պատնէշ ճամբարին։ Զայս յայն սակս արարեալ, զի ընդ այնչափ ամբոխի Թշնամեաց՝ տեղակալի ումեք մարտնչել ոչ արժան համարէր, մանաւանդ առանց մեծի սպարապետին առընթեր լինելոյ, բայց եթէ միայն 'ի դիւրի կամ 'ի պատեհ ինչ ժամու։

---

1 Զի զգերիս պատերազմի՝ ծաղկապսակս վաճառէին, կամ եւ հաւանականն՝ զի զինուորք շուրջ բոլորեալ կային զնոքօք 'ի պահ՝ 'ի ժամ վաճառմանն։

ԺԸ. Ի հաստատուն լինել այսր կարծեաց երկիւղի, ընտրեաց այր մի աջողակ և խորամանկ գաղղիացի՝ յորոց ընդ իւրն ունէր 'ի սատարութիւն: Զսա բազում պարգևօք և խոստմամբք 'ի քանի առնէ, և լանել զնա առ թշնամիս. և զկամս սրտին ուսուցանէ նմա: Որոյ հասեալ առ նոսա իբրև փախստական, պատմէ զերկիւղն հռովմայեցւոց, յոր նեղ և ինքն Կեսար մնեալ իցէ յերեսաց Վենետաց, և զի փոքր միւս ևս՝ հանեալ Սաբինացւոյն զզօրսն 'ի ճամբարէ անտի յառաջիկայ գիշերին՝ գալոց առ Կեսար 'ի թիկունս երթալոց: Զոր լուեալ՝ աղաղակ բառնան առ հասարակ. զայն ժամանակ յաջողութեան գործոյն մի՛ կորուսանել. կոխել զբանակին: Բազում ինչ առ այս հրապուրեր զգաղղիացիսն. դանդաղանք Սաբինացւոյն յաւուրսն առաջինս, փախստէին խոստովանութիւն, չքաւորութիւն պարենի՝ որում չէր ըստ արժանն բաւականին հոգ տարեալ 'ի նոցանէ, յոյս Վենետեան պատերազմին, և զի դիւրեթէ մտադիւրք առանց ընդ բանս ինչ ածելոյ հաւատան մարդիկ որում ցանկանն:

ԺԹ. Ցայսցանէ յորդորեալ՝ ոչ թողուն զՎիրիդովիքս և զայլ զլխաւորսն ելանել յատենէ անտի, եթէ չըտայցեն հրաման զէն առնուլ և 'ի բանակն դիմել: Ընկալեալ զհայցուածսն, ուրախացեալ իբրև 'ի ստոյգ յաղթութիւն, հաւաքեալ խրձունս խրձունս աղուեաց և թփոց՝ 'ի լնուլ զփոսս հռովմայեցւոց, ընթանան 'ի բանակս բանակացն: Էր տեղի մի 'ի բանակին սարահարթ և փոքր մի 'ի ստորոտն զառ 'ի կողեալ, իբրև հազար քայլ. այսր հեղան զեղան արշաւասոյր, չտալ պարապ հռովմայեցւոց անձին զգալոյ և 'ի զէն վառելոյ, և հասին շնչասպառք: Զայն տուեալ Սաբինացւոյն քաջալերեալ զիւրսն, ետ նշան առ խիզախելոյն: Ի վերայ ծանրաբեռն տագնապելոց թշնամեաց՝ յորոց բարձեալ բերէին՝ հրաման տայ անգէն և անդ արտաքս վազել ընդ երկոսին դրունս: Առ վայրացն պատեհի, թշնամեացն անհմտութեան և խոնջութեան, քաջութեան զօրականին և առաջին մարտից հրահանգաց, այնպէս

յաջողեաց՝ զի և ոչ միում յարձակման մերոյն զդէմ ունել կարացին, և դարձուցին անդէն զԹիկունս։ Պարտասելոցն զհետ պնդեալ զօրականն մեր ժիր և սԹափ բոլորովն ուժով, կոտորեցին ամբոխ մեծ 'ի նոցանէ. Մնացելոցն հետամուտ եղեալ այրուձին, սակաւս Թողին փախստեամբ ապրեալս։ Այսպէս 'ի միում ժամանակի Սաբինացին զլուր նուաճման մարտին ընկալաւ, և Կեսար զյաղԹուԹեան Սաբինացւոյն. և ամենայն քաղաքանիքն հետ ընդ հետ անձնատուր եղեն Տիտուրիոսի։ Զի որպէս 'ի պատերազմ ձեռներէց լինել դիւրամէտ և յօժարամիտ են ազինք Գաղղիացւոց, նոյնպէս Թոյլ և անժուժկալ տառապանաց՝ միտք նոցա։

Ի. Գիրեթէ զայնու ժամանակաւ Պ. Կրասսոս հասեալ յԱկուիտանիա, որ որպէս ասացաւ, երրորդ մասն է գրկելի Գաղղիոյ՝ ընդարձակուԹեամբ գաւառացն և մարդաշատուԹեամբն, իբրև 'ի վերայ կայր Թէ յայն տեղիս հասանէ՝ նմա պատերազմ տալ, ուր սակաւ ամօք յառաջ Լ. Վալերիոս Պրեկոնինոս տեղակալն պարտուԹեամբ զօրուն սպանեալ էր, և ուստի փոխանակ բդեշխին Լ. Մանիլիոս կորուսեալ զաղխ բանակին և փախուցեալ էր, խելամուտ լինէր զի ոչ դոյզն ինչ փոյԹ պնդուԹեան պիտոյ էր նմա։ Վասն որոյ զպաշար պարէնին յառաջագոյն հոգացեալ, Թիկունս և այրուձի հայԹայԹեալ, և բազում արս կորովիս 'ի Տոլոսայ, 'ի Կարկասոնէ և 'ի Նարբոնէ, որ են քաղաքք Գաղղիոյ՝ նահանգին մերում մօտաւորք, 'ի գաւառացս այսոցիկ յականէ յանուանէ հրաւիրեալ, առ սարաւ զզօրն յերկիրն Սոտիատեանց։ Իմացեալ Սոտիատեանց զգալուստ նորա, կուտեալ զօր ծանր, և այրուձի՝ որով հզօրք էին, անկեալք յուղւոյ 'ի վերայ մերոյ սպային, նախ հեծելագունդ եռուն պատերազմ. ապա 'ի վանել վկանդելառնու-ձիոյն իւրեանց և 'ի հալածել զնոսա մերոցն, իսկ և իսկ յերևան հանեին զհետևակազօրն՝ զոր 'ի հովտին էին Թաքուցեալ 'ի դարանի, որոց յարձակեալ 'ի մերսն վարատեալս՝ վերստին նորոգեցին զպատերազմն։

ԻԱ. Ցերկարեաց մաքառումն և ուժգին. զի Սոտիա-

տեանց յառաջին կռուան յուսացեալ, զփրկութիւն համօրէն Ակուիտանիոյ 'ի բազում քաջութեան իւրեանց կարծէին ապաստան, և մերքն ցանկային յայտ առնել՝ զինչ կարող իցեն կատարել առանց մեծի սպարապետին և այլոց գնդաց՝ զօրավարաւ ոմամբ պատանեկաւ: Հուսկ ուրեմն մերձակից եղեալ Թշնամեացն՝ Թիկունս դարձուցին. յորոց զբազումս սատակեալ՝ ձեռն արկ Կրասսոս զճանապարհայն մարտ գնել ընդ քաղաքին Սոտիատեանց. յորոց ընդդիմանալն արիաբար՝ զողորահիւս պահանգակալ պատնէշն մատուցեալ 'ի գործ արկ: Նոքա՝ մերթ սաստկութեամբ 'ի դուրս արշաւել ջանացեալ, և մերթ ականս հատանել առ հողաբլուր Թումբսն և առ պատնէշսն, որում հմուտ են Ակուիտանացիք, — զի առ նոսա բազում ուրեք պղնձահանքաց գետնափորք են, — իբրև 'ի մերոցն պատրաստութենէ 'ի միտ առին ոչինչ դամադիտ լինել սոքօք, հրեշտակս առաքեն առ Կրասսոս, և խնդրեն ընդունել զնոսա 'ի նուաճութիւն: Լսելի եղեալ, հրամայէին աւանդել զզէնսն, և առնեն:

ԻԲ. Մինչդեռ մերքն առ հասարակ այնմ իրաց ուշ առնէին, յայլմէ կուսէ քաղաքին Ադկանտուան ոմն՝ իշխանապետ նոցին, արամբք վեցհարիւրովք ինքնանձնուէր ախոյենօք՝ զորս նոքա Սոլդուրս անուանեն, — որոց այս է կենաց պայման, զի ամենայն բարեաց 'ի կեանս հաղորդ իցեն ընդ այնա՝ որոց մտերմութեան նուիրեցին զանձինս. եթէ ինչ 'ի բռնութենէ պատահեսցէ նոցա, կամ զնոյն վտանգ ընդ նոսին կրել, կամ երթալ զիւրովին. և չև է գտեալ ոք յուշ յիշատակի մարդկան՝ որ 'ի մեռանել նուէրընկալ բարեկամին՝ չիցէ զմահ յանձն առեալ, — սոքօք հանդերձ զրոհ տուեալ Ադկանտուան արտաքս յարձակել, աղաղակ յայնմ կողմանէ պարսպին ելեալ, զօրականն մեր ընթանայ 'ի զէն, և լինի անդ հզօր կռիւ, և հալածի նա 'ի քաղաքն. բայց շնորհէ Կրասսոս նմա զխնդիրն՝ 'ի նոյն պայմանս հպատակութեան վայելել:

ԻԳ. Զզէնսն և զպատանդսն առեալ Կրասսոս, ել գնաց անտի յերկիրն Վոկատից և Տարուսատաց: Յայնժամ

խռովեալ խուժայնոցն, զի զքաղաքն 'ի բնէ և ձեռագործ ամրացեալ՝ 'ի սակաւ ինչ աւուրս գալստեան նոցա՝ համարեցան ըմբռնեալ, դեսպան արարին այնր անդր յամենայն կողմանս, յուսով մտանել միաբանութեան, տալ միմեանց պատանդս, զօրաժողով լինել: Առաքին դեսպանս և 'ի քաղաքսն որ յայսկոյս 'ի Սպանիա՝ դրացիք Ակուիտանիոյ. հրաւիրէին անդուստ սատարս և զօրագլուխս: Ի գալ հասանել նոցա՝ մեծաւ իշխանութեամբ և ահագին ամբոխիւ խրախուսեն տալ պատերազմ: Զօրագլուխս ընտրէին՝ որք 'ի միասին եղեալ էին զամենայն ամս ընդ Կ. Սերտորիոսի, և համարէին 'ի ծայր հասեալ զինուորական արուեստին: Սոքա ըստ օրինաց հռովմէական ժողովրդեան ուշ 'ի կուրծըս առնեն աճապարել ըմբռնել զտեղիս, ղակիչ գործել, և հատանել զմերան 'ի համբարոց: Զոր իբրև ետես Կրասսոս, զի զզօրսն չէր դիւրին հանել արտաքս առ նիազութեանն, թափառէր թշնամին և պաշարեալ էր զճանապարհսն՝ թողեալ 'ի ճամբարին բաւական պահապանս, նմին իրի և դժուարին էր ածել առ ինքն ցորեան և համբար 'ի պարէն, և զի օր ըստ օրէ բազմանայր թիւ թշնամեաց, ոչ 'ի դէպ վարկաւ դանդաղել 'ի մարտ: Զայս խորհուրդ յատեան հանեալ, իբրև զամենեսեան հաւան ետես 'ի նոյն միտս, այգուցն ճակատ տալ սահմանեաց:

ԻԴ. Ընդ արշալուշսն հանեալ զամենայն զօրսն՝ 'ի կըրկին ճակատս զռազմն յօրինեալ, և զնիզակակիցսն արկեալ 'ի մէջ ճակատուն, դէտ ակնկալեալ մնայր տեսանել զոր խորհուրդ կալցին թշնամիք: Նոքա թէպէտ և 'ի բազմութենէ իւրեանց և 'ի հին պարծանաց պատերազմի և 'ի սակաւութենէ մերոցն ակն ունէին մղել զմարտն, սակայն յապահովագոյն զանձինս համարէին, եթէ պահ պաշարումն առեալ ճանապարհաց և 'ի համբարոց զմերսն կարճեալ՝ առանց վէրս ինչ առնլոյ զյաղթութիւնն կանգնեսցեն. իսկ եթէ առ կարօտութեան ռոճկաց խրախուսեսցեն հռովմայեցիք անձանց ուշ առնել խոյս տալ, խորհէին անկանել 'ի խուճապեալսն յամբոխեն և 'ի վհատեալսն ընդ

բեռամբք: Սովին մտօք հաճոյ թուեցելով զօրավարացն՝ յելանել զօրուն հռովմէացւոց արտաքս, նոքա 'ի ճամբարին մնային: Զայս Կրասոսի ածեալ զմտաւ, քանզի իւրով յապաղելովն և կարծեօք՝ զթշնամիսն երկչոտս էր յօրդորեալ և զմերսն յօժարամիտս 'ի կռիւ, և յամենեցունց լսելի լինէին ձայնք, զի ոչ 'ի դէպ վարկանէին այլ ևս դանդաղել չուել գունդ 'ի ճամբարն, սրտապնդեալ զիւրեանս, ըստ ամենեցուն փափաքելոյ՝ եւ խաղաց 'ի ճամբար անդր թշնամեաց:

ԻԵ. Անդ, իբրև կէսք լիր արկեալ զփոսսն հարթէին, այլք նետս ցնդելով՝ զպահապանսն 'ի պատնիշէն և 'ի մարտակոցացն վանէին, և օտարքն՝ յորոց ոչ մեծ ինչ ակն ունէր Կրասոս՝ քարինս և նետս մատակարարելով և մացառս յամբարտակն կրելով՝ տեսիլ իմն և կարծիս մարտուցելոց բերէին. և անդուստ դարձեալ թշնամիք անդուլ և անվեհեր մաքառէին, և նետք 'ի բարձր տեղւոջէ արձակեալք՝ ոչ անկանէին վայրապար, այրուձիոյն շրջան առեալ զճամբարաւ թշնամեացն՝ ազդ արարին Կրասոսի, զի ոչ նովին զգուշութեամբ ամրացեալ էր ճամբարն՝ 'ի յետին դրանէն կողմանէ, և էր դիւրամուտ:

ԻԶ. Կրասոսի քաջալերեալ զասպահապետս հեծելազին՝ մեծամեծ պարգևօք և խոստաբանութեամբ յորդորել իւրաքանչիւր զիւրսն, եցոյց նոցա զհրաման՝ կամաց իւրոց: Նոքա ըստ հրամանին հանեալ զերիս խումբսն, որք 'ի պահ բանակին թողեալք էին և սթափք յաշխատութենէ, և երկայն ճանապարհաւ շրջեցուցեալ զնոսա՝ առ 'ի չանկանելոյ յակն ճամբարին թշնամեաց, մինչդեռ ամենեցուն աչք եւ միտք 'ի մարտն էին զբաղեալք. հասին վաղվաղակի յաւերեալ մարտկոցսն, զորս տապալեալ, մինչչև ուրուք տեսեալ զնոսա կամ իրազեկ լեալ եղելոցն, մտին կացին 'ի ճամբար թշնամեացն: Յայնժամ լսելի լեալ աղաղակ յայնմ կուսէ, մերոցն խրախուսեալ զօրութեամբ, որպէս յաճախ պատահէ 'ի յոյս յաղթութեան՝ սկսան սաստկագոյն պատերազմել: Թշնամիք պաշարեալ յամե-

նուաստ, յամենայնէ յուսաբեկք, գուն գործեցին թափել զանձինս 'ի մարտակոցացն և փախստեամբ ապրել: Որոց ըղձեալ անդեալ այրուձին ընդ լայնածաւալ դաշտս, 'ի յիսուն հազարաց ամբոխէն՝ եկելոց ստոյգ գտանիւ յԱկուիտանիոյ և 'ի Կանտաբրացւոց՝ հազիւ թողին զչորերորդ մասն, և խոր նսեմաւ դարձան 'ի բանակն:

ԻԷ. Զայսր մարտի առեալ զլուր, մեծ կէս աշխարհին Ակուիտանացւոց անձնատուր եղեն Կրասսոսի, և մատդիւր առաքեցին պատանդս. ընդ որս էին և Տարբելք, Բիգերիոնք, Պրեկեանք, Վոկատք, Տարուսատք, Եղուսատք, Գարիտք, Աւսկեանք, Գարումնայք, Սիբուծատք և Կոկոսատք: Սակաւք ոմանք 'ի սինլքոր աւելորդ ազգաց՝ վըստահացեալք 'ի ժամանակ տարւոյն, զի ձմեռն 'ի վերայ կայր, անփոյթ եղեն զնոյն առնելոյ:

ԻԸ. Ի նմին գրեթէ ժամանակի, թէպէտ և անցեալ էր ամառն, այլ զի 'ի բովանդակ խաղաղացեալն Գալլիա Մորինք և Մենապեանք միայն զինեալք, և ոչ երբէք աղօթկեարս առ Կեսար էին առաքեալ զհաշտութենէ, նորա արագավախճան համարեալ զայն պատերազմ, անդր խաղացոյց զզօրն: Նոցա այլազգ ամենևին էր օրինակ պատերազմի քան զայլոց գալլիացւոցն: Զի տեսեալ թէ ազգք մեծամեծք պատերազմեալք, վանեալք և 'ի պարտութիւն էին մատնեալք, և զի մերձ կային իւրեանց անտառք և ճահիճք, անդր փոխեցին զինքեանս և զամենայն ինչ իւրեանց: Իբրև եհաս Կեսար 'ի մուտս անտառաց նոցա, և ղակիշ գործել կամէր, և ցայն վայր չերևէր թշնամին, 'ի ցրուեալ մերոյն 'ի գործ, իսկ և իսկ յամենայն կողմանց անտառին սլացեալ հասին յարձակեցան 'ի մերսն: Մերքն անդէն բուռն 'ի զէնսն հարեալ՝ վանեցին զնոսա 'ի մայրիսն. և զբազումս սպանեալ՝ և զհետ մտեալ մինչև 'ի դժուարին վայրս, կորուսին յիւրեանց սակաւս ինչ:

ԻԹ. Ապա այնուհետև 'ի մնացեալ աւուրսն ձեռն արկ Կեսար հատանել զմայրիսն, և զի մի յանկարծ յարձակումն ինչ առնիցի առ 'ի կողմանց 'ի վերայ անզէն և ան-

զգաստ զօրականէն, զհարեալ ստատաղձս զայն ամենայն զետեղեաց եդ ընդդէմ Թշնամւոյն, և արկեալ աստի անտի յերկոսին կողմանս կանգնեաց 'ի տեղի պատնիշի։ Անհնարին արագութեամբ ասպարէս մեծ հատեալ 'ի սակաւ աւուրս, մինչդեռ մերքս զխաշնն և զաղխ և զկարասին 'ի ձեռին ունէին սպասաւորս, և նոքա 'ի խորս Թաւուտ անտառացն ապաստան անկանէին, այնպիսի իմն մրրիկք 'ի վերայ հասին, մինչև հարկաւ դադարել 'ի գործոյն, և առ անդուլ անեղանաւորափ անձրևաց՝ անհնար լինել զօրականին կալ ընդ երկար 'ի ներքոյ վրանաց։ Վասն որոյ աւերեալ զամենայն ագարակս նոցա, և զգիւղս և զշէնս հրձիգ արարեալ, առ գնաց Կեսար զզօրն, և յԱւլերկս և 'ի Լեքսոբեանս և յայլ ևս քաղաքս՝ որոց սուղ ինչ յառաջ ընդ մեզ դառնացեալ էր, նստոյց զնոսա 'ի ձմերանոցս։

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ԳԱՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. Ուսիպետք և Տենկտերքն գերմանացիք՝ յահէ Սուեւաց նոր բնակարանս 'ի Գաղղիա խնդրեն. Դ. Եւ զՄենապեանս յերկրէ նոցա մերժեն. Զ. Ապա անտի առ Եբուրոնս և Կոնդրուսեանս գաղթեալք. ԺԲ–ԺԶ. Թէպէտ և յառաջնում հեծելազօր մարտի յաղթօղք, բայց ապա Կեսար յափշտակէ զբանակս նոցա. և մնացեալքն առ Սիկամբրս յայնկոյս Հռենոսի անկեալ ապաւինին. ԺԷ. Կեսար կամուրջ կապեալ, անցանէ ընդ Հռենոս, վրէժ խնդրէ 'ի Սիկամբրաց. ԺԹ. Ազատէ զՈւբեանս. ԻԱ. Անտի 'ի Գաղղիա դարձ արարեալ. 'ի Մորինաց անցանէ 'ի Բրիտանիա. ԻԴ. Եւ դըժուարաւ հանեալ զզօրսն 'ի ցամաք, ընդունի զբնակսն 'ի հպատակութիւն. Լ. Որոց տեսեալ զտորմին հռովմէական տանջեալ յալէկոծմանէ, և զայրուձին զի չէր անդ, խրախուսեալ ապստամբեն. ԼԵ. Բայց ապա վերստին նուաճեալք, տան պատանդս, և Կեսար դառնայ 'ի Գաղղիա:

---

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱԼԼԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



## ԳԻՐՔ Դ.

Ա. Յառաջիկայ ձմերայնին, յամի բդեշխութեան Կն. Պոմպէոսի և Մ. Կրասսոսի, Ուսիպետքն գերմանացիք և Տենկտերք, մեծաւ ամբոխիւ մարդկան անցանէին յայսկոյս Հռենոս գետոյ, ոչ յոյժ հեռի 'ի ծովէն յոր թափի Հռենոս։ Անցանելոյն այն էր պատճառ, զի ամս հարուստ մի վրդովեալք յերեսաց Սուեւաց՝ նեղէին պատերազմաւ, և խափան լինէր երկրագործութեանն։ Ազգ Սուեւաց մեծ է յոյժ, և քան զբնաւ գերմանացիս գոռ պատերազմող։ Աւանդի ունել նոցա մարզս հարիւր, յորոց ամի ամի հազար սպառազէն 'ի միջէ միջէ հանեն արտաքս 'ի սահմանաց իւրեանց 'ի պատերազմ. այլք 'ի տան մնան, և վասն իւրեանց և վասն նոցա մշակեն զերկիրն. սոքա դարձեալ փոխանակաւ 'ի լնուլ ամին զինուորին, և նոքա 'ի տան կան։ Որով ոչ հողագործութիւն և ոչ արուեստ և պատերազմափորձ հմտութիւն մարթի խափանի. այլ առանձին և սեփական զատուցեալ ինչ ոչ են նոցա անդք, և չէ օրէն քան զտարի մի առաւել կալ մնալ 'ի միում տեղւոջ 'ի բնակութիւն. և ոչ շատ ինչ ցորենով, այլ մանաւանդ կաթամբ և

խաշամբ կեան, և յաճախ յորսորդութիւն պարապեն. որ պարենիցն բնութեամբ և հանապազորդ կրթութեամբն և ազատութեամբ կենացն, — զի 'ի մանկութենէ ոչ 'ի գործ ինչ և ոչ յուսումն երբէք բերեալ պարապ՝ չառնեն ինչ ամենևին յակամայս, — և զույժն աճեցուցանէ, և անսարք յաղթանդամս և վիթխարիս գործէ։ Եւ յայն հասին սովորութեամբն, զի 'ի ցրտասառոյց անգամ վայրս ոչ ինչ այլ քան զմաշկեակս ունին ձորձս, — յորոց 'ի կարի խմն փոքրկութենէ՝ մերկ է մեծ մասն մարմնոյն, — և լոգանան 'ի գետս։

Բ. Վաճառականաց գոյ առ նոսա մուտ, առաւել 'ի վաճառել նոցա զկապուտս պատերազմացն, քան թէ առ 'ի տալ ինչ բերել առ ինքեանս 'ի ցանկալեաց։ Եւս և գրաստս՝ զորս յոյժ սիրէ Գաղղիա և մեծագնի ստանայ, գերմանացիքդ ոչ վարեն եկամուտս. այլ որ բուն անդրէնածինքն են յոռիք և տգեղք, զնոսա ժիրս և տոկունս օր ըստ օրէ կրթանօքն յարդարեն։ Ի հեծելազօր պատերազմունս վազեն սոքա 'ի ձիոցն և հետի կռուին, և զերիվարսն անդէն 'ի նմին տեղւոջ սպասել ուսուցանեն, յորս և երագս դառնան ելանեն 'ի պահանջել պիտոյիցն։ Եւ 'ի բարս նոցա չէք ինչ անարգ և վատ քան 'ի թամբս հեծանել. վասն որոյ թէպէտ և սակաւաւորք իցեն՝ իշխեն ընդ ամենայն ամբոխ թամբեալ առնաձիոյ 'ի կռիւ մատչել։ Գինի ամենեւին ոչ թողուն մուծանել առ նոսա, զի նովաւ համարին լուծանել մարդկան 'ի ժրութենէ և մեղկել։

Գ. Մեծ պարծանս համարին աշխարհին իւրեանց՝ անդուստ 'ի սահմանաց իւրեանց ցմեծ վայրս ամայի լինել երկրին, զի յայտ իմն այնպէս առնէ՝ թէ քաղաքք անգամ բազմաթիւք ոչ ունին հանդուրժել բռնութեան իւրեանց։ Ամին իրի 'ի միոյ կողմանէ 'ի Սուեւաց իբրև վեցհարիւր հազար քայլ թափուր անապատ պատմին անդաստանք նոցա. 'ի միւսմէ կողմանէ հպաւորք են Ուբեանք, որոց քաղաք էր ընդարձակ և ծաղկեալ՝ ըստ մտաց գերմանացւոցն, և դոյզն ինչ մարդասիրագոյն են քան զայլս որ 'ի

նմին ազգէ, վասն զի մերձ են 'ի Հռենոս, և յոլով վաճառականք երթևեկեն առ նոսա, և ինքեանք վասն մերձաւորութեանն ընդելեալք են ընդ բարս գաղղիացւոց: Ընդ սոսա 'ի բազում մարտս ջանացեալ Սուեւաց, իբրև չկարացին հալածել յերկրէն վասն մեծութեան և ուժգնութեան ազգին, արարին իւրեանց հարկատուս, և խոնարհեցուցին յոյժ և տկարացուցին:

Դ. Ի սմին սակի գտան վերոյգրեալքն Ուսիպեաք և Տենկտերք՝ ժուժկալեալք յամայր ամս Սուեւացն բռնութեան: Այլ հուսկ ուրեմն հալածեալք յերկրէն և 'ի բազում վայրս Գերմանիոյ երեամ թափառական շրջեալ, հասին 'ի Հռենոս, 'ի գաւառսն յորս բնակէին Մենապեանք, և յերկոսին եզերս գետոյն ունէին ագարակս, շէնս և գիւղս. բայց 'ի գալստենէ այնքանոյ ամբոխին զարհուրեալ, գաղթեցին 'ի շինաց անտի որ էր նոցա յայնկոյս գետոյն. և կարգեալ պարեկապանս· ոչ տային թոյլ գերմանացւոց անցանել յայսկոյս Հռենոսի: Նոքա զամենայն հնարս հնարաւորեալ՝ իբրև ոչ զօրէին ուժգին մաքառել առ չգոյ նաւակաց, և ոչ գաղտ անցանել 'ի Մենապեանցն պահպանութենէ, կեղծեօք պատճառեցան դարձ 'ի տեղիս և 'ի գաւառս իւրեանց առնել, և երեքօրեայ ճանապարհ անցեալ գնացեալ, կրկնեցան դարձան անդրէն. և զամենայն ուղին զայն ձիախաղաց հեծելութեամբ վճարեալ՝ յանգէտս և յանզգաստից յանկարծ եկին անկան 'ի վերայ Մենապեանց. որոց 'ի լրտեսացն ծանուցեալ զչուել գերմանացւոց՝ աներկիւղ համարձակ դարձ արարեալ էին վերստին 'ի գիւղս իւրեանց յայնկոյս Հռենոսի: Զսոսա սպանեալ, և կալեալ զնաւակս նոցա, մինչ չև զգաստ եղեալ որոց յայսկոյս Հռենոսի էին Մենապեանք, անցին ընդ գետն, և զամենայն դաստակերտս նոցա գրաւեալ՝ զմնացուած ձմերայնոյն 'ի մթերից նոցա կերակրեցան:

Ե. Այսմ ամենայնի տեղեկացեալ Կեսար, և 'ի տկարամտութենէ գաղղիացւոցն խիթացեալ, զի խօլ են և թե-

թև 'ի խորհուրդս իւրեանց, և յաճախ յեղափոխութեանց ցանկան, ոչ արժան համարեցաւ հաւատալ ինչ 'ի նոսա: Է և այս 'ի գաղղիացւոցն բարս, զի ակամայ ևս բռնադատեն զանցաւորս կալ մնալ, և որ ինչ իւրաքանչիւր լուեալ կամ ուսեալ իցէ՝ հարցանեն, և ամբոխն 'ի քաղաքս պաշար առեալ զթանգարգքն՝ ստիպեն պատմել յորոց գաւառաց գայցեն, և զինչ ինչ անդ տեսեալ իցեն: Ի համբաւուց սնոտի և 'ի զրուցաց շարժեալ՝ խորհուրդ առնուն զիրաց բարձրագունից. զորոց հարկ է ապա նոցա 'ի զղջումն գալ, զի անստոյգ համբաւուց հպատակեն, և բազումք ըստ կամի ախորժակաց նոցա կեղծաւորեալ սուտ պաճուճեն զպատասխանիսն:

Զ. Այսմ սովորութեան 'ի վերայ կացեալ Կեսար, զի մի ծանր ևս պատերազմի պատահեսցէ՝ փութացաւ վաղագոյն քան զոր սովորն էր աճապարել 'ի բանակն: Հասեալ անդր, զոր ինչ միանգամ կասկածեալն էր՝ ետես մըճարեալ, յոմանց 'ի քաղաքաց անտի հրեշտակութիւնք առաքեալք առ գերմանացիս, և հրաւիրեալ զնոսա՝ ելանել մեկնել 'ի Հռենոսէ. և զոր ինչ և խնդրեսցեն 'ի պատրաստի գտանել առ իւրեանս: Սովին ակնկալութեամբ խրախուսեալ գերմանացւոց, արձակ արձակ խաղային, և հասեալ կային 'ի սահմանս Եբուրոնից և Կոնդրուսաց, որ են ընդ հովանաւորութեամբ Տրեւիրացն: Կեսար կոչեալ զիշխանսն Գաղլիոյ, զոր ինչ գիտէրն՝ պատշաճ վարկաւ թաքուցանել. և ողոքեալ և պնդեալ զսիրտս նոցա, և հեծելագունդս հրաման տուեալ, հաստատեաց տալ մարտ պատերազմի ընդ գերմանացիսն:

Է. Արարեալ համբարս ցորենոյ, և ընտրեալ զայրուձին, յուղի անկաւ 'ի կողմանսն յորս լսէր թէ իցեն գերմանացիքն. յորոց մինչդեռ աւուրս ինչ սակաւս էր 'ի բացեայ, հասին հրեշտակք 'ի նոցանէ, որոց բանք եղեն այս. Գերմանացիք ոչ նախաձեռն լինին 'ի մարտ ընդ հռովմայեցիս, բայց և ոչ հրաժարեն 'ի զինուք ոգորելոյ՝ եթէ դըրգռեսցին. զի գերմանացւոց այս է օրէն 'ի նախնեաց անտի

կարգեալ, որ ոք 'ի վերայ իւրեանց պատերազմ յարուցանիցեն՝ նոցա 'ի դիմի հարկանել և ոչ յաղերս անկանել: Բայց զայս ասեն, թէ ակամայ եկեալ կան այսր՝ մերժեալք 'ի տանէ: Եթէ շնորհս 'ի նոցանէ խնդրիցեն հռովմայեցիք, կարող են լինել նոցա պիտանի բարեկամք. կամ տացեն նոցա անդաստանս, կամ ներեսցեն ունել զորս զինուք են առացեալ: Նոքա առաջի Սուեւաց միայն տեղի տան, ընդ որս և ոչ անմահ դիք կարող ինչ են գալ 'ի կշիռ. իսկ այլ ոք չիք ուրեք բնաւ ընդ տիեզերս, որում ոչ կարիցեն յաղթել:

Ը. Առ այսոսիկ Կեսար՝ որ ինչ թուեցաւն նմա, ետ պատասխանի. բայց վախճան խօսիցն այս եղև. թէ չիք հնար լինել իւր բարեկամութիւն ընդ նոսա, եթէ կացցեն մնասցեն 'ի Գալլիա. և ոչ ճշմարիտ ինչ է, թէ որք զերկիր իւրեանց չմարթացան պահել, նոքա՝ զօտարին գրաւեսցեն. և 'ի Գալլիա չիք գետին դատարկ՝ որ տացի առանց զրկանաց, մանաւանդ այնքանոյ բազմութեան. այլ հնար է՝ եթէ կամիցին՝ նստել նոցա յերկրին Ուբեանց, որոց հրեշտակք իցեն առ իւր և բողոք ունիցին զՍուեւացն անիրաւութեանց, և ձեռն օգնականութեան յիւրմէ խնդրիցեն. և զայս նոցա յՈւբեանց անտի ինքն ընկալցի:

Թ. Զայս առ իւրսն պատգամաւորել ասացին հրեշտակքն. և յետ խորհուրդ առնլոյ զկնի աւուր երրորդի դարձեալ գալ առ Կեսար. առ ժամս խնդրեցին՝ մի՛ ինչ աւելի մօտ առ ինքեանս խաղացուցանել զբանակ իւր: Եւ ոչ այսմ լսելի լինել ասաց Կեսար. զի գիտէր թէ ստուար ինչ մասն այրուձիոյ նոցա աւուրբք ինչ յառաջ առաքեալ էր առ Ամբիւարիտս յայնկոյս Մոսայ յաւարառութիւն և 'ի պաշար պարենի: Եւ նոքա այնմ այրուձիոյ սպասէին, և յայն սակս յապաղումն ընդ մէջ արկանել խորհէին:

Ժ. Մոսա բղխէ ելանէ 'ի Վոգեսու լեռնէ՝ որ յերկրին Լինգոնաց, և ընկալեալ զվտակ ինչ Հռենոսի՝ զանուանեալ Վալիս, գործէ կղզի զԲատաւացն, և ոչ հեռի ինչ 'ի նմանէ՝ ընդ ութսուն հազար քայլ 'ի մեծածովն անկանի: Իսկ

Հաւնոս ելանէ 'ի լեպոնտացւոց բնակչացն Ալպեանց, և երկայն տապարխօք ընդ սահմանս նանտուատեանց, հելուետացւոց, սեկուանացւոց, Մետիոմատրիկաց, Տրիբոկաց, Տրեւիրաց սրընթացիւք անցեալ՝ իբրև մերձենայ յաշխարհածովն, 'ի բազում առաջս բաժանի՝ կղզիս գործեալ մեծամեծս, յորոց 'ի մեծ մասն գազանք և խուժադուժ ազինք բնակեն, յորոց են որ ձկամբք և կթովք հաւուց ապրել կարծին, և ընդ բազում բերանս 'ի համատարածն թափի:

ԺԱ. Մինչդեռ Կեսար չէր ինչ 'ի բացեայ 'ի թշնամւոյն քան զերկոտասան հազար քայլ, ըստ պայմանելոյն դարձ առ նա առնեն հրեշտակքն, և յուղւոյ միաբանեալ՝ ուժգին աղաչէին զնա մի այլ ևս յառաջ խաղալ: Զընկալեալ զխնդիրն՝ հայցէին առաքել յառաջոյ ամբոխին իւրոյ հեծեալս առ նոսա, բայց արգելուլ նոցա չպատերազմել, և տալ ինքեանց օձան առաքելոյ դեսպանս առ ուբեանս, որոց եթէ իշխանք և աւագանին երդմամբ ուխտեսցեն առ ինքեանս հաւատարմութիւն ըստ պայմանի եդելոյ 'ի Կեսարէ, խոստանային առնել ըստ այնմ. և 'ի կատարումն այսր ամենայնի՝ ժամ տալ նոցա աւուրս երիս: Զամենայն զայս համարէր Կեսար 'ի նոյն միտս հայել, զի երեքօրեայ յապաղանօք այրուձին նոցա բացական դարձցի առ նոսա. բայց ասաց թէ այն օր երթալոց իցէ զջրոյ ոչ աւելի ինչ քան զչորեք հազար քայլ. անդր այգուցն գումարեսցին բազմամբոխք, զի 'ի միտ առցէ զհայցուածս նոցա: Առ ամենայն ասպահապետսն որ ընդ հեծելազօրն յառաջագոյն խաղացեալ էին արձակեաց արս՝ պատուէր տալ նոցա, մի գրգռել զթշնամիսն 'ի մարտ. իսկ ինքեանք եթէ գրգռեսցին, զդէմ կալցին ժուժկալեալք մինչև ինքն իսկ սպայիւն մօտ հասանիցէ:

ԺԲ. Բայց թշնամեաց ընդ տեսանելն զհեծեալսն մեր՝ որք էին թուով հինգ հազար, իսկ նոցա ոչ աւելի ինչ քան զութ հարիւր էր այրուձին, զի երթեալքն զցորենոյ յայնկոյս Մոսայ չև էին դարձեալ, և մերքն ոչ ինչ զանգիտէին,

զի հրեշտակք նոցա սուղ ինչ յառաջ մեկնեալ էին 'ի Կեսարէ, և այն օր դուլ էր զինուց 'ի նոցանէ խնդրեալ, յանկարծակի յեղակարծում ժամու գաղթ տուեալ 'ի մերայն' խռովեցուցին զնոսա. և դարձեալ 'ի զդէմ ունել մերոցն' ստուցեալք 'ի հետիոտս ըստ իւրեանց սովորութեան, և զձիս 'ի ներքուստ խոցեալ և զբազումս ընկեցեալ յերկիր, զայլսն 'ի փախուստ դարձուցին. և այնպէս ահիւ խուճապեցին զնոսա, մինչև հազիւ դէմ յանդիման սպայակոյտ զօրուն մերոյ հասեալ' ապա զկայ առնուլ 'ի սուրհալոյն: Յայնմ մարտի վիրաւորք անկան 'ի մերոցս եօթանասուն և չորք. ընդ նոսա այրն քաջ Պիսոն ակուիտանացի' ճոխ յազգէ, որոյ հաւն յիւրում քաղաքին արքայութիւն ժառանգեալ էր, և 'ի մերմէ աւագանւոյ բարեկամ անուանեալ: Որ եղբօր իւրում պաշարելոյ 'ի թշնամեաց յօգնութիւն ժամանեալ' զնա 'ի վտանգէն ազատեցոյց, ինքն ընկեցեալ 'ի վիրաւոր երիվարէն' եկաց կռուեցաւ ըստ կարի արիաբար: Իբրև շուրջ փակեալ և վէրս բազումս առեալ անկանէր, և եղբայրն ելեալ 'ի մարտէն զայն տեսանէր 'ի բացուստ, ձի ածեալ մատոյց զանձն առաջի թշնամեացն և սպանաւ:

ԺԳ. Յետ կռուոյս այսորիկ' Կեսար ոչ ևս հրեշտակացըն ունկն մատուցանել արժան համարէր, և ոչ զպայմանսն ընդունել յայնցանէ' որոց նենգաւ և դաւով զհաշտութիւն խնդրեալ 'ի նմանէ' ինքնակամ 'ի վէգ եկին. իսկ մնալ աճելոյ բազմութեան թշնամեաց և դարձի այրուձիոյն' ծագ անմտութեան վարկանէր. և ծանուցեալ զխօլութիւն գաղղիացւոց, իմանայր թէ թշնամիք քանիցս մեծարանս առ նոսա գտանիցեն միով և եթ պատերազմաւ, որոց ոչ 'ի դէպ համարէր տալ պարապ խորհուրդ առնլոյ: Զայսոսիկ արկեալ նորա 'ի միտ, և զկամս սրտին մերկացեալ ետեղակալացն և գանձապետին, զի մի ինչ անցցէ զիւրև օր մարտի, դէպ եղև բարեպատեհ, զի 'ի վաղիւ անդր այգուցն նովին նենգութեամբ և խաբանօք' գերմանացիքն բազմամբոխ հանդերձ ամենայն իշխանօքն և ծերովք եկին առ նա 'ի բա-

նակսն, 'ի չքմեղս լինել անձանց, որպէս համբաւէքն, 'ի կռուոյ երիկին զոր արարին ընդդէմ հրամանին և մաղթանաց իսկ իւրեանց, և միանգամայն զի թէ հնար ինչ իցէ՝ դուլ զինուց ընկալցին պատրանօք: Ընդ որոց գալուստն խնդացեալ Կեսարու՝ հրամայեաց 'ի պահ ունել զնոսա առ իւր. ինքն զզօրսն զամենայն հանեալ 'ի Ճամբարէն, զայրուձին՝ զոր յառաջի կռուոյն գեռ ևս ահաբեկ համարէր, հրամայեաց զկնի գնալ սպային:

ԺԴ. Երեքկին զճակատն յօրինեալ, և զութ միլն ճանապարհն փութապէս հատեալ անցեալ՝ եհաս 'ի բանակս թշնամեացն մինչև ինչ զգաստ եղեալ գերմանացւոցն թէ զինչ գործիցի: Որոց յայսմ ամենայնէ յանկարծ զարհուրեալ՝ յերագութենէ եկիցն մերոց և յանհետ լինելոյ արանց իւրեանց, և առանց ինչ պարապ տալոյ նոցա 'ի խորհուրդ կամ 'ի զէն առնուլ, շփոթեալ խռովին, թէ զինչ լաւ իցէ, զամբոխն հանել ընդդէմ թշնամւոյն, թէ զբանակսն պահպանել, թէ փախստեամբ զանձինս ապրեցուցանել: Որոց երկիւղն քանզի փանդալովն և խուճապմամբն գայր յերևան, զօրականն մեր 'ի խարդախութենէ առաջնոյ աւուրն զայրացեալ՝ հասին թափեցան 'ի բանակսն. յայնմ վայրի որ կարաց ոք շտապաւ զէն առնուլ՝ փոքր մի զդէմ կալան մերոցն, 'ի միջի անդ սայլիցն և կահիցն կարասեաց զպատերազմն մղեցին: Իսկ միւս բազմութիւնն՝ մանկանց և կանանց, — քանզի ամենեքումբք հանդերձ ելեալ էին 'ի տանէ և անցեալ ընդ Հռենոս, — այսր անդ փախչել սկսաւ. Կեսար զհեծելազօրն արձակեաց զհետ հալածել զնոսա:

ԺԵ. Գերմանացւոց լուեալ 'ի թիկանց կուսէ զաղաղակն և զատտակուածն տեսեալ զիւրայոցն, ընկեցեալ զզէնսն և զդրօշս, վաղեցին 'ի դուրս 'ի Ճամբարէն. և իբրև հասին 'ի խառնուրդս Մոսայ և Հռենոսի, անյոյս եղեալ այլազգ Ճողոպրելոյ, և բազում ամբոխին կոտորեալ, մնացեալքն դարավէժ արկին զանձինս 'ի գետն, և անդ յահէն՝ 'ի խոնջութենէն և 'ի գետոյն բռնութենէ նկուն եղեալ կորեան:

Մերքն ամենեքեան առ հասարակ ողջանդամք, դոյզն ինչ վիրաւորօք, յարհաւրաց այնքանոյ մարտի, զի թշնամեացն թիւ էր արանց չորեքհարիւր և երեսուն հազարաց, եկին ժողովեցան 'ի բանակն: Կեսար զորս 'ի բանակի անդ 'ի պահ ունէր՝ հրաման ետ նոցա 'ի բաց գնալ. բայց նոքա զանդիտեալ 'ի պատուհասէ և 'ի տանջանացն գաղղիացւոց, զորոց անդաստանս աւար հարեալ էին, կամեցան մնալ առ նմա. և Կեսար ետ նոցա առ այն ազատութիւն:

ԺԶ. Զգերմանական պատերազմն հանեալ 'ի գլուխ՝ դէմ եդ Կեսար անցանել ընդ Հռենոս յայլ և այլ պատճառս, յորս արդար և իրաւ քան զամենայն այն էր, զի տեսեալ թէ գերմանացիք այնչափ դիւրաւ յորդորէին գալ անցանել 'ի Գաղղիա, կամեցաւ զի և նոքին լիցին երկնչել զիրաց իւրեանց, 'ի միտ առեալ թէ զօրք հռովմէական ժողովրդեան կարեն և համարձակեն անցանել զՀռենոս: Յաւելաւ ևս, զի մասն այն առնուձիոյ Ուսիպետաց և Տենկտերաց՝ զոր 'ի վեր անդր յիշատակեցաք անցեալ ընդ Մօսա յաւար և զցորենոյ, և չգտեալ 'ի պատերազմին, յետ փախստի իւրայոցն անցեալ էր յայնկոյս Հռենոսի յերկիր Սիկամբրաց ապաւինեալ և ընդ նոսա միաբանեալ: Առ որս իբրև առաքեաց Կեսար դեսպանս, պահանջել զի որք ինքեան և Գաղղիոյ 'ի կռիւ կացեալ էին, զնոսա 'ի ձեռս իւր տացեն, պատասխանի ետուն, թէ տէրութեան ժողովրդեանն Հռովմայ սահման հատանէ Հռենոս. եթէ գերմանացւոց յակամայս իւր 'ի Գաղղիա անցանել ոչ արդար համարիցի, ընդէր իւր տէրութիւն ինչ կամ իշխանութիւն անդր քան զՀռենոս խնդրիցէ: Իսկ Ուբեանք, որ միայն 'ի յայնկոյս հռենոսեանց արարեալ էին հրեշտակս առ Կեսար, բարեկամութիւն հաստատեալ և տուեալ պատանդըս, աղաչէին մեծապէս ձեռն տալ ինքեանց նեղելոցն 'ի Սուեւաց: Իսկ եթէ առ այս անպարապեսցի 'ի գործոց ընկերհաշտութեանն, զզօրսն գէթ անցուսցէ ընդ Հռենոս. այս շատ լինիցի ինքեանց յօգնականութիւն և 'ի յոյս յապա ժամանակի. այնչափ է առ նոսա անուն և համբաւ

հռովմէական սպային, յետ վանելոյ Արիովիստի և այսր յետոյն պատերազմիս, զի և մինչ 'ի վերջին ազգս գերմանացւոց՝ համբաւով և բարեկամութեամբ հռովմէական ժողովրդեանն մարթել նոցա կալ յապահովս. և խոստանայրին բազմութիւն յոյժ նաւաց յանցուցանել զզօրն:

ԺԷ. Կեսարու յայս ամենայն յիշատակեալ աղագս սահմանեալ էր անցանել ընդ Հռենոս. բայց նաւուք անցանել՝ ոչ յոյժ անկասկած համարէր, և ոչ իւրում և հռովմէական ժողովրդեանն պարծանաց արժանի: Վասն որոյ թէպէտ և անհնարին դժուարութիւն առաջի կայր կամուրջ արկանելոյ, վասն լայնութեան՝ սրընթացութեան և խորութեան գետոյն, բայց իւր 'ի դէպ վարկանէր զուն գործել յայն, կամ թէ ոչ՝ բնաւ իսկ չանցուցանել զզօրն յայնկոյս: Արդ զգործ կամրջին կարգեաց օրինակ զայս. երկուս գերանս՝ ոտն և կէս թանձրութեամբ չորեքկուսիս, փոքր մի 'ի ստորէ ծայրատաշս, ըստ չափոյ խորութեան գետոյն, կրկին ոտնաչափ 'ի միմեանց անջրպետեալս՝ յօդէր ընդ իրեարս: Զսոսա գործիական հնարաւորութեամբ իջուցեալ 'ի գետն՝ մխէր և թակամբ հարստէր 'ի գետոյն, ոչ կանգուն ուղղաբերձս իբրև զցից, այլ առ 'ի շեղ և հակեալ զկնի ջուրցն գնացից 'ի խոնարհ: Հանդէպ սոցա 'ի վայր կոյս գետոյն երկուս ևս այլս նոյնպէս զօդեալս, քառասուն ոտնաչափովք հեռի յառաջնոցն, ընդդէմ ուժգնութեան և բռնութեան հոսանաց գետոյն վարսեալ կացուցանէր: Ի վերայ չորեցունց սոցա՝ արկեալ գերանս երկոտնաչափս թանձրութեամբ ըստ անջրպետութեան նոցին գերանաց կողմանէ 'ի կողմ, կրկին խոյօղովք յերկոցունց ծայրիցն հաստատէր: Զորեցունց սոցա գերանացս հարըստեալ առանձինն և 'ի հակառակ կուսէ ևս պահանգակապ պնդեալ, այնչափ ամրութիւն տայրին գործոյն, և այնպիսի իմն էր ախտարակք բնութեանն, զի որչափ և մեծ սաստկութիւն յորձանաց յառնիցէ, այնչափ ևս ամրապինդ կաշկանդեալ միայցեն հաստաբեստ: Զկողմնակի հարթարգական ծածկէին խրձամբք հիւսեալ, ածեալ 'ի վերայ պըր-

*շանս և վանդակս 'ի դիւրութիւն գնալոյ ոտից։ Հանդերձ այսու ամենայնիւ՝ և 'ի ստորին կողմն գետոյն հարկանէին ցիցս առ 'ի շեղ, որք փոխանակ որմոյ հաստատարան եղեալ և իբրև մոյթս յեցեալ 'ի գերանսն, և ընդ բովանդակ գործն միացեալ՝ զդէմ կալցին հոսանացն բռնութեան. և այլս դարձեալ՝ ոչ կարի հեռի 'ի կամրջէն 'ի վերուստ կողմանէ գետոյն հարկանէին, զի եթէ կոճեղս ծառոց կամ նաւակս ընդ ջուր 'ի վայր արձակեսցեն խուժդուժքն առ 'ի քանդել զգործն, նպաստաւորութեամբ սոցին բեկցի զօրութիւն նոցա, և մի՛ վնասեսցեն կամրջին։*

ԺԸ. *Յաւուրս տասն յորմէ հետէ սկիզբն եղև կրելոյ զատաղձն, բովանդակեալ զգործն ամենայն, անցուցանէ Կեսար զզօրն, և յերկոսին գլուխս կամրջին թողեալ պահապանս պինդս, դիմէ յերկիրն Սիկամբրաց։ Յայնմ ժամանակի 'ի քաղաքաց քաղաքաց գան առ նա հրեշտակք, որոց 'ի խնդրելն հաշտութիւն և բարեկամութիւն՝ ազատօրէն առնէ պատասխանի, և հրամայէ մատուցանել նմա պատանդս։ Սիկամբրեանք յորմէ հետէ սկիզբն լեալ էր կառուցանելոյ կամրջին, միաբանեալ 'ի փախուստ, խրատեալք 'ի Տենկտերաց և յՈւսիպետաց զորս առ իւրեանս ունէին, ելեալ գնացեալ էին 'ի սահմանաց իւրեանց, զամենայն ինչ զիւրեանց տարեալ, և զանձինս իւրեանց յանապատս և յանտառս զողեցուցեալ։*

ԺԹ. *Աւուրս ոչ բազումս յամեալ Կեսարու յերկիր նոցա, զամենայն գիւղս և զշէնս հրձիգ արարեալ, և զցորեանն խուզեալ հուպ առ արմատ՝ անց գնաց 'ի սահմանս Ուբեանց, և սոցա զօգնականութիւն իւր խոստացեալ՝ եթէ երբեք նեղութիւն հասանիցէ նոցա 'ի Սուեւաց, զայսոսիկ ուսաւ 'ի նոցանէ. զի Սուեւաց հաւաստեալ 'ի լրտեսացն զկապել կամրջին, ըստ սովորութեան իւրեանց խորհուրդ արարեալ՝ դեսպան արարեալ էին ընդ ամենայն կողմանս՝ ելանել գնալ 'ի քաղաքաց իւրեանց, զորդիս՝ ըզկանայս և զամենայն զաղխ իւրեանց յամրի դնել յանտառս, և ամենայն զինաշարժից 'ի միոջ վայրի գալ ժողո-*

վէլ, զոր ընտրեալ էին գրեթէ 'ի միջին տեղւոջ գաւառացն եղելոց 'ի ձեռին Սուեւաց, և անդ սպասել գալստեան հռովմայեցւոց, և անդ եդեալ էին 'ի մտի տալ պատերազմ: Զոր իբրև տեղեկացաւ Կեսար, կատարեալ զամենայն յոր սակս երեսս հաստատեալ էր անցուցանել զզօրսն, առ ահ ար-կանել գերմանացւոց, վրէժ խնդրել 'ի Սիկամբրաց, զՈւ-բեանս ազատել 'ի պաշարմանէն, աւուրս ընդ ամենայն ութուտասանս հանեալ յայնկոյս Հռենոսի, շատ համա-րեալ զեղեալսն 'ի գովեստ և 'ի շահ, դարձաւ եկն 'ի Գալ-լիա, և քակեաց զկամուրջն:

Ի. Ի սակաւ ինչ մնացեալ մասն ամարայնոյն, թէպէտ և 'ի կողմանսն յայնոսիկ կանխէ ձմեռն, — զի Գալլիա համ-օրէն 'ի Սայլն կոյս ունի զհայեցուածն, — սակայն Կեսար չու արար խաղաց գնալ 'ի Բրիտանիա. զի գրեա եթէ յա-մենայն գալլիական պատերազմունս իմանայր անդուստ մատակարարեալ թշնամեաց մերոց օգնութիւն. բայց թէ-պէտ և դէպ ժամանակ տարւոյն կարճեալ էր 'ի պատե-րազմ, սակայն օգուտ մեծ անձին վարկանէր, եթէ միայն 'ի կղզին անդր ժաման լինիցի, տեսանել զազգ մարդկանն, զվայրսն 'ի միտ առնուլ, զնաւահանգիստսն և զմուտսն. որք գրեթէ բնաւ անծանօթ էին գալլիացւոց: Զի բաց 'ի վա-ճառականաց ոչ ոք յանդգնի գնալ առ նոսա. և ոչ նոցին իսկ այլ ինչ ծանօթ է բաց 'ի ծովափնեայ սահմանացն որ հանդէպ Գալլիոյ: Վասն որոյ կոչեցեալ առ ինքն յամե-նուստ զվաճառականսն՝ ոչ կարէր կալ 'ի վերայ՝ ոչ մեծու-թեան կղզւոյն, ոչ թէ ո՛յք ոմանք և քանի՛ք իցեն 'ի նմա բնակեալ ազգք, զի՛նչ նոցա հմտութիւն պատերազմի, կամ ո՛ր օրէնք վարուց, և ոչ թէ ո՛յք իցեն 'ի նմա հանգրուանք մեծամեծ նաւաց ընդունակք:

ԻԱ. Ի տեղեկութիւն այսր ամենայնի, չև 'ի փորձ հանդիսին մատուցեալ, քաջայարմար դատեալ զԿ. Վո-լուսենոս՝ առաքէ զնա յառաջոյ միով պատերազմիկ նաւաւ, պատուէր տուեալ նմա՝ լրտեսել զամենայն ինչ և փու-թով առ ինքն դառնալ: Ինքն ամենայն զօրօքն 'ի Մորինս

գնաց, զի անտի 'ի Բրիտանիա սուղ ինչ էին անցք։ Այսր յամենայն կողմանց սահմանակից գաւառացն հրամայէ գալ ժողովել նաւաց, ևս և նաւատորմին՝ զոր հերու յամարայնին կառուցեալն էր առ Վենետեան պատերազմն։ Ի ժամանակի անդ յայնմիկ 'ի վեր ելեալ խորհուրդ մտաց նորա և 'ի վաճառականացն հասուցեալ առ Բրիտանիկսն, 'ի բազում քաղաքաց կղզւոյն գան առ նա հրեշտակութիւնք՝ խոստանալ պատանդս տալ, և հնազանդել տէրութեան հռովմէական ժողովրդեանն։ Զոր լուեալ՝ խոստացաւ առատաբար, և յորդորեալ զնոսա կալ 'ի նոյն միտս հաստատուն՝ առաքէ 'ի տուն. ընդ նոսին արձակէ և զԿոմիոս, զոր նորա յաղթեալ Ատրեբատաց՝ թագաւոր անդ կացուցեալ էր, զորոյ և զքաջութիւն և զիմաստութիւնն գովէր, և հաւատարիմ զնա առ ինքն համարէր, և զիշխանութիւն նորա 'ի գաւառսն յայնս առ մեծս ունէին։ Սմա պատուէր տայ՝ 'ի բազում քաղաքս նոցա մտանել ըստ կարի, և քաջալերել զնոսա մտանել յուխտ ժողովրդեանն Հռովմայ, և պատմել նոցա զվաղընդփոյթ գալուստ իւր անդր առ նոսա։ Վոլուսենոս՝ ոչ համարձակեալ ելանել 'ի նաւէն և զանձն հաւատալ խժիցն, դիտեալ զգաւառսն՝ որչափ և հնար եղև նմա, յաւուրն հինգերորդի դարձ առնէ առ Կեսար, և պատմէ զոր ինչ անդն էր տեսեալ։

ԻԲ. Ի յամել Կեսարու 'ի կողմանս յայսոսիկ 'ի հայթայթանս նաւուց, 'ի մեծագոյն մասնէ Մորինաց եկին առ նա հրեշտակք՝ 'ի չքմեղս լինել անձանց զխորհրդոյ անցելոց աւուրցն, զի արք դուժք և մերոյ սովորութեանցս անտեղեակք մարտ եդեալ էին ընդ հռովմէական ժողովրդեան, և խոստանալ առնել զհրամանս իւր։ Զայս Կեսարու յոյժ բարեպատեհ իւր համարեալ, զի ոչ թշնամի 'ի թիկանց իւրոց թողուլ կամէր, ոչ պատերազմ տալոյ կարողութիւն էր նմա վասն եղանակի տարւոյն, և ոչ զդուզնաքեայ իրացըն հոգ առաւել ընտրել քան զԲրիտանիա արժան վարկանէր, հրամայէ նոցա յոգնաթիւ պատանդս. զորս առեալ, ընդունի զնոսա 'ի հպատակութիւն։ Գումարեալ

նաւս կարասեկլիրս որպէս Թէ ուԹմնիւ չափ, և հայԹայ-Թեալ որչափ ինչ բաւական Թուէր յանցուցանել երկուս գունդս, այլ ամենայն որ ինչ էին նորա նաւք պատերազ-միկք՝ բաժանեաց զնոսա 'ի գանձապետն, յետեղակալսն և յասպահապետսն: Հասին այսր ուԹուտասն նաւք կարա-սեկլիրք, որք աստի ուԹ հազար քայլ հեռի արգելեալ կային 'ի հողմոյն, ոչ ատակեալ գալ հասանել 'ի նաւա-հանգիստ անդր 'ի նոյն: Զսոսա բաշխեաց 'ի հեծեալսն. ըզ-մնացեալ զօրն ետ 'ի ձեռս Կ. Տիտուրիոսի Սաբինացւոյ և Լ. Աւրունկուլէոսի Կոտտայի տեղակալացն, տանել գնալ 'ի Մենապեանս և յաւանս Մորինայ՝ յորոց չէին ե-կեալ առ նա հրեշտակք: Պ. Սուլպիկիոսի Հռուփոսի տե-ղակալի հրաման ետ ունել զնաւահանգիստն պահապա-նօքն որ բաւական Թուէին:

ԻԳ. Զայս ամենայն յարդարեալ, և գտեալ դէպ ժա-մանակ նաւելոյ, իբրև յերրորդ պահու գիշերոյն առեր-Թեալ զնաւսն 'ի չու անկաւ, և հեծելազօրուն հրամայեաց խաղալ 'ի միւս ևս մերձակայ նաւահանգիստ, և ելեալ 'ի նաւս՝ գալ զկնի իւր: Նոցա փոքր մի անագանեալ 'ի գոր-ծըն՝ ինքն իբր 'ի չորրորդ ժամու այգուն՝ առաջին նաւուքն եհաս 'ի Բրիտանիա. և անդ 'ի վերայ ամենայն բլրոց ետես տարածեալ զզօրս Թշնամեացն վառեալս: Տեղւոյն այսպի-սի իմն էր դիրք. այնչափ մօտ առ մօտ պաշարեալ էր լե-րամբք ծովն, զի 'ի բարձանց անտի մարԹ էր նետաձիգ առնել 'ի ծովեզրն: Զայս տեղի ոչ 'ի դէպ համարեալ 'ի ցա-մաք ելանելոյ, մինչև այլ ևս նաւքն անդր ժողովեսցին՝ խա-րիսխ արկեալ սպասեաց մինչև ցինն ժամն: Յայնժամ կո-չեցեալ զտեղակալսն և զհազարապետս զօրուն, եցոյց նո-ցա զոր ինչ 'ի Վոլուսենոսէ իմացեալն էր և որ ինչ կամէրն գործել. և ըստ զինուորական արուեստին և մանաւանդ ծովային իրացն պահանջելոյ, զի դիւրափոխ և անկայուն շարժման են վիճակեալ, զամենայն ինչ ըստ ակնարկելոյն և ըստ կիտին հասելոյ 'ի գործ դնել: Զնոսա արձակեալ, և զհողմն և զջուրցն զեղումն միանգամայն յաջող գտեալ,

տուեալ նշան և զխարիսխսն առեալ, անտի գնացեալ որ-
պէս թէ ութ հազար քայլ, յարձակ ուրեք և գիւր ծով-
ափին զնաւսն կացոյց։

ԻԴ. Բայց խժիցն ծանուցեալ զմիտս Հռովմայեցւոց, առաքեալ յառաջագոյն զայրուձին և զկառամարտսն, որովք սովոր են վարել 'ի պատերազմունս, այլոց ևս զօրացըն զկնի փողելով նոցա, արգելուին զմերսն ելանել 'ի նաւաց։ Տագնապ անհնարին էր յայս աղագս, զի նաւքս մեծամարմինք ոչ կարէին կալ բայց միայն 'ի խորս. և զինուորացն յանծանօթ վայրսն ձեռօքն խափանելովք, մեծաւ և ծանր բեռամբ զինուց ընկճելոց՝ պարտ էր և 'ի նաւացն 'ի դուրս ոստնուլ, և կալ 'ի մէջ ալեացն և ընդ թշնամիսն մարտնչել. ուր նոքա կամ 'ի ցամաքէն կամ սակաւիկ մի մխեալք 'ի ջուր, արձակ համարձակ ամենայն անդամովք, 'ի վայրս քաջածանօթս, յախուռն ճապաղէին նետս, և զերիվարսն քաջավարժս մտրակ 'ի կուշտ մղէին։ Ցայսցանէ շփոթեցեալ մերոցն, և այնպիսում մարտի անհմուտք, ոչ ամենեքին նոյն աժխուժիւք և եռանդեամբ կռուէին, զոր սովոր էին ունել 'ի ցամաքային կռիւսն։

ԻԵ. Զայն տեսեալ Կեսարու՝ պատերազմիկ նաւացն որոց տեսիլն անսովոր էր յաչս խուժայնոցն և դիւրաշարժք էին 'ի պէտս, հրաման ետ փոքր մի հեռանալ 'ի կարասեկիր նաւացն, և թիովք վարել 'ի կողմն մի ամայի թըշնամեաց, և անտի պարսիւք, մանգղիոնօք և նետիւք վանել զթշնամիս և նահանջել, որ յօգուտ մեծ եղև մերոցն. զի նաւացն տարազուք և թիոցն շարժմամբ և անծանօթ կազմածիւ մանգղիոնացն խռովեալ խժիցն, զտեղի առին, և առժամայն ընդ կրունկ դարձան։ Բայց 'ի յապաղել մերոցն զօրականաց յերեսաց խորութեան ծովուն, դրօշակիր տասներորդ գնդին, մկայ կոչեալ զդիսն յաջողելոյ երացն գնդին, Վազեցէք, գոչեաց, զօրականք, եթէ ոչ կամիք մատնել զԱրծիւդ 'ի ձեռս թշնամեաց. այլ ես անշուշտ զիմ սպաս ընկերհաշտութեան և զօրապետիս մատուցից։ Զայս ասացեալ 'ի ձայն մեծ՝ ընկէց զինքն 'ի նաւէն, և առ

տարաւ զԱրծուէն 'ի Թշնամիսն ։ Յայնժամ մերոցն խրա-խոյս բարձեալ առ միմեանս, չառնուլ յանձն զայն անարգութիւն, ոստեան առ հասարակ 'ի նաւէն ։ `Զայն տեսեալ և այլոց 'ի մերձակայ նաւացն՝ զհետ եկեալ, հուպ մատեան առ Թշնամիսն ։

ԻԶ. Ուժգին մղեցաւ մարտ յերկոցունց կողմանց ։ Սակայն մերքն՝ քանզի ոչ զկարգսն պահել կարէին, ոչ պնդեալ կալ և ոչ դրօշիցն զհետ ընթանալ, և այլք յայլոց նաւաց որում դրօշու և հանդիպեցան՝ յայն գումարէին, աղմկէին ոչ սակաւ ։ Իսկ Թշնամիքն՝ ծանօթք ամենայն ծանծաղի, իբրև տեսանէին 'ի ծովեզերէն զոմանս, զի ելանէին 'ի նաւացն, ձի ածեալ յարձակէին 'ի վերայ տաժանելոցն. բազումք զսակաւսն պաշարէին. այլք 'ի մերկացեալ կողմանէն ձիգ դնէին յամենեսեան ։ Որում զգաստ եղեալ Կեսարու, զմակոյկս պատերազմիկ նաւացն, և զնաւակս լրտեսականս հրամայեաց լնուլ զօրականօք, և զորս վտանգեալս տեսանէր, նոցա յօգնութիւն առաքէր ։ Մերքն իբրև հասեալ կացին 'ի ցամաքի, ամենեքումբք հանդերձ միախուռն գրոհ ետուն 'ի Թշնամիսն, և փախստեայս արկին զնոսա, բայց ոչ կարացին երկայնագոյնս հալածել զնոսա. զի այրուձին մեր չէր մարթացեալ զհետ մեր 'ի Ճանապարհ անկանել և ժամանել 'ի կղզին ։ Այս և եթ յառաջին բաղդէն Կեսարու պակաս գոյր ։

ԻԷ. Թշնամեաց այն ինչ ոգի առեալ 'ի խուճապանացն՝ անդէն վաղվաղակի հրեշտակս արձակեցին առ Կեսար 'ի հաշտութիւն, խոստացեալ տալ նմա պատանդս և առնել զինչ և հրամայեսցէ. ընդ նոսա եկն և Կոմիոս ատրեբատացի զոր 'ի վերոյ պատմեցաք՝ առաքեալ 'ի Կեսարէ 'ի Բրետանիա ։ Յելանել նորա 'ի նաւէն՝ տանել առ նոսա զպատուէրս սպարապետին՝ կալեալ նոցա արկեալ էին 'ի կապանս ։ Յայնժամ յետ մարտին արձակեցին, և 'ի խնդրել զհաշտութիւն՝ զմեղս իւրեն եղելոյ հանեալ կրթեցին յամբոխն, և վասն անմտութեան նորա ներել մաղթեցին ։ Կեսարու բողոք կալեալ, զի որ ինքնայորդոր առ նա հրեշտակս

'ի ցամաք տուաքեալ 'ի խաղաղութիւն աղերսեալ էին զնա, այնպէս անփուրշիշ 'ի վէգ եկին, ներելաաց անմտութեանն, և հրամայեաց պատանդս. զորոց զմասն ինչ եառուն նոքա փութանակի, և զմիւս մասն 'ի հեռաւոր կողմանց կոչեցեալ խոստացան մատուցանել 'ի սակաւ աւուրս: Ի ժամանակի անդ հրաման ետուն իւրեանց որերոյն գնանալ անդրէն յագարակս, և իշխանքն յամենայն կուսաց եկին ժողովեցան և աւանդեցին զանձինս և զքաղաքս իւրեանց 'ի ձեռս Կեսարու:

ԻԸ. Սովիմբք հաստատեալ հաշտութեանն, յետ չորրորդ աւուր գալստեանն 'ի Բրիտանիա՝ ութ և տասն նաւքն զորոց 'ի վերդ տասցաք բառնալ զայրուձին, 'ի վերագոյն նաւահանգստէն յուղի անկեալք մեղմ օդով. մինչդեռ մերձենային 'ի Բրիտանիա ակն յանդիման մերոյ բանակին, յանկարծակի այնպիսի իմն յարեաւ մրրիկ, մինչև անհնար լինելոյ և ոչ միում 'ի նոցանէ յընթացան վարել. այլ կէսք ուստի մեկնեալքն էին անդրէն յետս վարէին, այլք 'ի խոնարհագոյն կողմ կղզւոյն հուպ 'ի մուտս կոյս արեգական անկանէին անհնարին վտանգաւ իւրեանց. այլ արկեալ ըղխարիսխսն՝ մինչդեռ տակաւին յալեացն լնուին, առ հարկին 'ի վատախառարակ գիշերին յանդունդսն խառնեալք հասին 'ի ցամաքն:

ԻԹ. Յայնմ գիշերի դիպաւ լրումն լուսնին, որ սովոր է սաստիկ զեղուլ զկուտակումն ջուրց աշխարհական ծովուն յափունսն, և այս անծանօթ էր մերոցն. վասն որոյ և նաւքն պատերազմիկք՝ որովք փոխադրեալ էր Կեսարու զզօրն և տապ 'ի ցամաք ձգեալ, միանգամայն ողողմամբն լնուին, և կարասեկիրքն հարատեալք 'ի խարիսխսն՝ 'ի մրրկէն տանջէին: Եւ չգոյր մերոցն կար ինչ զօրութեան 'ի սպաս ինչ պիտոյից կամ օգնականութեան: Բազմաց 'ի նաւացն խորտակեալ, այլոցն կորուսեալ զչուանսն, զխարիսխսն և զայլ ևս կազմածս, և ումպէտ մնացեալք 'ի նաւարկութիւն, անհնարին խռովութիւն եղև բովանդակ զօրուն, որում հարկ իսկ էր հասանել: Զի չէին այլ նաւք՝

տա 'ի գտանել անդրէն, և ամենայն պէտք 'ի նորոգութեան նոցին պակասէին, և զի 'ի Գաղղիա հարկ էր ձմերել՝ այն ամենեցուն իսկ յայտ էր, և չէր մթերեալ պարէն 'ի տե- ղիսն յայնս վասն ձմերայնոյ։

Լ. Զայսոսիկ գիտացեալ իշխանացն Բրիտանիոյ՝ ժողո- վելոց յետ պատերազմին 'ի կատարել զհրամանսն Կեսա- րու, 'ի խորհուրդ մտեալ ընդ միմեանս, իբրև ծանեան թէ ոչ այրուձի է հռովմայեցւոց, ոչ նաւք և ոչ ցորեան, և յա- նօսրութենէ ճամբարին 'ի միտ առին զնուազութիւն զօ- րուն, որ և յայն աղագս անօսրագոյն էր, զի առանց աղխի անցուցեալ էր Կեսար զգունդսն, յոյժ պատեհ վարկան իւրեանց 'ի գործ՝ ապստամբել, և զնպար և զհամբար հա- տանել 'ի մերոցն, և ձգել երկարել զգործն մինչև 'ի ձմեռն. զի ակն ունէին՝ թէ սոցա պարտութեամբ կամ 'ի դարձէ խափանելով՝ ոչ ոք այնուհետև 'ի Բրիտանիա անցանիցէ 'ի պատերազմ։

ԼԱ. Վասն որոյ միւսանգամ 'ի դաւաճանութիւն մը- տաբերեալ, սկսան առ սակաւ սակաւ սորսորել 'ի բանա- կէն, և զօրեարն իւրեանց յետս կոչել յագարակացն։ Սա- կայն Կեսար, թէպէտ և տակաւին յանծանօթս խորհրդոց նոցա, բայց յարկածից նաւաց իւրոց, և զի զպատանդսն մատուցանել ապախտ արարին, կասկածէր որ ինչ և եղեն իսկ։ Ուստի և առ ամենայն դէպս նպաստաւորութիւն հայթայթէր. ցորեան զօր հանապազ յագարակաց 'ի բա- նակն ժողովէր, և յատաղձից չարաչար խորտակելոց նա- ւացն և 'ի պղնձոյն զայլսն նորոգէր, և որ ինչ 'ի սպասնո- ցին պիտոյից պատշաճէր՝ հրամայէր բերել 'ի ցամաքէն։ Զօրականին ամենայն փութոյ պնդութեամբ յայս գործ պարապեալ, կորուսեալ երկոտասանս ևեթ 'ի նաւացն՝ զայլսն կազմեաց բաւականս 'ի նաւարկել։

ԼԲ. Մինչ այս մինչ այն, յորժամ ըստ սովորութեան՝ գունդ մի որ եօթներորդն կոչէր, առաքեալ էր զցորենոյ, և դեռ ոչ մի ինչ կասկած կայր պատերազմի, զի և կէսք յորեցոյն յագարակսն կային միայն, այլք երթևեկս առ-

նէջին 'ի ճամբար մեր, որք 'ի դրունս բանակին 'ի պահ կային՝ առջ. արարին Կեսարու, թէ փոշի մեծ անսովոր երևի յայնմ կողմանէ յոր գնացեալ էր գունդն: Կեսարու 'ի կասկած մտեալ իրին եղելոյ, թէ նոր իմն դաւ 'ի գժիցն իցէ գործեալ. հրաման ետ խմբիցն որ 'ի պահպանութեան, խաղալ ընդ իւր 'ի կողմն յայն, երկուց փոխանակել 'ի պահ, այլոց զէն առնուլ և փութանակի զհետ իւր ելանել: Փոքր մի 'ի բանակէն հեռացեալ՝ ետես զիւրսն 'ի թշնամեաց պաշարեալս և 'ի տագնապ մեծ, և նետք յամենայն կողմանց 'ի խուռն և խիտ գունդն հասէին: Զի որովհետև յայլ ամենայն սահմանաց հնձեալ ամփոփեալ է որայն, և մի ևեթ էր մնացեալ, գուշակեալ թշնամեաց թէ անդր եկեսցեն մերքն, գիշերայն թաքեան յանտառս 'ի դարանի: Ապա 'ի ցրուել մերոցն և դնել զզէնսն և զբաղել 'ի հունձս՝ յանկարծոյն 'ի վերայ նոցա երթեալ՝ զսակաւս էին սպանեալ, զայլսն վեր 'ի վայր հարեալ և աղմկեալ 'ի կարգէ, միանգամայն կառօք և այրուձիով 'ի մէջ առեալ էին զնոսա:

ԼԳ. Կառամարտիկ պատերազմին այս է օրինակ. Նախ ընդ ամենայն կողմանս արշաւեն և ցնդեն նետս, և նովին իսկ երիվարացն արհաւրօք և անուոցն շաչմամբ վրդովեն յաճախ զռազմն. և իբրև սպրդեսցին մտցեն 'ի վաշտս այրուձիոյն, ոստուցեալ 'ի կառացն՝ հետեւոտս մարտնչին: Կառավարք յայնժամ սակաւիկ ինչ տեղի տան 'ի կռուոյն. և այնպէս կան 'ի բացէ, զի եթէ յամբոխէ թշնամեաց նեղեսցին, դիւրին և համարձակ ունիցին առ իւրեանցսն դարձ: Այսպէս զհեծելոց երագութիւն և զհետեւաց հաստատութիւն բերեն 'ի մարտս. և հանապազորդ կրթութեամբ և հրահանգօք ցայն ժամանեն, զի 'ի զառ 'ի թափ և դարահաս վայրս վարժ են զսպատակեալ երիվարսն ըմբռունել, երագ սանձակոծել և շրջշրջել, և ընդ քեղին ընթանալ՝ կալ 'ի վերայ սամեացն, և անտի դարձեալ շուտակի 'ի կառսն անցանել:

ԼԴ. Վասն այսր ամենայնի 'ի խռովել անդ մերոցն յերեսաց նորանշան պատերազմին՝ յոյժ 'ի դէպ ժամու հասոյց նոցա օգնութիւն Կեսար: Զի նորա գալստեամբն զկայ

աւին Թշնամիք, մերքն յերկիւղէն սԹափեցան: Յետ այ-նորիկ՝ անժամ համարեալ գրգռել զԹշնամին և մղել ըղ-մարտն, եկաց մնաց 'ի տեղւոջ իւրում, և զկնի սուղ ինչ ժամանակի դարձոյց զգունդսն 'ի բանակն: Մինչ դեռ այ-սքիկ լինէին և զբաղեալ էին մերքն առ հասարակ, այլքն որ յադարական կային, 'ի բաց հրաժարեցին: Ի վերայ եկին անդադար աւուրց յաւուրս ամպրոպք բազում, որ և ըղ-մերոյն 'ի ճամբարին արգելլին, և զԹշնամին կարճեցին 'ի կռուոյ: Ի նմին պահու դեսպան արարին խուժադուժքն յամենայն կողմանս, զառաւելուԹիւն մերոյ զօրականին քարոզեցին իւրեանց որերոյն, և ցուցին Թէ քանի անհնա-րուԹիւն էր աւարառուԹեան, և հնար ինքեանց յաղԹա-տուԹիւն ելանելոյ յաւիտեան, եԹէ միայն զհռովմայե-ցիսն 'ի բանակէն հալածեսցեն: Այսպէս կուտեալ անհուն բազմուԹիւն հետեւակաց և հեծելոց՝ վաղվաղակի հասին 'ի բանակն:

ԼԵ. Կեսար՝ Թէպէտ և տեսանէր զի որ ինչ յաւուրսն առաջինս եղև նոյն և աստ պատահեսցէ, 'ի փախչել Թշնա-մեաց՝ արագուԹեամբն զերծանել 'ի վտանգէն, համայն և այնպէս գտեալ երիվարս իբրև երեսուն՝ զորս նախասա-ցեալն Կոմիոս Ատրեբատ ընդ իւր էր ածեալ, եհան ճա-կատեցոյց զգունդսն առաջի բանակատեղն: Խառնեալ ըղ-ձեան 'ի մարտ, ոչ կարացին Թշնամիք ժուժկալել յերկար՝ մերոյ զօրականին յարձակման, և Թիկունս դարձուցին, որոց զհետ պնդեալ ցոր վայր հանդուրժեցին ոտք նոցա և կար, զյոլովս 'ի նոցանէ սատակեցին, ապա ընդ լայն և ընդ երկար զամենայն շէնսն խանԹարեալ և այրեալ, դարձան 'ի բանակն:

ԼԶ. Ի նմին աւուր եկին առ Կեսար հրեշտակք առա-քեալք 'ի Թշնամեաց խօսել 'ի հաշտուԹիւն: Սոցա Կեսար զԹիւ պատանդացն զոր յառաջն էր հրամայեալ՝ յաւել և կրկին պահանջեաց, և հրամայեաց տանել զնոսա յայնկոյս 'ի ցամաքն. զի 'ի մերձակայ աւուր հաւասարականծին զծովէն զաղփաղփուն նաւուք ձմերայնոյն հաւատալ ոչ լաւ համա-րէր: Ինքն դէպ ժամանակ գտեալ՝ սուղ ինչ զկնի մէջ գի-

չերոյ առխթեաց զնաւսն, որ հասին անճկուս ամենքեան 'ի ցամաք։ Ի սոցանէ կարաւեկիրք երկու՝ 'ի նոյն նաւահանգիստ ընդ այլսն անկանել ոչ ժամանեալք, փոքր մի 'ի խոնարհ ընկեցան։

ԼԷ. Յելանելն 'ի նաւաց անտի երեքհարիւր զօրականաց և 'ի բանակն դիմել, Մորինք՝ զորս Կեսար յանցանելն 'ի Բրիտանիա 'ի խաղաղութեան էր թողեալ, յուսով աւարի հրապուրեալ՝ պատեցան զնոքօք 'ի սկզբան անդ ոչ յոյժ բազմամբոխիւ, և սաստեցին նոցա զէնընկեց լինել՝ եթէ չկամիցին սատակիլ․ իբրև նոքա բոլորակ գործեալ՝ անձանց պաշտպանէին, առ ժամայն 'ի ձայն աղաղակին արք որպէս թէ չորեք հազարք հասին 'ի վերայ։ Այսմ զգաստ եղեալ Կեսար, զամենայն այրուձին 'ի բանակէն արձակեաց իւրոցն յօգնութիւն։ Յայնժամ զդէմ կալան մերքն յարձակման թշնամեաց, և առաւել քան զժամս չորս պատերազմեալ արիաբար և սակաւ առեալ վէրս, զյոգունս 'ի նոցանէ սպանին։ Իսկ յորժամ հեծելազօրուն մեր եհաս երևեցաւ նոցա, թշնամեացն ընկեցեալ զզէնսն, կապարճս դարձուցին, և ամբոխ բազում սատակեցաւ 'ի նոցանէ։

ԼԸ. Ի վաղիւ անդր Կեսար զՏ. Լաբիենոս տեղակալն՝ նովին գնդովք զորս 'ի Բրիտանիոյ դարձուցեալն էր արձակեաց 'ի Մորինսն ապստամբեալս։ Որոց՝ առ երաշտութեան ճահճացն՝ չունելով յոր ապաւինեսցին, որպէս արարեալն էին հերու, անկան գրեթէ ամենքեան 'ի ձեռս Լաբիենոսու։ Իսկ Կ. Տիտուրիոս և Լ. Կոտտա ետեղակալք, որոց 'ի Մենապեանցն աշխարհ էր ածեալ զգումարտակսն, աղարտ վարեալ զամենայն ագարակս նոցա, զցորեանն հուպ առ արմատ խուզեալ, հրկէզ արարեալ զշէնսն, զի Մենաբեանք առ հասարակ 'ի թաւամուր մայրիս զօղեալ էին, դարձ առ Կեսար արարին։ Կեսար գնդացն բոլորեցունց առ բելգացիսն կարգեաց ձմերոցս։ Անդր երկուք եւեթ 'ի Բրիտանիոյ քաղաքք՝ առաքեալ էին պատանդս, այլքն անփոյթ արարեալ։ Վասն իրացս այսոցիկ, ըստ թղթոցն Կեսարու քսան աւուրց պաղատանք սահմանեցան 'ի ծերակուտէն։

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ԳԱՂՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. Հրաման տայ Կեսար տեղակալացն շինել ատորմիղ մեծ նաւուց 'ի Գաղղիա. Ինքն գնացեալ 'ի Լիւրիկէ՝ նկուն առնէ զՊիրուստս: Բ—Ը. Դարձեալ եկեալ 'ի Գաղղիա և զաղմուկս Տրեւիրացն ցածուցեալ, անցանէ 'ի Բրիտանիա: Թ—ԻԳ. Տայ մարտ պատերազմի ընդ բնակիչս կղզւոյն յայսկոյս և յայնկոյս Տամեսիս գետոյ. զորս յաղթահարեալ՝ և զդաւամարտականն դարձուցեալ 'ի Գաղղիա՝ բաժանէ զզօրս յայլ և այլ կողմանս: ԻԴ. Յարձակումն 'ի գաղղիացւոց ձմեռանոցին, և նախ Եբուրոնք ընդ Ամբիորիգաւ առաջնորդաւ, յարձակին 'ի բանակին Տիտուրիոսի տեղակալին, և յանհնարս մատեալ դաւաճանաւ այնմ ըն-նելոյ, ԼԲ. Ներվիոսք պաշարեն զնա ամենայն զօրօքն հանդերձ: ԼԸ. Ամբիորիգես յաղթող եղեալ, յինքն յարեցուցեալ և զներուիանս՝ պաշարէ զճամբար Կ. Կիկերոնի: ԽԹ. Գալստեամբն Կեսարու լուծեալ պաշարումն, խորտակի բանակն զօր նորա: ԾԴ. Սակայն Սենոնք և Տրեւիրք հնարին նշկահել. բայց Ինդուտիոմար սպանեալ՝ խաղաղին փոքր մի իրքն:

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱՂՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



## ԳԻՐՔ Ե.

Ա. Ի բդեշխութեան Լուկիոսի Դոմիտիոսի, և Ապ. Կլաւտիոսի՝ հանդերձեալ Կեսարու 'ի ձմերոցաց անտի գնալ յԻտալիա, որպէս սովորն էր առնել ամի ամի, հրաման տայ տեղակալ փոխանորդացն՝ զորս վերակացուս կացուցեալ էր գնդացն, ամենայն փութոյ ջանդութեամբ 'ի ձմերային ժամանակի անդ կառուցանել նաւս բազում ըստ մարթելոյ, և կազմել զհնոցն բեղեկս: Ցուցանէ զչափոցն զօրինակն և զձևն. յերագութիւն բեռնելոյ զնոսա և 'ի ցամաք քարշելոյ՝ փոքր մի մանուէս գործէ զնոսա քան զորս սովոր եմք վարել 'ի մերում ծովու. Նա զի և առ սակաւ փոփոխութեան երթևեկի ծովուն՝ չէր տեսեալ անդ մեծամեծ յարուցս ալեաց կուտակելոց. իսկ առ բեռինս և ջոլիրս անասնոց կրել՝ դոյզն ինչ լայնագոյնս քան որովք վարիմքս յայլ ծովս: Զայսոսիկ առ հասարակ հրամայեաց լինել գործայինս, առ որ օգնէ յոյժ փոքրկութիւնն: Եւ զայն ամենայն որ 'ի պէտս հանդերձանաց նաւաց են՝ հրամայէ բերել 'ի Սպանիոյ: Ինքն կատարեալ զժողովս յայսկոյս Գաղղիոյ, գնայ 'ի Լիւրիկէ, զի լուահմանակից կողմն նա-

հանգին լսէր ասպատակութեամբ ոտնակոխ եղեալ 'ի Պի-րուստաց։ Հասեալ անդր՝ քաղաքի քաղաքի հրամայեաց զօրականս, գումարել 'ի յայտնի ուրեք տեղի յանուանէ։ Իբրև լու եղև այս, յղեն առ նա Պիրուստք հրեշտակս՝ ի-րազեկ առնել զնա, զի և ոչ մի ինչ յիրացն յայնցանէ հասար աշխարհի խորհրդով էր եղեալ, և զանձինս պատրաստս ցուցանեն՝ ամենայն օրինակաւ հատուցումն առնել վնա-սուն։ Լուեալ Կեսարու զբանս նոցա, հրամայէ պատան-դըս, և պատուէր տայ՝ յայս ինչ աւուր ածել զնոսա. ա-պա թէ ոչ, մարտիւ վանեցից, ասէ, զքաղաքդ։ Մատու-ցեալ նոցա զնոսա յաւուրն ըստ հրամանին, կարգէ իրաւ-արար դատաւորս 'ի մէջ քաղաքացն, ընտրել զհակառա-կութիւնն և արկանել պատիժս։

Բ. Զայսոսիկ վճարեալ և կատարեալ զժողովսն՝ դառ-նայ 'ի Գաղղիա որ յայսկոյս, և անտի առ զօրսն ընթանայ։ Հասեալ անդր և շրջեալ ընդ ամենայն ձմերոցս, 'ի յեաւին չքաւորութեան ամենայն պիտոյից, գտանէ յանօրինակ փու-թոյ առատութենէ զօրականին կառուցեալ նաւս իբրև վեց հարիւր՝ որպիսիս 'ի վեր անդր ցուցաք, և պատերազմիկս՝ քսան և ութ, որոց և մերձ ընդ մերձ 'ի սակաւ աւուրս մարթ իսկ էր անկանել 'ի ծով։ Գրուատեալ զզօրականն և զվերակացուս գործոյն, զոր ինչ կամէրն յայտ արար, և ա-մենեցուն հրաման ետ երթալ ժողովել 'ի նաւահանգիստն Իտիոն, զի գիտէր անտի 'ի Բրիտանիա դիւրին լինել անցս, իբրև երեսուն հազար քայլից 'ի ցամաքէն։ Առ այս եթող զօրականս՝ որչափ և բաւական թուեցաւ. ինքն չորիւք թեթևաբեռն գումարտակաւ և ութհարիւր հեծելովք խա-ղաց գնաց յերկիրն Տրեւիրաց. զի սոքա ոչ 'ի ժողովսն գային, և ոչ տէրութեան հնազանդէին, և զրոյցք ևս էին՝ թէ զգերմանացիսն որ յայնկոյս Հռենոսի՝ սոքա գրգռիցեն։

Գ. Ազգս այս զօրագոյն է յոյժ այրուձիով քան զա-մենայն Գաղղիա, և ունի ուժգին ամբոխ հետևակաց, և որ-պէս 'ի վերոյ ցուցաք՝ հասանէ մինչև 'ի Հռենոս։ Երկուք յազգի անդ կագէին ընդ միմեանս զիշխանութենէ, Ինդու-

տիոմար և Կինգետորիքս, յորոց երկրորդն, իբրև լու եղև գալուստ Կեսարու և գնդացն, յարեաւ եկն առ նա, զանձնէ և զիւրոցն ամենեցունց հաստատեաց 'ի հպատակութեան կալ և ոչ օգտել 'ի բարեկամութենէ հռովմէական ժողովրդեան, և որ ինչ 'ի Տրեւիրս գործէին՝ յայտնեաց զամենայն։ Իսկ Ինդուտիոմար եդ 'ի մտի պատրաստել 'ի պատերազմ, այրուձի և հետևակազօր ժողովել, և զապիկարս 'ի տիոց 'ի զինուորութիւն՝ Թաքուցանել յանտառն Արդուէննա, որ ընդ երկիրն Տրեւիրաց 'ի Հռենոս ձգի մինչև յեզերս սահմանացն Հռեմեանց։ Իսկ իբրև իշխանք ոմանք յազգէ անտի յայնմանէ՝ մտերմութեամբ Կինգետորիքսի ողոքեալք, և զարհուրեալք 'ի գալստենէ մերոյ բանակին, եկին առ Կեսար և սկսան իւրաքանչիւր զիրաց իւրոց խնդրուածս առնել, զի ազգին իւրեանց սպաս տանել ոչ կարէին, զանգիտեալ թէ գուցէ 'ի բոլորեցունց լքանիցի, Ինդուտիոմար հրեշտակս առ Կեսար առաքէ, թէ ինքն յայն սակս անջատեալ իցէ յիւրոցն և չկամեցեալ գալ առ նա, զի հեշտեաւ զազգն 'ի հպատակութեան կալցի, և մի՛ յազատանւոյն Թափրանալ՝ սինլքորն ամենայն անմտութեամբն գթիցէ։ Արդ քաղաքն 'ի ձեռս իմ է, և թէ թոյլ տացէ Կեսար՝ ես ինքնին 'ի բանակն եկից առ նա, և զիմ և զազգին բաղդն 'ի նորա հաւատոյն աւանդեցից։

Դ. Կեսար թէպէտ և խելամուտ լինէր յէր սակս ասիցին այն բանք, և զինչ էր որ զնա յառաջարկեալ խորհրդոյն դրդուեցուցանէր, սակայն զի մի՛ հարկեսցի զամառն 'ի Տրեւիրս անցուցանել, մինչդեռ ամենայն ինչ կազմ և պատրաստ էր 'ի բրիտանական պատերազմն, հրամայեաց Ինդուտիոմարի՝ երկերիւր պատանդօք գալ առ ինքն։ Իբրև եկին սոքա, և ընդ նոսին որդին իւր և ազգականք առ հասարակ, զորս յականէ յանուանէ կոչեալն էր, մխիթարեաց զԻնդուտիոմար, և յորդորեաց 'ի հնազանդութեան կալ։ Համայն և այսպէս առ իւր ձայնեալ զիշխանսն Տրեւիրաց, համոզեաց առանձինն 'ի մէջ նոցա և Կինգետորիքսի 'ի խաղաղութիւն։ Զոր 'ի նորա շնորհէ գիտելով յաջողեալ նմա

զայն, օգուտ մեծ համարէր՝ զօրանալ իշխանութեանն նորա 'ի մէջ իւրոցն, զորոյ և զմեծ սիրականութիւն առ ինքն տեսեալ իսկ էր։ Ընդ այս գժկամակ եղև յոյժ Ինդուտիոմար, նուազել յիւրոյն շնորհացն իւրոց․ և որ յառաջ-նըմէ ոխերիմ մտօք կայր ընդ մեզ, աւելին սրտառուչ եղեալ առաւել ևս տոչորեցաւ։

Ե. Զայսուիկ անօրինեալ Կեսարու, գնաց եհաս զօրամարտակօքն հանդերձ յԻտիոն նաւահանգիստ․ անդ գիտաց, զի նաւք քառասուն՝ որ 'ի Մելտացիսն էին կազմուցեալք, վարեալք 'ի մրրկէ և անկարացեալ յառաջ տանել զընթացսն, անդրէն 'ի նոյն տեղի ուստի ելեալն էին՝ դարձ արարեալ էին․ զայլսն եգիտ պատրաստ 'ի նաւարկել, և ամենայն սարուք կազմս։ Անդր եհաս և համօրէն այրուձին Գաղղիոյ՝ թուով չորեք հազար, և իշխանք յամենայն քաղաքաց, յորոց զսակաւագոյնս ևեթ՝ զորոց գիտէր զհամատութիւնն ընդ իւր՝ սահմանեալ էր թողուլ 'ի Գաղղիա, զայլսն ընդ իւր խաղացուցանել 'ի տեղի պատանդաց, զի 'ի հեռանալ իւր՝ զանգիտէր թէ աղմկեսցի Գաղղիա։

Զ. Էր ընդ այլսն 'ի միասին Դումնորիգս եդուացի, զորմէ յառաջագոյն ասացեալ է մեր։ Ըզսա մանաւանդ որոշեալ էր տանել ընդ իւր, զի գիտէր զնա ցանկացող յեղափոխութեանց, իշխանութեան տենչացող, մեծասիրտ և մեծազօր 'ի գաղղիացիս։ Յաւելուր ևս յայս, զի 'ի ժողովի ուրեմն եդուացւոց ասացեալ էր Դումնորիգս, թէ արքայութիւն ազգին 'ի Կեսարէ նմա շնորհիցի, ընդ որ դժգըմնեալ եդուացւոց, ոչ յուրաստ կալոյ և ոչ աղերսելոյ հրեշտակս իշխէին առնել առ Կեսար։ Զայս Կեսարու յիւրոց ասպնջականացն էր լուեալ։ Նա ինքն զառաջինն ամենայն պաղատանօք խնդրեաց անդադոյնս՝ մնալ 'ի Գաղղիա․ էր զի անսովոր նաւարկութեան՝ 'ի ծովէ երկնչէր, և էր զի կրօնիցն խորանօք ասէր զանձն խափանեալ։ Տեսեալ զի անդողք մերժեցաւ հայցուածն, զամենայն յոյս զամագիտ լինելոյ կորուսեալ, սկսաւ յորդորել զիշխանսն Գաղղիոյ. զիւրև առնել զմի մի իւրաքանչիւր և 'ի բանի առնել, զի

մնասցէն 'ի Գաղղիա. և երկեղուկս արկանել, թէ ոչ վայրապար ինչ իրք գործիցին՝ մերկացուցանել զԳաղղիա 'ի համօրէն ազատանւոյն. և թէ այս խորհուրդ է Կեսարու, զի զորս ղանգիտէր սպանանել յայտ յանգիման Գաղղիոյ, զամենեսեան զնոսա 'ի Բրիտանիա տարեալ սատակեսցէ: Այլոց երաշխաւոր կայր, երդումն 'ի նոցանէ պահանջէր, զի զոր ինչ 'ի պէտս օգտի Գաղղիոյ իմանայցեն՝ աշխարհախորհ ձուլիւք հաւանութեամբ գործել: Զայսոսիկ բազումք պատմէին Կեսարու:

Է. Այսմ խելամուտ եղեալ Կեսարու, քանզի 'ի մեծի շքի և 'ի պատուի ունէր զքաղաքն էդուացւոց, եդ 'ի մտի որով և իցէ հնարիւք սանձահարել և ահացուցանել զԴումնորիքս. և զի զամ քան զզամ տեսանէր մոլանալ զանմտութիւն նորա, հոգ խնամոյ ունել՝ զի մի՛ իւրում անձին կամ ընկերհաշտութեան ինչ վնաս կարիցէ առնել: Արդ աւուրս իբրև քսան և հինգ 'ի նմին տեղւոջ յամեալ, զի հողմ արևմտեան հիւսիսի ընդդէմ կայր նաւարկութեանն, որ 'ի տեղիսն յայնոսիկ սովոր է շնչել զմեծ մասն ամենայն ժամանակին, գուն գործէր յակաստանի ունել զԴումնորիքս, այլ համայն և կալ 'ի վերայ խորհրդոց մտաց նորա: Հուսկ ապա գտեալ պատեհ ժամանակ՝ հրաման տայ զօրականին և առնևձիոյ ելանել 'ի նաւս: Բայց ամենեցուն զբօսեալ մտօք, սկսաւ Դումնորիքս, յանդէտս Կեսարու, հեծելովքն էդուացւոց մեկնիլ 'ի Ճամբարէն 'ի տուն: Իբրև 'ի վեր եղ իրքն, Կեսարու խափան արարեալ չուոյն և զամենայն ինչ ընդ վայր հարեալ, զմեծ մասն այրուձիոյն արձակէ պնդիլ զհետ նորա, և հրամայէ յետս դառնալ նմա. եթէ բռնասցի և ոչ անսայցէ, պատուիրէ սպանանել. զի որ առ հուպ եղելոյն զհրամանաւն ապախտ առնիցէ՝ նմա. մտացեբար ինչ գործելոյ 'ի հեռանալ իւրում՝ չունէր ակն: Նա զդարձին պատուէր առեալ, ընդդէմ դարձեալ՝ սկսաւ բուռն արկանել 'ի զէն, և զիւրոցն ուխտապահութիւն պազատել, ստէպ աղաղակ հարկանելով, թէ ազատ եմ և ազատ քաղաքի: Նոքա ըստ հրամանին շուրջ պատեալ զնո-

վաւ՝ սպանանեն զայրն ։ Բայց այրուձին Էդուացի առ հասարակ դառնան առ Կեսար ։

Ը. Զայսոսիկ կատարեալ, Թողեալ 'ի ցամաքի զԼաբիենոս երիւք գնդօք և երկու հազար հեծելովք՝ պահել զնաւահանգիստն և պարենս հոգ տանել, տեղեկանալ որ ինչ 'ի Գաղլիա գործիցի, և խորհուրդ՝ ըստ ժամանակին և ըստ առաջիկայ իրացն առնուլ, ինքն հնգիւք գումարտակօք, և նոյնչափ այրուձիով որչափ Թողոյրն 'ի ցամաքի, 'ի մտանել արեգական խարիսխ առեալ արձակէ զնաւսն. և մեղմ հարաւով վարեալ, 'ի դադարել հողմոյն գրեթէ 'ի մէջ գիշերի՝ եկաց յընթացից, և աւեացն յորձանօք քաշ 'ի բաց մղեալ, 'ի ծագել լուսոյն՝ ետես զԲրիտանիա մնացեալ ընդ ահեկէ ։ Յայնժամ դարձեալ զյեղուն յորձանացն կալեալ՝ Թիաւակօքն ճգնի ըմբռնել զայն կողմն կղզւոյն, զոր յանցելում ամարայնի ծանուցեալն էր դիւրահուպ և դիւրամուտ լինել ։ Աստանօր գովելի յոյժ երևեցաւ կորովութիւն զօրականին, զի ծանրաբեռն և կարասեկիր նաւուքն, անդուլ անհանգիստ Թի վարելով հաւասարեցին ընթացից պատերազմիկ նաւացն ։ Գրեթէ 'ի հասարակ աւուր հասաք 'ի Բրիտանիա ամենայն նաւուք, և Թշնամի անդ ոչ տեսաւ. այլ որպէս յետոյ 'ի գերելոցն լուաւ Կեսար, եկեալ անդր ամբոխ բազում՝ և 'ի բազմութենէ նաւացս պակուցեալ, զի ընդ նաւարակաւորս և ընդ սեփականս՝ զոր իւրաքանչիւր յիւր պէտս էր շինեալ, առաւել քան զութ հարիւր միանգամայն էին երևեալ, փախուցեալ գնացեալ էին 'ի ծովափնէն, և 'ի բարձրամուր տեղիս ապաւինեալք ։

Թ. Կեսարու հանեալ զզօրն 'ի ցամաք, և տեղի գիտան 'ի բանակետղ կալեալ, իբրև լուաւ 'ի գերելոցն՝ յորում վայրի դադարեալ կայցէ Թշնամեացն ամբոխ, Թողեալ առ ծովուն խումբս տասն և երեք հարիւր հեծեալ 'ի պահ նաւացն, զերրորդ պահու գիշերոյն խաղաց առ Թշնամին, անկասկած զնաւացն՝ զի 'ի դիւր և 'ի լայնածաւալ ծովափին Թողոյր զնոսա խարսխեալս. և պահնակաց նաւուցն վերակացու կարգեաց զԿ. Ատրիոս ։ Ինքն խաղացեալ զգի.

շերն քայլս իբրև երկոտասան հազար, եւ եւս զզօրս թշնամեացն: Նոցա կառօք և հեծելովք 'ի գետն կոյս դիմեալ՝ ակսան 'ի բարձանց ընդդիմանալ մերոցն և մարտ դնել: Վանեալք յերեսաց այրուձիոյն՝ ղօղեցան յանտառս, գտեալ տեղի քաջապէս՝ 'ի բնութենէ և արուեստիւ ամրացեալ, զոր որպէս թուէր՝ 'ի պատճառս առանձին պատերազմացն պատրաստեալ էր: Զի ամենայն մուտք խցեալ էին թանձր և կուտ մատակոտոր ծառովք: Ինքեանք յանտառացն նուազունք ոմանք զդէմ կալեալ պատերազմէին, և արգելուին զմերսն 'ի ներքս յամուրսն մտանել: Բայց զինուորք եօթներորդ գնդմարտակին վահանափակ արարեալ և թումբ առ թումբ կանգնեալ, առին զտեղին և զնոսա յանտառացն հալածեցին, սակաւ ևեթ ընկալեալ վէրս: Բայց զփախուցեալսն հեռագոյն ևս վանել չետ Կեսար հրաման, զի ըզվայրացն բնութիւն անգիտանայր, և զի 'ի տարաժամեալ աւուրն թողուլ կամէր ժամանակ հարկանելոյ բանակի:

Ժ. Ի վաղիւ անդր այգուցն զհետևակազօրն և զայրուձին առաքեաց յայն արշաւան, պնդել զհետ փախստէին: Իբրև սոքա խուն ինչ յառաջեցին 'ի Ճանապարհ, մինչդեռ վերջակացքն երևէին տակաւին, հեծեալք 'ի Կ. Ատրիոսէ եկին առ Կեսար, պատմել թէ յանցեալ գիշերին մրրիկ մեծ յարուցեալ՝ ամենայն գրեթէ նաւք հարստահարեալք էին և 'ի ցամաք զարկուցեալք, զի ոչ խարիսխք ինչ զօրէին և պարանք՝, և ոչ նաւաստիք և. ղեկավարք ժուժկալել բըռնութեան փոթորկին. ուստի և 'ի բախմանէ անտի նաւացն վնաս մեծ էր պատահեալ:

ԺԱ. Զայս լուեալ Կեսարու՝ հրամայէ յետս կոչել զնդացն և այրուձիոյն և դադարել յուղւոյն. ինքն դարձ առ նաւսն առնէ: Զոր ինչ 'ի բանբերացն և 'ի թղթոց իմացեալն էր՝ զնոյն գրեթէ յայտ յանդիման տեսանէ, այնպէս զի իբրև քառասնիւ չափ 'ի նաւացն կորուսեալք, այլոցն հնար թուէր նորոգել մեծաւ աշխատութեամբ: Վասն որոյ 'ի գնդացն ընտրէ զհիւսունսն, և այլս ևս 'ի ցամաքէն կոչել հրամայէ: Գրէ առ Լաբիենոս՝ նաւս յօրինել ըստ

մարտնչելոյ պատուիրել գումարտակացն որ առ ինքն էր։ Ինքն, թէպէտ և գործն էր տաժանելի և թշուառաքերան, սակայն շատ մեծ համարեցաւ՝ զամենայն նաւսն ձգել հանել 'ի ցամաք, և ընդ միով պարանիշափակ պատապարութեամբ ճամբարին ամրացուցանել։ Ցայս ամենայն ծախեաց աւուրս իբրև տասն, և ոչ զգիշերային ժամն հանգիստ տուեալ աշխատութեան զօրականին։ Ձգեալ զնաւսն 'ի ցամաք, և զբանակեաղն սքանչելապէս ամրացուցեալ, ընդ նոյն զօրս՝ զոր յառաջին՝ պահանորդս թողու նաւացն, և ինքն ուստի եկեալն էր՝ անդրէն դարձ առնէ։ Իբրև է հաս անդր, զօրք բազումք բրիտանացւոց յառաջագոյն աստ անտի ժողովեալ կուտեալ էին 'ի մի վայր անդր. 'ի գլուխ իշխանութեանն և գործոյ պատերազմին միաբան խորհրդով կացուցեալ էին զԿասիւելաւնոս, որում սահման հատանէ 'ի ծովեզերեայ քաղաքացն գետն Տամեսիս անուանեալ, իբրև ութսուն հազար քայլ հեռի 'ի ծովէն։ Սորա յառաջ ժամանակաւ անդադար պատերազմունք էին ընդ այլ քաղաքս, այլ մերով գալստեամբս շարժեալ բրիտանացիք, բովանդակ պատերազմին և իշխանութեան զսա կարգեալ էին իշխանապետ։

ԺԲ. Բնակէն ոմանք 'ի ներքին կողմանս Բրիտանիոյ, զորս և անգստին 'ի կղզւոյն բնիկս լինել աւանդեն. իսկ 'ի ծովեզերեայս նոքա՝ որք աւարառութեամբ և պատերազմաւ 'ի բելգիական սահմանաց յայս կոյս գաղութ անցեալ էին, և գրեթէ առ հասարակ 'ի նոյն անուն ազգացն յորջորջին՝ յորոց ելեալ հատուած եկին անդր, և պատերազմ տուեալ՝ անդէն մնացին, և ձեռն արկին մշակել զանդաստանսն։ Մարդկանն ամբաւ բազմութիւն է, և շէնք բազմախիտ հանդոյն գաղղիականացն, և երկիրն խաշնաւէտ։ Նոցա դրամք պղնձիք են 'ի պէտս, կամ փոխանակ դրամոյ՝ օղք երկաթիք փորձեալք յայտշափ ինչ կշիռ։ Անդ 'ի միջերկրեայ գաւառս կլկլի կապար սպիտակ, 'ի ծովեզերեայսն՝ երկաթ, այլ չէ ինչ առատ։ Պղինձ նոցա եկամուտ է օրով վարին։ Փայտ ամենազան է որպէս 'ի Գաղ-

ղիա, բայց միայն 'ի փիճւոյ և 'ի մայրէ։ Զնապաստակ՝ ըզհաւ և զսագ ոչ արժան համարին ուտել. բայց բուծանեն զնոսա 'ի հաճոյս քմաց և 'ի զուարճութիւն։ Քան զԳաղղիա քաղցրախառն է աշխարհն մեղմագոյն սառամանեօք։

ԺԳ. Կղզին երեքանկիւնի է 'ի ձևէ, որոյ մի կողմն հանդէպ կայ Գաղղիոյ. այսր կողման մի անկիւնն, այն որ առ Կանտիոնիւ, ուր վարին գրեթէ նաւք 'ի Գաղղիոյ, յարևելս հայի, խոնարհագոյնն՝ 'ի հարաւ։ Այս կողմն ձգեալ երկայնի իբրև 'ի հինգ հարիւր հազար քայլ. միւս կողմն դառնայ 'ի Սպանիա և յարևմուտս կոյս, յորում կողման կայ Հիբեռնիա՝ կիսով չափ փոքր համարեալ քան զԲրիտանիա. բայց անտի նոյնչափ են անցք 'ի Բրիտանիա որչափ 'ի Գաղղիոյ։ Ի միջի սոսա նեղցին է կղզեակ Մոնա կոչեցեալ։ Այլ ևս բազմաթիւ կղզեակք մանունք հաշուին առ կղզեաւն, զորոց գրեալ է ոմանց՝ ունել 'ի խոր ձմերանի գիշեր անընդհատ աւուրս երեսուն։ Մեր խոյզ և խնդիր արարեալ զայդմանէ՝ ոչ ինչ աւելի գտանէաք, բայց զի ըստ անվրէպ ջրեղէն ժամացուցից կարճագոյն էին անդ գիշերք քան 'ի ցամաքին։ Այսր կողման երկայնութիւն, որպէս կարծի նոցա, է եօթնհարիւր հազար քայլ։ Երրորդ կողմն է 'ի Սայլն կոյս 'ի հիւսիսի. առ որում չիք ինչ երկիր. այլ այնր կողման անկիւն առաւել 'ի Գերմանիա հայի։ Համարի նմա երկայնութիւն ութ հարիւր հազար քայլից։ Վասն որոյ շրջապատ ողջոյն կղզւոյն է երկերիւր բիւր քայլ։

ԺԴ. Ի սոցանէ ամենեցունց մարդասիրագոյն են յոյժ բնակիչք Կանտիոնի, որ է գաւառ համօրէն ծովեզերեայ, և բարուք ոչ կարի օտարք 'ի գաղղիացւոց։ Բազումք 'ի միջերկրէից ոչ վարեն ցորեան, այլ կեան կաթամբ և մսով, և զգենուն մորթս. բայց բրիտանացիք ամենայն՝ ներկանեն զինքեանս 'ի կապուտակ, որ տայ նոցա թոյր իմն խաժագոյն. և այնիւ ահագնատեսիլ ևս են 'ի մարտի. հերք նոցա երկայն. և յամենայն անդամոց մարմնոյն գերծեալք՝ բայց միայն 'ի գլխոյն և յընչացն։ Տասունք կամ երկոտասանք՝ հասարակաց ունին զկանայս ընդ միմեանս, և մանաւանդ

եղբարք ընդ եղբարս, և ծնողք ընդ որդիս։ Իսկ թէ ծնանիցին ոք 'ի նոցանէ, նոցա համարին յորդիս՝ որոց նախ զիւրաքանչիւր կոյս ածեալ իցէ։

ԺԵ. Այրուձին թշնամեաց և կարապետքն սաստկապէս բախեցան մարտիւ ղճանապարհայն ընդ հեծելազօրն մերում, բայց մերքն ամենայն ուրեք յաղթեցին նոցա, և վանեցին զնոսա յանտառս և 'ի բլուրս։ Սակայն 'ի կոտորել բազմաց՝ յոխորտագոյնս վարեալ, կորուսին յինքեանց զոմանս։ Բայց յետ փոքու, մինչդեռ մերքն յանզգուշս էին և զբաղեալք 'ի կառուցանել զբանակն՝ ելին յանկարծակի յանտառաց անտի, և դաւյթ 'ի պահնական տուեալ՝ որ կային առաջի բանակին, ամեհաբար կռուեցան։ Առաքեաց նոցա Կեսար յօգնութիւն խումբս երկուս՝ յառաջնոց անտի երկուց գնդացն. սոքա իբրև մօտ հասեալ կացին առաւ ինչ բացատ առ 'ի միմեանց, 'ի զարհուրել մերոյն 'ի նոր օրինակ մարտէն, յայնժամ թշնամիք ստեան յանդգնաբար ընդ մէջ նոցա, և ելին ողջանդամ անվնաս։ Յաւուր յայնմիկ Կ. Լաբերիոս Դուրոս հազարապետ զօրու՝ սպանանի։ Նոքա՝ 'ի ժամանել խմբից բազմաց 'ի թիկունս, վանեալ վտանգին յերեսաց նոցա։

ԺԶ. Ի բովանդակ սոյն օրինակ մարտի, քանզի առաջի ամենեցուն էր պատերազմն և յանդիման Ճամբարին, ծանուցաւ զի մերքն, վասն զինուցն ծանրութեան, ոչ կարելով զվերջոտանեալսն հալածել, և ոչ իշխել 'ի դրօշուցն հեռանալ, ոչ յոյժ պատկանաւորք էին առ այսպիսի թշնամի. իսկ այրուձիոյն մեծաւ վտանգաւ էր պատերազմ, զի բազում անգամ և նոքին նենգաւ ընդ կրունկ դառնային, և յորժամ սակաւիկ մի զմերսն 'ի գումարտակացն մեկնէին, ստուցեալք 'ի կառացն՝ հետևոտս մաքառէին յանհաւասար մարտ։ Իսկ հեծելազօրունդ մարտին օրինակ՝ թէ 'ի նահանջելն և թէ 'ի վերայ երթալ՝ զնման նա և զնոյն իսկ հասուցանէր վտանգ։ Յաւել և զայն աստանօր, զի ոչ միախուռն համագունդ պատերազմէին, այլ ցիր և ցան ասա անդ, մեծամեծ միջոցօք 'ի միմեանց, և բանակետեղս ու-

նէին կարգեալս, և այլք զայլս առնուին հետզհետէ, և անխոնջք և նորք՝ վաստակելոցն յաջորդէին ։

ԺԷ. Ի վաղիւ անդր Թշնամիք 'ի բանակէն 'ի բացեայ կացին 'ի բլուրսն, և սկսան ցուցանել զինքեանս անօսուէնս, և Թուլագոյնս քան զերէկ՝ գրգռել 'ի պատերազմ զհեծեալսն մեր․ իսկ զմիջաւուրբն, մինչդեռ Կեսար առաքեաց զխոտոյ գունդս երիս, և զայրուձին համօրէն ընդ Կ․ Տրեբոնիոսի տեղակալին, յանկարծոյն յամենայն կողմանց սլացան 'ի վերայ Ճարակաքերացն, ոչ ինչ կարի մեկուսի 'ի դրօշուցն և 'ի գնդացն ։ Մերքն ուժգնաբար յարձակեալ 'ի նոսա՝ վանեցին, և ոչ դադարեցին 'ի հալածելոյ, մինչև 'ի Թիկունս օգնականութեան իւրեանց յուսացեալ այրուձիոյն, զի զկնի իւր զգումարտական տեսանէր, շտապ տագնապախուճապեցին զԹշնամիսն․ և ամբոխ մեծ 'ի նոցանէ սատակեալ, ոչ ոգի՝ ոչ տեղի առնլոյ ետուն պարապ, ոչ 'ի կառացն վաղելոյ ։ Ի խուճապէ աստի իսկ և իսկ 'ի նոյն ցրուեցան ամենեքեան որ յամենուստ ժողովեալ էին օժանդակք նոցա 'ի սատարութիւն ։ Եւ ոչ ևս յետ այնորիկ ամենայն զօրութեամբք մարտեան ընդ մեզ Թշնամիք ։

ԺԸ. Ծանուցեալ Կեսարու զխորհուրդս նոցա, խաղացոյց զզօրն յերկիրն Կասիւելաւնի՝ առ Տամեսիս գետով, որ 'ի միում տեղւոջ միայն ոտիւք է անցանելի, և այն ևս դժուարաւ ։ Հասեալ անդր՝ գիտաց զի յայնկոյս գետոյն մեծամեծ ամբոխութիւնք պատրաստեալ կային․ իսկ գետափինն՝ ծայրասուր ցցովք հաստեալովք ամրացեալ էր, և ցիցք նոյնգունակ ընդ ջրովն վարսեալք՝ ծածկէին 'ի գետոյն ։ Իբրև ծանեաւ Կեսար զայսոսիկ 'ի գերեաց և 'ի փախըստէից, արձակեալ յառաջոյ զայրուձին, հրամայեաց գումարտակացն վաղվաղակի զկնի անցանել․ այլ այնու արագութեամբ և սաստկութեամբ զհետ ընթացաւ զօրականն, գլխովք չափ ևեթ արտաքս երևելով 'ի ջրոյն, զի յարձակման գումարտակացն և այրուձիոյն ոչ ժուժկալեցին զդէմ ունել Թշնամիք, և Թողեալ զգետեզերսն՝ 'ի փախուստ աճապարեցին ։

ԺԹ. Կասիւելաւն, որպէս 'ի վեր անդր ցուցաք. զյոյս կռուոյ հատեալ բնաւ, զսպայակոյտ զօրսն արձակեալ և պահեալ հազարս չորս կառամարտկաց, պահէր զճանապարհս մեր, փոքր ինչ հեռի յուղւոյ, 'ի գծուարուտս և յափափայս թաքուցեալ, և յայն կողմանս՝ ընդ որս գիտէր մեզ անցանել՝ զխաշինս և զմարդիկ յագարակաց 'ի մայրիս վարէր. և երբեւ այրուձին մեր յաւար և յաւեր ազատ համարձակ 'ի դաշտս զեղոյր, ընդ ամենայն կիրճս ծանօթս և ընդ շաւիղս յանտառացն 'ի դուրս արձակէր զկառամարտիկսն, և մեծաւ վտանգաւ մերոց հեծելոցն՝ մարտնչէր ընդ նոսա. և առ այսր երկիւղի խափանէր զնոսա յառաւել ասպատակութենէ: Վասն այսորիկ՝ ոչ հեռագոյն 'ի սպայէ գունդմարտակացն ներէր Կեսար թափառել, և այնչափ եւեթ միայն հասանէր թշնամեաց յայրեացաւեր ագարակացն, որչափ գունդմարտակք ինքնին ոտիւք իւրեանց և ճգամբք գործել մարթէին:

Ի. Զայսու ժամանակաւ Տրինոբանտք, գաւառացն այնոցիկ գրեթէ քաղաք հաստահարուստ, յորմէ Մանդուբրատ պատանին մտեալ յուխտ Կեսարու՝ ելեալ եկեալ էր առ նա 'ի ցամաքն 'ի Գալլիա, — որոյ հայրն Իմանուէնտ արքայութիւն կալեալ էր 'ի նմին քաղաքի և սպանեալ 'ի Կասիւելաւնէ, և ինքն փախստեամբ 'ի մահուանէ ճողոպրեալ, — առնեն հրեշտակս առ Կեսար, և խոստանան անձնատուր առ նա լինել և զհրամանսն կատարել. խնդրեն պաշտպանել Մանդուբրատայ յանիրաւութենէն Կասիւելաւնի, և առաքել 'ի քաղաքն կալ նոցա զլուխ և ունել զտէրութիւնն: Հրամայէ նոցա Կեսար քառասուն պատանդս, և զօրուն ցորեան, և առաքէ առ նոսա զՄանդուբրատ: Առնեն նոքա վաղվաղակի զհրամանսն, պատանդըս ըստ համարոյն առաքեցին և ցորեան:

ԻԱ. Ի պաշտպանել Տրինոբանտաց և պահել յամենայն հարստահարութենէ զօր[...] Կենիմայք, Սեգոնտիակք. Անկալիտք. Բ[...] թիւնս առաքեալ՝ մտին 'ի հ[...]

տոցանէ ծանեաւ ոչ յոյժ հեռի 'ի տեղւոջէ անտի լինել զքաղաքն Կասիւելաւնի, մայրեօք և ճահճօք ամրացեալ. ուր ոչ սակաւ մարդկան և անասնոց հօյլք ժողովէին։ Իսկ քաղաք ամուր կոչէին բրիտանացիք յորժամ զզանխուլ մայրիս պատնիշաւ և փոսիւ ամրացուցանէին, ուր առ 'ի զգուշանալ 'ի հինէ Թշնամեաց սովոր էին ժողովիլ։ Անդր երթայ գումարտակօքն, գտանէ զտեղին 'ի բնութենէ և յարուեստէ ուժգին ամրացեալ. բայց դուն գործէ յերկոցունց կողմանց տալ ընդ նմա պատերազմ։ Թշնամիք սակաւիկ ինչ ժուժկալեալ՝ ոչ զօրեցին զդէմ ունել յարձակման մերոյ զօրականին, և ընդ այլ կողմն քաղաքին ելին արտաքս։ Բազում ջոկք անասնոց գտան անդ, և յոլովք 'ի փախչելն ըմբռնեալք սատակեցան։

ԻԲ. Մինչդեռ յայն տեղիս այսոքիկ լինէին, Կասիւելաւնոս 'ի Կանտիոն, զոր ծովափնեայ լինել ասացաք, 'ի գաւառսն յորս չորք Թագաւորք իշխէին, Կինգետորիքս, Կարուիլիոս, Տաքսիմագուլ, Սեգոնաքս, առաքէ պատգամաւորս, և հրաման տայ նոցա՝ զօրաժողով լինել համագունդ ամենայն զօրութեամբ, և յանկարծուստ անկանել 'ի վերայ բանակին նաւաց և տալ պատերազմ։ Սոքա իբրև հասին 'ի բանակն, յարձակեալ մերոցն 'ի դուրս՝ զբազումս կոտորեալ 'ի նոցանէ, ձերբակալ արարեալ և զքաջ զօրավարն Լուգոտորիքս՝ դարձուցին ողջանդամ զիւրեանս արեարն։ Կասիւելաւնոս, իբրև լու եղև այս կռիւ, և բազում վնասք որ հասին նմա, և աշխարհին աւերած, եւս առաւել 'ի նշկահելոյ քաղաքացն խռովեալ, 'ի ձեռն Ատրեբատացւոյն Կոմ. ոսի առաքէ դեսպանս առ Կեսար 'ի հնազանդութիւն նուաճութեան։ Կեսարու 'ի մտի եղեալ զձմեռն 'ի ցամաքի անցուցանել 'ի պատճառս յանկարծահաս ապմրկաց Գալլիոյ, և զի սակաւ ինչ կայր ամարայնոյ, և տեսանէր թէ մարթի յերկարաձգել իրացն, հրամայէ պատանդս, և որ ինչ ամի ամի տացէ Բրիտանիա հարկս ժողովրդեանն Հռովմայ։ Սաստէ և պատուէր տայ Կասիւելաւնի՝ մի ինչ խռովել զՄանդուբրատ և զՏրինոբանտս։

ԺԹ. Կասիւելան, որպէս 'ի վեր անդր ցուցաք, զյոյս կռուոյ հատեալ բնաւ, զաղայակոյս զօրսն արձակեալ և պահեալ հազարս չորս կառամարտաց, պահէր զճանապարհս մեր, փոքր ինչ հեռի յուղւոյ, 'ի դժուարուտս և յափափայս թաքուցեալ, և յայն կողմանս՝ ընդ որս գիտէր մեզ անցանել՝ զխաշինս և զմարդիկ յագարակաց 'ի մայրիս վարէր. և իբրև այրուձին մեր յաւար և յաւեր ազատ համարձակ 'ի դաշտս զեղոյր, ընդ ամենայն կիրճս ճանօթս և ընդ շաւիղս յանտառաց 'ի դուրս արձակէր զկառամարտիկսն, և մեծաւ վտանգաւ մերոց հեծելոցն՝ մարտնչէր ընդ նոսա. և առ այսր երկիւղի խափանէր զնոսա յառաւել ասպատակութենէ: Վասն այսորիկ՝ ոչ հեռագոյն 'ի սպայէ գումարտակացն ներէր Կեսար թափառել, և այնչափ եւեթ վնաս հասանէր թշնամեաց յայրեացւեր ագարակացն, որչափ գումարտակք ինքնին ոտիւք խուրեանց և ճգամբք գործել մարթէին:

Ի. Զայսու ժամանակաւ Տրինոբանտք, գաւառացն այնոցիկ գրեթէ քաղաք հաստահարուստ, յորմէ Մանդուբրատ պատանին մտեալ յուխտ Կեսարու՝ եկեալ եկեալ էր առ նա 'ի ցամաքն 'ի Գաղլիա, — որոյ հայրն Իմանուէնտ արքայութիւն կալեալ էր 'ի նմին քաղաքի և սպանեալ 'ի Կասիւելանէ, և ինքն փախստեամբ 'ի մահուանէ ճողոպրեալ, — առնեն հրեշտակս առ Կեսար, և խոստանան անձնատուր առ նա լինել և զհրամանսն կատարել. խնդրեն պաշտպանել զՄանտուբրատայ յանիրաւութենէն Կասիւելանի, և առաքել 'ի քաղաքն կալ նոցա գլուխ և ունել զտէրութիւնն: Հրամայէ նոցա Կեսար քառասուն պատանդս, և զօրուն ցորեան, և առաքէ առ նոսա զՄանդուբրատ: Առնեն նոքա վաղվաղակի զհրամանսն, պատանդըս ըստ համարոյն առաքեցին և ցորեան:

ԻԱ. Ի պաշտպանել Տրինոբանտից և պահել յամենայն հարստահարութենէ զօրականին, անդէն Կենիմայնք, Սեգոնտիակք, Անկալիտք, Բիբրոկք և Կասք հրեշտակութիւնս առաքեալ՝ մտին 'ի հնազանդութիւն Կեսարու: Ի

տուցանէ ծանեաւ ոչ յոյժ հեռի 'ի տեղւոջէ անտի լինել զքաղաքն Կասիւելաւնի, մայրեօք և ճահճօք ամրացեալ, ուր ոչ սակաւ մարդկան և անասնոց հոյլք ժողովէին։ Իսկ քաղաք ամուր կոչէին բրիտանացիք յորժամ զգանխուլ մայրիս պատնիշաւ և փոսիւ ամրացուցանէին, ուր առ 'ի զգուշանալ 'ի հինէ թշնամեաց սովոր էին ժողովիլ։ Անդր երթայ գումարտակօքն, գտանէ զտեղին 'ի բնութենէ և յարուեստէ ուժգին ամրացեալ. բայց գուն գործէ յերկոցունց կողմանց տալ ընդ նմա պատերազմ։ Թշնամիք սակաւիկ ինչ ժուժկալեալ՝ ոչ զօրեցին զդէմ ունել յարձակման մերոյ զօրականին, և ընդ այլ կողմն քաղաքին ելին արտաքս։ Բազում ջոկք անասնոց գտան անդ, և յոլովք 'ի փախչելն ըմբռնեալք սատակեցան։

ԻԲ. Մինչդեռ յայն տեղիս այսուքիկ լինէին, Կասիւելաւնոս 'ի Կանտիոն, զոր ծովափնեայ լինել ասացաք, 'ի գաւառսն յորս չորք թագաւորք իշխէին, Կինգետորիքս, Կարուիլիոս, Տագսիմագուլ, Սեգոնաքս, առաքէ պատգամաւորս, և հրաման տայ նոցա՝ զօրաժողով լինել համագունդ ամենայն զօրութեամբ, և յանկարծուստ անկանել 'ի վերայ բանակին նաւուց և տալ պատերազմ։ Սոքա իբրև հասին 'ի բանակն, յարձակեալ մերոցն 'ի դուրս՝ զբազումս կոտորեալ 'ի նոցանէ, ձերբակալ արարեալ և զքաջ զօրավարն Լուգոտորիքս՝ դարձուցին ողջանդամ զիւրեանց որեարն։ Կասիւելաւնոս, իբրև լու եղև այս կռիւ, և բազում վնասք որ հասին նմա, և աշխարհին աւերած, եւս առաւել 'ի նշկահելոյ քաղաքացն խռովեալ, 'ի ձեռն Ատրեբատացւոյն Կոմմոսի առաքէ դեսպանս առ Կեսար 'ի հնազանդութիւն նուաճութեան։ Կեսարու 'ի մտի եղեալ զձմեռն 'ի ցամաքի անցուցանել 'ի պատճառս յանկարծահաս աղմըկաց Գաղղիոյ, և զի սակաւ ինչ կայր ամարայնոյ, և տեսանէր թէ մարթի յերկարաձգել իրացն, հրամայէ պատանդս, և որ ինչ ամի ամի տացէ Բրիտանիա հարկս ժողովրդեանն Հռովմայ։ Սաստէ և պատուէր տայ Կասիւելաւնի՝ մի ինչ խուել զՄանդուբրատ և զՏրինոբանտաս։

ԻԳ. Առեալ զպատանդսն՝ դարձոյց զզօրն 'ի ծով, եգիտ նորոգեալ զնաւսն: Զսոսա իջուցեալ 'ի ծով, հաստատեաց զմիտս իւր կրկին գործիւք տանել անդրէն զզօրսն, զի և գերեաց ամբոխ յոյժ էր նորա, և ոմանք 'ի նաւացն մրրկածուփ կորուսեալ էին: Եւ դէպ այնպէս եւս, զի յայնքան բազմութենէ նաւաց, յայնչափ նաւարկութիւնս, ոչ այս ամ և ոչ հերու, ամենևին և ոչ մի 'ի սպայակիր նաւուցն պակասեաց. այլ յայնցանէ որ դատարկ առաքէին առ նա 'ի ցամաքէն, և որ զառաջնոյ անցից զզօրականն հանեալ դառնային, և յորոց ապա Լաբիենոս տուեալ էր շինել՝ 'ի թիւ վաթսուն, նուազունք ոմանք ժաման եղեն 'ի կէտ նպատակին, այլք դրեթէ առ հասարակ զարկան 'ի ծովեզերս. որոց վայր մի սպասեալ Կեսար 'ի նանիր, զի մի կորուսցէ զժամանակ նաւարկութեանն, քանզի մերձ էր ժամանակ հասարակածին, հարկաւ յանձկի զետեղեցոյց զզօրականն, և բազում հանդարտութիւն գտեալ՝ խարիսխ առեալ 'ի մուտս երկրորդ պահուն, ընդ արշալուշսն եհաս յերկիր՝ զամենայն զնաւսն ողջանդամ ածեալ:

ԻԴ. Հանեալ զնաւսն 'ի ցամաք, և ժողով արարեալ գաղղիացւոց 'ի Սամարոբրիվա, քանզի զայն ամ վասն երաշտին ցորեան նուազ եղեալ էր 'ի Գաղղիա, ստիպեցաւ այլազգ քան յառաջին ամսն նստուցանել զզօրն 'ի ձմերոց, և զգունդսն 'ի բազում քաղաքս բաժանել. յորոց զմին ետ Կ. Փաբիոսի տեղակալի ածել 'ի Մորինս. զերկրորդն՝ Կ. Կիկերոնի 'ի Ներուեանս. զերրորդն՝ Լ. Ռոսկիոսի յԵսուեանս. զչորրորդն՝ 'ի Հռեմեանս հրամայեաց ձմերել ընդ Տ. Լաբիենոսի 'ի սահմանակցութեան Տրեւիրաց. զերիս առ բելգացիսն զետեղեաց. սոցա ոստիկան կացոյց ըզտեղապահսն զՄ. Կրասսոս զգանձապահն, և զԼ. Մունատիոս Պղանկոս, և զԿ. Տրեբոնիոս: Զմի զայն գումարտակ՝. զոր յայն կոյս Պադոսի նորոգ արարեալն էր, և հինգ խումբս՝ յղեաց առ Եբուրոնս, որոց մեծ կէս մասն կայ ընդ Մոսա և ընդ Հռենոս, որք և էին ընդ ձեռամբ Ամբիորիքսի և Կադիվուլկայ. այսմ զօրականի վերակացուս հրամայեաց

զԿ. Տիտուրիոս սաբինեցի և 'զԼ. Աւրունկուլէիոս Կոտտա զտեղակալսն։ Սոքին բաժանմամբ գնդացն համարեցաւ դիւրեաւ դարման տանել կարօտութեան պարենի. և առկայն ձմերոցք այսր ամենայն գումարտակաց, — բայց միայն զոր տուեալն էր Լ. Ռոսկիոսի տանել 'ի հաշտ և 'ի հանգստաւէտ կողմն, — կային բովանդակ 'ի միջոցի տասն բիւր քայլից։ Իսկ ինքն եդ 'ի մտի մնալ 'ի Գալլիա առ ժամանակն՝ մինչև զգունդսն զետեղեցուսցէ և զձմերոցսն տեսցէ ամրացեալս։

ԻԵ. Էր 'ի Կարնուտս մեծազգի ոմն Տասգետիոս անուն, որոյ նախնիքն 'ի քաղաքի իւրեանց արքայութեան համեալ էին։ Սմա Կեսար, վասն առաքինութեանն և ընդ իւր բարեկամութեան, զի և յամենայն պատերազմունս իւր 'ի փոյթ խնամոց նորա վայելեալ էր, զգահ նախահարցն էր շնորհեալ։ Մինչդեռ զերրորդ ամ արքայութեանն վարէր, թշնամիքն առաջնորդ ունելով զբազումս 'ի քաղաքէն՝ սպանին հրապարակաւ։ Պատմեցաւ այս Կեսարու. նորա զանգիտեալ՝ թէ յոգունց մասն գուցէ յիրին, զի մի 'ի նոցանէ գրգմանէ վտարանջեսցէ քաղաքն, հրամայեաց Լ. Պղանկոսի գնդաւն հանդերձ փութանակի 'ի բելգացւոց 'ի Կարնուտս խաղալ, անդ ձմերել. և ընդ որոց ձեռն իմասցի սպանեալ զՏասգետիոս, զնոսա ըմբռնեալ առ ինքն առաքեսցէ։ Զնովին ժամանակաւ յամենայն տեղակալաց և գանձապահաց որոց զգունդսն էր աւանդեալ, տեղեկացաւ զի ժամանեալ էին 'ի ձմերոցսն, և ձմերոցացն տեղիք ամրացեալք։

ԻԶ. Էին աւուրք իբրև հնգետասան զի եկեալ էաք 'ի ձմերոց, և ահա յանկարծակի ապստամբութեան սկիզբն և վտարանջութեան ծագեցաւ յԱմբիորիգսէ և 'ի Կատիվուլկայ, որք զի 'ի գլուխս սահմանաց արքայութեան իւրեանց հուպ անդ առ ձեռն կային Սաբինեցւոյն և Կոտտայի, և բերէին ցորեան 'ի ձմերոցն, 'ի դեսպանաց Ինդուտիոմարի Տրեւիրացւոյ գրգռեալք, դրդեցին զարս իւրեանց, և հապճեպ հարստահարեալ զփայտակոտս մեր,

բազմաձեռն գնդաւ եկին մարտ ընդ Ճամբարին դնել։ Իբրև մերքն նոյնհետայն 'ի զէն ընթացեալ և 'ի պատուարն ելանէին, և 'ի միոյ կուսէ զսպանիացի այրուձին 'ի դուրս արձակեալ՝ 'ի հեծելագունդ ասպարիսին յաղթող լինէին. յուսահատեալ թշնամեաց՝ յետս կոչեցին զարսն 'ի կռուոյն։ Յայնժամ ըստ սովորութեան իւրեանց հարին ամբոխ աղաղակ, ելանել գալ ոմանց 'ի մերոցն առ 'ի խօսել. քանզի ինչ են մեր, ասեն, և կամիմք 'ի մէջ առնուլ զհասարակաց իրացս, որովք ակն ունիմք նուաղել հակառակութեանցս։

ԻԷ. Առաքի առ նոսա բանագնաց լինել՝ Կ. Կարպինէոս ասպետ հռովմայեցի ընտանի Կ. Տիտուրիոսի, և Կ. Յունիոս ոմն 'ի Սպանիոյ, որ երբեմն յառաջագոյն առաքեալ 'ի Կեսարէ առ Ամբիորիքս՝ սովոր էր երթևեկել։ Առ սոսա զայս օրինակ խօսել կալաւ Ամբիորիքս. Ինձ՝ վասն երախտեաց Կեսարու առ իս՝ մեծապէս պարտ է խոստովան լինել նմա. զի 'ի նորա խնամոց ազատեցայ 'ի հարկէն զոր սովոր էի հարկանել Ադուատիկաց սահմանորդացս, և զի իմ որդին և եղբօրորդեակ արձակեցան 'ի ձեռն Կեսարու, որք 'ի պատանդս առաքեալ էին առ Ադուատիկս, և նոքա 'ի ծառայութեան կալան առ իւրեանս, և 'ի կապանս ևս արկին. և զոր ինչ 'ի մարտ Ճամբարին արարի, ոչ իմով ինչ խորհրդով կամ կամաւ գործեցի, այլ 'ի քաղաքէն ստիպեալ. և իմ իրաւունք իշխանութեան այնչափ են 'ի վերայ ռամկին, որչափ ռամկին յիմ վերայ. իսկ քաղաքին 'ի պատերազմ ձեռնարկելոյ այս էր պատճառ, զի յանկարծական միաբանութեան գաղղիացւոց ոչ զօրէր հակառակ կալ. զայս յիմմէ նուազութենէս կարեմ ցուցանել, զի չեմ այնքան անհմուտ իրաց, մինչև վստահել իմով զօրօքս յաղթել հռովմէական ժողովրդեան. այլ համօրէն Գաղղիոյ մի խորհուրդ է. այս օր ժամ եդեալ է հարկանել զամենայն ձմերոցս Կեսարու, զի մի՛ գունդ մի միւսում գնդի 'ի թիկունս ժամանել կարասցէ. և չէ դիւրին գաղղիացւոյ զլանալ ինչ գաղղիացւոց, մանաւանդ ուր զհասարակաց ազատութիւն զքուամբ ածելոյ խնդիրք երևէին։ Եւ զի նոցա

զգթութեան պարտս հատուցի, մինչ ինձ արդ իրաւ առնել պատշաճութեան. փոխարէն ընդ բարերարութեանցն Կեսարու՝ ազդ առնել և աղաչել զՏիտուրիոս վասն ասպընջականութեանն՝ փոյթ և հոգ տանել 'ի փրկութիւն իւր և զօրացն. զի վարձուոր ամբոխ մեծ գերմանացւոց անցեալ են յայսկոյս Հռենոսի, և երկօրեայք այսր հասանեն. ձեզ անկ է խորհել, թէ կամիցի՞ք արդեօք, մինչև սահմանակցաց զգաստ լեալ՝ հանել 'ի ձմերոցէդ զզօրսդ և առ Կիկերոն կամ առ Լաբիենոս յղել, որոց մին գրեթէ յիսուն հազար քայլ՝ միւսն աւելի ինն ևս հեռի է: Իմ զայս խոստացեալ և երդմամբ հաստատեալ, զի տայց անկասկած ճանապարհ ընդ երկիր իմ. զայս արարեալ, և քաղաքիս խնամակալ լինիցիմ, զի թեթևացի 'ի ձմերոցէդ, և Կեսարու ըստ արժանի երախտեացն շնորհակալ գտանիցիմ: Զայս խօսեալ Ամբիորիքս՝ 'ի բաց մեկնեցաւ:

ԻԸ. Կարպինէոս և Յունիոս զոր լուանն պատմեն տեղակալաց. Նոցա 'ի յանկարծադէպ իրացն խռովեալ, թէպէտ և յառնէ թշնամւոյ լուեալ, սակայն ոչ անփոյթ առնել պարտ վարկան. և այն առաւել տատանէր զնոսա, զի չէր ինչ հաւատալի թէ քաղաք մի անարգ և նուաստ որպէս զԷբուրոնացն՝ ինքնակամ յանդգնեալ իցէ մարտ դնել ընդ հռովմէական ժողովրդեան: Վասն որոյ յատեան հանեալ զխնդիրն, լինի բազում հակառակութիւն 'ի մէջ նոցա: Լ. Աւրունկուլէոս և բազում հազարապետք զօրուն, և յառաջնոց դասուցն հարիւրապետք, ոչ արժան դատէին յանդուգն ինչ գործել, և ոչ մեկնել 'ի ձմերոցէն անհրաման 'ի Կեսարէ. և եթէ զձմերոցն ամրացուսցեն, հնարաւոր առէին զդէմ ունել և մեծաստատ ամբոխի գերմանացւոց. և այսմ վկայ, զի առաջնում յարձակման թշնամեաց քաջապէս ժուժկալեցին՝ հարուածս բազումս հասուցեալ նոցա: Ցորենոյ ոչ կարօտիմք. և 'ի մերձակայ ձմերոցացս և 'ի Կեսարէ հասցեն մեզ թիկունք. հուսկ ապա՝ զի՞նչ քան զայս թեթևութիւն և ծանականք, բանիւ թշնամւոյն զմեծ և զկարևոր իրացս առնուլ խորհուրդ:

ԻԹ. Այսմ հակառակ աղաղակէր Տիտուրիոս. Տարաժամ լիցի գործդ՝ յորժամ բազմաձեռն թշնամիք հանդերձ գերմանացւովք 'ի մի վայր կուտեսցին, կամ թէ աղէտ ինչ մերձաւոր ձմերոցացս հասանիցէ. սուղ է ժամանակս խորհելոյ. զԿեսար համարիմ գնացեալ յԻտալիա, ապա թէ ոչ՝ ոչ Կարնուտք մտաբերէին սպանանել զՏասգետիոս, և ոչ՝ եթէ նա մերձ էր, այսպէս քամահելով զմեզ՝ արշաւէին Եբուրոնք 'ի բանակ մեր. մի 'ի բան թշնամւոյն, այլ յիրն հայեսցուք. հուպ աստ առ մեզ է Հռենոս. կարի արտառուչ են գերմանացիք ընդ մահ Արիովիստոսոյ և ընդ առաջին յաղթանակս մեր. 'ի հուր բորբոքեալ է Գաղլիա այսչափ նախատակոծ նուաճեալ ընդ տէրութեամբ հռովմէական ժողովրդեան, շիջելափառ անկեալ 'ի նախկին զինուորական պարծանացն. հուսկ ուրեմն ով 'ի միտս իւր հաւանեսցի, թէ 'ի կարծ ինչ և ոչ իրացն հաւաստեօք գայցէ Ամբիորիքս 'ի խորհուրդ մի այսպիսի: Իմ խորհուրդ յերկոսին կողմանս իսկ աներկեան է. եթէ չիք ինչ առաջի դժնեայ, անվտանգ հասանիցեմք առ մօտաւոր գումարտակն. եթէ Գաղլիա ողջոյն ընդ գերմանացիս միաբանեալ իցէ, մի և եթ փրկութեան յոյս՝ յարագութեան է: Իսկ Կոտտայի և արոց ընդ նմա այլադգ խորհիցին, զինչ ելս ունիցին խորհուրդք. յորում եթէ ոչ առժամայն ինչ վտանգ, գոյ սակայն երկիւղ սովոյ յերեսաց երկար պաշարման:

Լ. Այս յերկոցունց կողմանցն վճարեալ պայքար, յուժգին հակառակել Կոտտայի և նախապատուի կարգացն. Յաղթեցէք, ասէ Սաբինեցին, եթէ զայդ կամիք. և զայս 'ի ձայն բարձր, մինչև լսել մեծի մասին զօրացն. և ոչ այն ինչ ոք եմ, ասէ, որ 'ի վտանգէ մահու առ 'ի ձէնջ՝ զարհուրիցիմ. սոքա գիտասցեն, և եթէ խիստ ինչ պատահեսցէ, 'ի քէն պահանջեսցեն համար. որք եթէ տայցի 'ի քէն օճան՝ 'ի միւս վաղիւ խառնեալ ընդ մօտակայ ձմերոցն՝ զհասարակաց պատահարն ընդ այլոց 'ի միասին բառնայցեն, և ոչ մեկուսի և վտարանդի յոյժ յայլոց՝ սրով կամ սովով վախճանիցին:

ԼԱ. Ցառնեն 'ի ժողովս, և կալեալ զձեռաց երկոցունց աղաչեն, մի՛ իւրեանց երկպառակութեամբն և յամառութեամբ յանհնարին վտանգ արկանել զիրս. գործ մի դիւրին է, ասեն, եթէ մնասցուք և եթէ երթիցուք, միայն թէ միահամուռ միախորհուրդ լինիցիմք և 'ի հաւան գայցեմք. իսկ յանմիաբանութեան և ոչ մի ինչ յոյս փրկութեան նշմարեմք: Խնդիրն վիճեալ յերկարաձգի մինչև ցմէջ գիշեր. հուսկ ապա շարժեալ Կոտտայի՝ ձեռն տայ հաւանութեան. յաղթէ խորհուրդ Սաբինեցւոյն, սահմանեն գնալ ընդ առաւօտն: Մնացեալ գիշերոյն 'ի գիշերապահս ծախի, իւրաքանչիւր զինուորի յիւրսն ուշ արարեալ, թէ զինչ ընդ իւր տանել կարիցէ, զինչ 'ի ձմերոցին կահուց թողուլ ստիպիցի: Թուէր թէ զամենայն ինչ խորհիցին առ 'ի չմնալոյ անդ առանց վտանգի, և առ սաստկանալ վտանգի չուոյն 'ի պարտասելոյ և 'ի տքնութեանց զօրականին: Այգուցն ելանեն 'ի բանակէն որպէս եթէ հաւանեալք էին՝ ոչ յառնէ թշնամւոյ տուեալ զխորհուրդն, այլ 'ի մեծ բարեկամէ յԱմբիորիգեսէ, երկայնաձիգ կարաւանաւ և մեծամեծ աղխիւք:

ԼԲ. Բայց թշնամիք 'ի գիշերային ձայնիցն և տքնութեանց իրազեկ եղեալ չուոյն, 'ի կրկին տեղիս դարան գործեալ յանտառս 'ի դիպան և 'ի գաղտնի վայրի ուրեք, քայլս որպէս թէ երկու հազար հեռի 'ի մերոց զօրականաց, մնային գալստեան հռովմայեցւոց. և իբրև յոլովագոյն մասըն կարաւանին էջ 'ի խորաձոր մի մեծ, յերկոցունց կողմանց հովտին յանկարծուստ իմն ելին երևեցան, սկսան տագնապել զվերջինսն, և զառաջինսն խափանել յելանելոյ, և յանհնարին դժնդակագոյն տեղւոջ մերոցն՝ տալ ընդ նոսա պատերազմ:

ԼԳ. Անդ ապա հուսկ ուրեմն Տիտուրիոս, որպէս զի և ոչ ինչ նախատես եղեալ էր, 'ի շտապ տագնապի մտեալ, այսր անդր ընթացեալ՝ զխումբսն կարգաւորէր, բայց և զայն՝ ահ ընդ ահ, և որպէս թէ յամենայնէ ցականեալ. որ յաճախ պատահէ այնոցիկ, որ անդէն 'ի ձեռնարկել գոր-

ծոյն հարկին խորհել։ Իսկ Կոստա, որոյ զմտաւ ածեալ էր թէ մարթի իմն այսպիսի դիպուած զճանապարհայն պատահել, և վասն այնորիկ չէր լեալ պատճառ երթին, 'ի հասարակաց անդ փրկութեան ոչինչ ամենևին նշկահէր, և 'ի կարգալ և քաջալերել զզօրականն՝ գործ զզօրավարի, իսկ 'ի մարտին՝ զզինուորի կատարէր։ Եւ զի առ երկայնութեան կարաւանին ոչ էր դիւրին. անձամբ ընդ բնաւս անցանել, և ըստ տեղւոյն իւրաքանչիւր զպէտս հոգալ, հրաման ետուն քարոզ կարդալ, զի զկարաւանն 'ի բաց ընկեցեալ յանձանց՝ 'ի մի բոլոր բովանդակ ամենեքեան կազմեսցին. խորհուրդ՝ որ յայսպիսի դիպուածս ոչ է պարսաւելի, բայց ստէպ անպատեհ գտաւ. զի և 'ի մերմէ զօրականէն ըզյոյժ նուազեցոյց, և զթշնամիսն ժրացոյց 'ի կռիւ, զի ոչ առանց մեծի երկիւղի և անյուսութեան տեսանէին զայն գործեալ։ Թո՛ղ զայգ, դիպաւ և այլ ինչ՝ որում հարկ էր լինել, զի զինուորք առ հասարակ 'ի դրօշուցն օտարեցան, և որ ցանկալի ուրուք ինչ էր 'ի կարաւանին, զայն խնդրել և թափել փութացան, և աղաղակաւ և ողբովք լցաւ ամենայն։

ԼԴ. Բայց խժդժիցն ոչ պակասեաց իմաստութիւն. զի պէտք նոցա հրամայեցին պատուէր տալ ընդ ճակատն համօրէն, մի՛ ումեք խլրտել 'ի տեղւոջէն. զի իւրեանց է առ և ապուռն, և նոցա պահի որ զինչ և թողուցուն հռովմայեցիք. զամենայն ինչ 'ի յաղթութեանդ համարեսջիք։ Մերքն հաւասարք էին թուով և քաջութեամբ 'ի պատերազմ, թէպէտ և լքեալք 'ի զօրագլխէ և 'ի բաղդէն. Յհամայն զամենայն յոյս փրկութեան 'ի քաջութեան դնէին. և որ խումբ յո՛ր կոյս և յարձակէր, անդ ամբոխ մեծ անկանէր 'ի թշնամեաց։ Պատուէր ետ կարդալ Ամբիորիքս, 'ի հեռուստ արդնընկէց լինել, և մի՛ մօտ երթալ. և յոր կողմ հռովմայեցիքն արշաւիցեն, անտի տեղի տալ, զի թեթևազէն շահատակութեամբ և սովորական կրթութեամբ ոչ է մարթ սանանել ինչ նոցա. այլ անդրէն 'ի դառնալ նոցա յետս առ դրօշուն, երթայք 'ի վերայ նոցա։

ԼԵ. Նոցա զայս պատուէր ամենայն խնամով պահել,

յորժամ խումբ մի 'ի բոլորակէն արտաքս ելեալ 'ի կռիւ-գիմէր, հապճեպ տագնապաւ փախչէին Թշնամիք. յայնժամ հարկ էր այնր կողման պատառել և մերկանալ, և 'ի կողաց անտի փետեկելոց՝ 'ի ներքս խուժել աշտէից: Իսկ յորժամ դարձեալ անդրէն 'ի նոյն խռնեալ և խրամատեալ տեղին յետս ընկրկէին, և 'ի փախստականաց անտի և 'ի մերձակայից պատեալ պաշարէին. իսկ եթէ զոտս 'ի բոյս հարեալ կալ և զտեղին ալինգ ունել կամէին, ոչ քաջութեան տեղի մնայր, և ոչ 'ի խռան անդ իւրեանց կուռ կացեալ՝ 'ի զէնուցն յայնքան 'ի մեծ բազմութենէն արձակելոց՝ ճողոպրել գոյր հնար: Սակայն յայնչափ 'ի բազում նեղութեանց չարչարեալք և շատ իսկ վէրս առեալ՝ զդէմ ունէին. և զմեծ կէս տուընջեանն անցուցեալ, յայգուէ մինչև յութերորդ ժամ պատերազմեալք, և ոչ մի ինչ անարժան անձանց իւրեանց գործէին: Անդ Տ. Բալուենտիոս, այրն քաջ և մեծազօր, որ հերու նախաշաւէն առաջնորդ կացեալ էր երրորդի աշտէնաւոր դասուն, խոցի մինդաշար յերկոսին 'ի զիստս իւր: Լ. Լուկանիոս՝ նորին սակի այր, 'ի հասանելն 'ի թիկունս որդւոյն իւրոյ պաշարելոյ՝ սպանանի: Լ. Կոտտա տեղակալն, 'ի քաջալերելն զխումբս ամենայն և զդասս՝ դէպուղիղ զբերանն պարսաքարեալ վիրաւորի:

ԼԶ. Ցայսցանէ վրդովեալ Կ. Տիտուրիոս, և տեսեալ զԱմբիորիքս խրախոյս կարդայր իւրոցն, զթարգման իւր զԿն. Պոմպէոս արձակէ առ նա՝ աղաչել, զի յինքն և 'ի զօրսն խնայեսցէ: Նա պատասխանի տայ առ ձայն բարբառոյն. Եթէ ընդ իւր խօսել կամիցի, մարթի. ակն ունի զի որ ինչ 'ի փրկութիւն զօրականին է, շնորհեսցի նմա յամբոխէն. իսկ նմա՝ ոչ ինչ առնիցի մնաս. և այսմ՝ զիւր հաւատն խոստանայր միջնորդ երաշխաւոր: Նա յայնժամ խօսի ընդ վիրաւորին Կոտտայի, զի թէ հաճոյ թուեսցի՝ ելեալ ըստ խազմն 'ի միասին խօսեսցին ընդ Ամբիորիքսի. յուսամ, ասէ, թէ մեզ և զօրականին շնորհեսցի փրկութիւն: Կոտտա չառնու յանձն երթալ առ զինեալ թշնամին, և 'ի նոյն միտս կայ հաստատուն:

ԼԷ. Սաբինեցին՝ որոց անդ առժամն զիւրև կային հա-զարապետք զօրու, և հարիւրապետաց առաջնոցն գնացեալ՝ հրաման տայ գալ զկնի իւր. և իբրև մերձ յԱմբիորիգէս մա-տեաւ, հրամայեալ զէնընկէց լինել, առնէ զհրամանն, և իւրոցն պատուիրէ զնոյն առնել։ Անդէն մինչդեռ զպայմա-նացն բանս ընդ միմեանս լինէին, և Ամբիորիգէս կամաւ ըն-դխօսսն երկայնեաց, ոտն առ ոտն շուրջանակի 'ի մէջ փա-կեալ սպանանի։ Յայնժամ որպէս սովոր են՝ յաղթութիւն հռչակեն և զօղանջիւն ամբառնան, և 'ի մերսն գրոհ տուեալ՝ զկազմն շփոթեն։ Անդ Լ. Կոտտա մարտուցեալ՝ մեռանի հանդերձ մեծաւ մասամբ զօրականին. այլք 'ի բանակին սա-տի եկեալ էին՝ դարձ առնեն. յորոց Լ. Պետրոսիդիոս Ա-ծուեկիր՝ տագնապեալ 'ի մեծ բազմութենէ թշնամեաց ըն-կէց զարծուենշանն 'ի խորաձոր անդր, ինքն առ Ճամբարին արիաբար պատերազմեալ սպանանի։ Այլք հազիւ մինչև 'ի գիշեր ժուժկալեալ մարտին, 'ի գիշերին ամենեքեան մի-բան 'ի միասին, անյոյս լեալ 'ի փրկութենէ, զիւրովքն եր-թան։ Սակաւք ոմանք զերծեալք 'ի կռուոյն՝ անծանօթ ճանապարհօք ընդ անտառս առ Տ. Լաբիենոս տեղակալն 'ի ձմերոց հասանեն, և պատմեն նմա զանցս իրացն եղելոց։

ԼԸ. Այսու յաղթանակաւ հպարտացեալ Ամբիորիգէս, անդէն վաղվաղակի դիմէ այրուձիովն յԱդուատուկս՝ սահ-մանակիցս իւրում իշխանութեանն. ոչ զտիւ, ոչ զգիշեր հանգիստ առեալ, և հետևակացն պատուէր տուեալ գալ զկնի իւր։ Յուցեալ զիրացն հաւաստիս և զԱդուատուկան գրգռեալ, 'ի վաղիւ անդր խաղայ հասանէ 'ի Ներուեանս, և յորդորէ՝ մի՛ զյաւիտենական ազատութեան իւրեանց և զքէն վրիժուցն 'ի հռովմայեցւոց անտի հանելոյ փոխանակ անիրաւութեանցն կրելոց, զպատեհ ժամանակն կորուսա-նել. Կրկին տեղապահք, ասէ, մեռան, և զմեծ մասն զօ-րուն ցուցանէ սատակեալ. և թէ ոչ ինչ դժուարին է իսկ և իսկ հարկանել սատակել և զգունդն որ ընդ Կիկերոնի ձմերէ. յայն գործ և զինքն օգնական խոստանայ։ Սովին բանիւք դիւրաւ զՆերուեանսն ածէ 'ի հաւան։

ԼԹ. Եւ ապա նոյնհետայն պատուիրակս արձակեալ առ Կենդրոնս, Գրուտեանս, Լեւակս, Պլեւմոսս, Գորդունս, որ առ հասարակ ընդ նոցա իշխանութեամբ են, զօրաժողով լինին մեծազօր ձեռամբ, և ելանեն յանկարծակի 'ի ձմերոցն Կիկերոնի, մինչ չև էր հասեալ առ նա գոյժ մահուանն Տիտուրիոսի։ Սմա ևս այն որ հարկն էր պատահեաց. զի ոմանք 'ի զօրականէն, որոց 'ի պէտս փայտի և ամրութեան 'ի մայրիսն հեռացեալ էր, յանակնկալ հինէ այրուձիոյն ըմբռնեցան։ Ի պաշարել սոցա, Եբուրոնք, Ադուատիկք, Ներուեանք, և սոցա ամենեցուն ընկերք և որ ընդ ձեռամբ իւրեանց, սկսանին ընդ գնդին պատերազմել։ Մերոցն փութապէս 'ի զէն ընթացեալ, 'ի պատնէշն ելանեն։ Մեծաւ նեղութեամբ հազիւ այն օր ժուժկալեն, զի թշնամիք զբնաւ յոյս անկնկալութեան իւրեանց յերագութեան գնէին, և եթէ զայս յաղթութիւն տարցին, յուսային միշտ այնուհետև յաղթօղ լինել յաւիտեան։

Խ. Անդէն վաղվաղակի առաքէ Կիկերոն դիր առ Կեսար՝ մեծամեծս արկեալ փոխարէնս պարգևաց եթէ տարեալ հասուսցեն։ Քանզի ճանապարհք ամենայն կալեալ էին, առաքեալքն անկանէին 'ի ձեռս թշնամեաց։ Ի նիւթոյ անտի զոր 'ի պէտս ամրութեան կուտեալ էին, կանգնեն աշտարակս հարիւր և քսան անհնարին արագութեամբ. որ ինչ պակաս երևէր գործոյն՝ կատարեն։ Թշնամիք 'ի վաղիւ անդր բազմախուռն ևս ժողովեալ զօրս՝ մարտ գնեն և լնուն զփոսն։ Մերքն նովին օրինակաւ որով յառաջնում աւուրն՝ դիմակալ լինին. զնոյն առնեն այնուհետև և յայլ աւուրս։ Վայրիկ մի գիշերայնոյն ոչ խափանի գործն. ոչ հիւանդաց, ոչ վիրաւորաց շնորհի հանգիստ։ Որ ինչ առաջիկայ աւուրն պէտք էին 'ի կռիւ, գիշերայն պատրաստի. բազում հեծանք այրաասուրք և հրափորձք [1], բազմաթիւ աշտեայք պարսպապահք հանդերձին. տախտակամած յօ-

---

1 Զոր 'ի զէն վարէին։ Իսկ աշտեայք պարսպապահք, էին մեծ և ծանր տէգք՝ զոր վարէին որք կային 'ի պահ պարսպացն 'ի վերուստ։

րինին մարտկոցք, և մահարձանք, և լանջաբերձ բաղբիք ողորահիւս վանդակեալ ցանկին: Ինքն իսկ Կիկերոն անօսրն առողջութեամբ, և ոչ զգիշերային ժամն թողոյր 'ի հանգիստ, թէպէտ և մատուցիւր միաբան թախանձէր զնա զօրականն խնայել յանձն իւր:

ԽԱ. Յայնժամ զօրավարք և իշխանք Ներուեանց, որոց բանից կցորդութիւն ինչ էր և աղերս բարեկամութեան ընդ Կիկերոնի, Կամիմք, ասեն, խօսել ինչ ընդ քեզ: Եւ համարձակեալ նմա, զնոյն զոր Ամբիորիգէս ընդ Տիտուրիոսի խօսեցեալ էր՝ 'ի մէջ էառ. թէ Գաղղիա բովանդակ զինեալ կայ, գերմանացիք անցեալ են ընդ Հռենոս. Կեսարուն և այլոց ամենեցուն ձմերոցք հարկանին մարտիւ պատերազմաւ: Յաւելուն և զմահուանէ Սաբինեցւոյն: ԶԱմբիորիգէս 'ի մէջ առնուն 'ի հաւատարմութիւն բանիցն: Խաբին, ասեն, որք օգնականութեան իմիք ակն ունին յայնցանէ՝ որ յիրաց իսկ իւրեանց յուսահատքն իցեն. համայն և այնպէս՝ նոցա սիրտ ընդ Կիկերոնի և ընդ ժողովրդեան Հռովմայ այս է, զի ոչինչ զլանան նոցա՝ բայց եթէ միայն զձմերոցս, և ոչ առնուն յանձն՝ թէ այս սովորութիւն ժամանակաւ հաստատեսցի. իշխանութիւն է նոցա ինքնին անվնաս ողջանդամ ելանել գնալ 'ի ձմերոցացն, և յոր կողմ և կամիցին՝ երթալ աներկիւղ: Առ այսոսիկ Կիկերոն զայս մի և եթ արար պատասխանի. Հռովմէական ժողովրդեան չէ բնաւ սովորութիւն՝ պայման ինչ ընդունել 'ի զինեալ թշնամւոյ. եթէ զզէնսն թօթափել կամիցին, առցեն զինքն օգնական, և առաքեսցեն հրեշտակս առ Կեսար. Յուսամ, ասէ, թէ ըստ արդարութեան նորա՝ որ զինչ և խնդրիցէք առնուցուք:

ԽԲ. Ներուեանք յակնկալութենէ անտի յուսակտուրք, պատնէշ պաշարումն պատեն զձմերոցաւն 'ի մետասան ոտնաչափ, և փոս 'ի հնգետասան ոտնաչափ: Զայսոսիկ անցելոց ամացն սովորութեամբ 'ի մերոցս ուսեալք, և զոմանս 'ի զօրուէն գտեալ գերիս, և 'ի նոցունց հմտացեալք: Բայց սոցա չէին ինչ գործիք երկաթիք 'ի սոյն

պէտս պատկանաւորք, և սովալէին սուսերօք իւրեանց հատանել զհողակոշտս, և ձեռօք և գրաստիւք զհողն կրել։ Ասէի արանցն ամբոխութիւն 'ի յայտ ելանէր, զի և ոչ 'ի ժամս երիս՝ շուրջ պատեցին պատնէշ ցասան հազար քայլ. և յայլևս աւուրսն սկսան կազմել և շինել աշտարակս 'ի բարձրութիւն պատուարին, և գերանդիս և կրայս մանգղիոնս, զորս նոցին գերեացն էր ուսուցեալ։

ԽԳ. Յեօթներորդում աւուր պաշարմանն 'ի շնչել ուժգին հողմոյ սկսան պարսատկօք գնդակս 'ի հալոցն կաւոյ, և նետս ատրագոյնս ցնդել 'ի տաղաւարսն՝ որ ըստ գալլիական օրինի յարգայարկք էին, և փութով լուցան 'ի հուր, և հողմոյն սաստկութեամբ յամենայն կողմանս բանակին ծաւալեցին զբոցն։ Թշնամիք մեծաւ աղաղակաւ գուն 'ի վերայ եդեալ, որպէս թէ յաղթութիւն անշուշտ զբաւմբ ածեալք, զմարտկոցսն և զկրայս մատուցանել սկսան, և սանդղօք 'ի պատուարն 'ի վեր ելանել։ Սակայն զօրականին այնչափ գտաւ արութիւն և պնդութիւն սրտի, զի յամենուստ շուրջանակի բոցով խորովեալք, 'ի տեղատարափ յորդութենէ սլաքացն տագնապեալք, և զամենայն կահ և կարասին իւրեանց և զբնաւ իսկ բաղդն տեսանելով հրոյ ճարակ անկեալ, ոչ միայն չխախտեցաւ ոք առարտաքս անկանելոյ 'ի պատնիշէն, այլ և ոչ դարձաւ հայեցաւ իսկ ոք յետս. այլ ամենեքեան ամեհաբար քաջապէս մաքառէին։ Օրս այս՝ մերոցն ծանր եղև յոյժ. այլ սակայն այս եղեն իրացն ելք, զի այն օր անբաւ բազմութիւն վիրաւորեցան թշնամեաց և սատակեցան. քանզի ընդպատուարաւն խառնեալ կային, և առաջնոցն չտային տեղի յետինք։ Փոքր ինչ դադարեալ բոցոյն, և 'ի տեղի ուրեք մատուցեալ աշտարակն և կցեալ 'ի պատուարն, հարիւրապետք խմբին երրորդի յոտնկելեացն մեկնեցան. և զարս իւրեանց զամենեսին ընկրկեալ, նշանացի և ձայնիւք սկսան կոչել զթշնամիս, թէ կամիցին 'ի ներքս մտանել. այլ ոչ ոք իշխեաց անցանել յառաջ։ Յայնժամ յամենուստ քարկոծ եղեալ խուճապեցան, և մարտկոցն այրեցաւ։

ԽԴ. Էին 'ի գնդի անդ արք քաջք հարիւրապետք երկու յառաջադէմք 'ի վերագոյն կարգս, Տ. Պուլփիոն և Լ. Վարենոս: Անսպառ հակառակութիւն էր 'ի մէջ նոցա՝ ո՛ քան զո նախապատիւ իցէ, և զամենայն ամս կագէին զաստիճանէ ոխերիմ գժտութեամբ: Յորոց Պուլփիոն, մինչդեռ մարտ սաստիկ էր զպատնիշօքն, Զի՞ կաս, ասէ, վարանեալ, Վարենէ. կամ որո՞ւմ տեղւոյ ակն ունիս զքաջութիւնդ ցուցանելոյ. օրս այս դատ արասցէ զմերոց պայքարաց: Զայս ասացեալ՝ ելանէ ընդ պատնէշն 'ի դուրս, և յորկոյս թանձրախուռն երևէին թշնամիք՝ անդր արշաւէ: Եւ ոչ Վարենոս յայնժամ մնայ 'ի պատնիշին, այլ զանգիտեալ յամբոխին դատաստանէ, զկնի ընթանայ՝ գոյզն ինչ 'ի բացուստ: Պուլփիոն արձակէ զաշտեայն 'ի թշնամիսն, և զմի 'ի խուանէ անտի զյառաջամարտ նահատակեալ՝ հարեալ վիրաւորէ. յորոյ խոցելն և յանշնչանալ՝ վահանօքն ծածկեալ պահեն զնա թշնամիք, և 'ի նա առհասարակ լինին նետաձիգ, և ոչ տան թոյլ ընդ կրունկ դառնալոյ: Հարկանի թափանցանց վահան Պուլփիոնի, և երեքթևեան մի եռասայր՝ վարսի 'ի գօտին: Այս դիպուած խախտէ զպատեանս սուսերին, և 'ի ջանալ իւրում ձգել զսուրն՝ արգելու զաջն, և պատին անդ զնովաւ թշնամիք: Ժամանէ նմա 'ի թիկունս հակառակորդ իւր Վարենոս, և օգնէ վտանգելումն: Նոյնժամայն խուժանն ամենայն թողեալ զՊուլփիոն՝ դառնան 'ի սա: Համարին զնա խոց վիրաւոր երեքսայրիւն: Բայց անդր արագ հասանէ թրովն Վարենոս, և 'ի մօտուստ պատերազմեալ և սպանեալ մի 'ի նոցանէ, զայլսն փոքր մի ընկրկէ: Յօժարագոյնս շահատակեալ անդ, և անկեալ 'ի խորափիտ մի, և 'ի թշնամեաց պաշարեալ, հասանէ նմա Պուլփիոն յօգնականութիւն. և երկոքին ողջք անարատք, զբազումս կոտորեալ, մեծաւ գովութեամբ դառնան մտանեն 'ի պատնէշն: Այսպէս շրջշրջեաց բաղդն զսոսա պերկոսեան 'ի պայքարի և 'ի դուպարին, զի միմեանց ոսոխք՝ իրերաց նպաստ լինիցին, և ոչ հնար լիցի ընտրել, ո՛ քան զո նախամեծար թուիցի քաջութեամբ:

ԽԵ. Որչափ օր ըստ օրէ ծանրանայր և դառնանայր գործ պատերազմին, մանաւանդ զի և յոլովք 'ի զօրականէն խոցք էին և վիրաւորք, և սակաւուց էր մնացեալ պաշտպանութիւնն, նոյնչափ թուղթք և պնդադեսպանք ստէպ ստէպ առաքէին առ Կեսար. յորոց ոմանք ըմբռնեալ՝ առաջի մերոյ զօրականին կտտամամբ խոշոշէին: Ներուեան ոմն էր 'ի ներքս Վերտիկոն անուն այր տոհմիկ, որ յառաջնումն օրէ պաշարմանն առ Կիկերոն փախուցեալ և զհաւատարմութիւն իւր նմա խոստացեալ էր: Սա զծառայն իւր յուսով ազատութեան և մեծամեծ պարգևօք 'ի բանի առնէ, տանել հասուցանել թուղթ առ Կեսար: Զոր նա 'ի մկնդին կապեալ, և գալլիացի ընդ գալլիացիս թարթափեալ՝ գնայ հասուցանէ առ Կեսար: Ի նմանէ լսէ զվտանգն Կիկերոնի և զգնդին:

ԽԶ. Ընկալեալ Կեսարու զնամակն իբր 'ի մետասան ժամու աւուրն, խսկոյն դեսպան առնէ 'ի Բելլովակս առ Մ. Կրասսոս Գանձաւոր, որոյ ձմերոցն քսան և հինգ հազարս քայլից հեռի էր յիւրմէ: Պատուէր տայ ելանել զգնդին զհասարակ գիշերաւ, և վաղվաղակի առ ինքն հասանել. ելանէ Կրասսոս ընդ դեսպանին: Միւս ևս առաքէ առ Կ. Փաբիոս՝ առնուլ գնալ զգունդն յերկիրն Ատրեբատաց, ընդ որ գիտէր թէ իւր ճանապարհ անկանելոց էր: Գրէ առ Լաբիենոս, զի եթէ առանց ինչ վնասու ընկերհաշտութեան կարող է առնել, գնդաւն հանդերձ 'ի Ներուեանց աշխարհըն երթիցէ. միւսում մասին զօրացն, զի փոքր մի հեռագոյն էին, ոչ հարկ համարի սպասել: Ի մերձակայ ձմերոցացն ժողովէ հեծեալս իբրև չորեք հարիւր:

ԽԷ. Զերրորդ ժամաւն լսէ 'ի կարապետացն իւրոց հեծելոց զգալուստ Կրասսոսի, և 'ի նմին աւուր քայլս քսան հազար յառաջ խաղայ: ԶԿրասսոս գլխաւոր կարգէ Սամարոբրիւայ, և զգումարտակն տայ նմա. զի անդ թողոյր զաղխ բանակին, զպատանդս քաղաքաց, զհասարակաց իրացն նամականին, և զամենայն պաշար ռոճկաց՝ զոր 'ի պէտս տոկալոյ ձմերայնոյն անդր էր համբարեալ: Փաբիոս

ըստ հրամանին ոչ յոյժ անագանեալ՝ գնդաւն հանդերձ յուղւոյ ընդ առաջ հանդիպի: Լաբիենոս իբրազէկ եղեալ կորստեան Սաբինեցւոյն և խմբից կոտորածի, 'ի գալ ժողովեալ առ նա ամենայն զօրացն Տրեւիրաց, խիթացեալ՝ զի եթէ փախստեան կերպարանօք 'ի ձմերոցէն զերծն առնիցէ, որպէս թէ բռնութեան թշնամեաց զդէմ ունել ոչ մարթայցէ, նա՛ զի գեռապեռ յաղթութեամբն խրոխտացեալս գիտէր զնոսա, թղթէ անդրէն առ Կեսար, թէ քանի՛ վըտանգ իցէ նմա հանել զգումարտակն 'ի ձմերոցէ անտի. պատմէ մանրամասն 'ի գրին զանցս իրացն որ եղեն յԷբուրոնս. յայտ առնէ թէ բովանդակ Տրեւիրացն զօրք՝ հեծեալք և հետևակք դարեալ կան զիւրև երեք հազար քայլ հեռի յիւրմէ բանակէն:

ԽԸ. Կեսարու հաւանեալ ընդ խորհուրդ նորա, թէպէտ և 'ի յուսոյ երից գնդաց վրիպեալ՝ յերկուս ամփոփեալ էր, սակայն մի միայն նպաստ 'ի հասարակաց փըրկութիւն զերագութիւն գնէր: Մեծամեծ ասպարիզօք խաղայ գայ 'ի սահմանս Ներուեանց: Անդ 'ի գերելոցն լսէ՝ զինչ իրք առ Կիկերոնի գործիցին, և որչափ վտանգ առ կուան կայցէ: Յայնժամ միոյ ումեք 'ի գաղղիացւոցն այրուձիոյ մեծաւ օժտիւք հաւանեցուցանէ տանել գիր առ Կիկերոն: Զայս յունարէն նշանագրօք գրեալ առաքէ. զի մի յըմբռնել թղթոյն՝ խորհուրդք մեր 'ի վեր ելցեն թշնամեաց. եթէ առ նա ժամանել ոչ լինիցի ատակ, խրատ տայ, զմկունդն՝ կապեալ զթուղթն 'ի խրացս նորա՝ ընկենուլ 'ի մէջ պատնիշաց բանակին: Գրէ 'ի նամակին, թէ գնդօքս արագապէս եկեալ հասանեմ. քաջալերէ պինդ ունել զառաջին քաջութիւնն: Գաղղիացին 'ի վտանգէն զանգիտեալ, որպէս պատուէր ընկալաւ՝ ընկենու զմկունդն. որ ըստ դիպաց կառչեալ յաշտարակ ուրեք, և աւուրս երկուս անտես եկաց 'ի մերոցն: Յաւուր երրորդի նշմարի 'ի զինուորէ ումեքէ, և կորզեալ ածի առ Կիկերոն: Նորա ընթերցեալ՝ կարդայ 'ի ժողովի զօրականին. և մեծաւ ուրախութեամբ լի առնէ զամենեսեան: Յայնժամ երևէին 'ի բացէ ծուխք

խարուկաց, որ զգալստեանն գնդացն փարատեցոյց զամենայն երկևան:

ԽԹ. Գաղղիացիք 'ի դիտացն ծանուցեալ զիրսն, և թողեալ զպաշարումն, ամենայն զօրօք խաղան 'ի վերայ Կեսարու, որք էին համարեա թէ վաթսուն հազար սպառազէնք: Կիկերոն պարապ առեալ, 'ի նմին Վերտիկոնէ՝ զոր 'ի վերդ յուցաք՝ խնդրէ զոք գաղղիացի՝ տալ տանել թուղթ առ Կեսար. և զսա խրատէ զգուշեաւ և ճեպով առնել ճանապարհ. գրեալ 'ի թղթին, թէ թշնամիք մեկնեցան յիւնէն, և զամբոխակոյտն ողջոյն 'ի քեզ դրդեցին: Այս գիր գրեթէ զմէջ գիշերաւ հասեալ, զեկոյց Կեսար իւրոցն, և սրտապնդեաց զնոսա 'ի պատերազմ: Ի վաղիւ անդր վաղ քաջ ընդ առաւօտն տայ չուել բանակին. և գոգ իմն չորեք հազար քայլ յառաջ խաղացեալ՝ տեսանէ զամբոխութիւն թշնամեացն յայնկոյս հովտի միոջ մեծի և գետակի: Վտանգ յոյժ էր տալ պատերազմ ընդ այնքան բազմութեան 'ի դժպատեհ վայրի. այլ քանզի գիտէր զԿիկերոն ազատեալ 'ի պաշարմանէն, ուստի և 'ի հապ շտապ ճեպելոյն թողանալ բնաւ ոչ անդէպ ինչ վարկանէր, զտեղի առ, և 'ի հարթայարմար վայրի կառոյց բանակ. որ թէպէտ և դուզնաքեայ ինչ էր ինքնին, հազիւ թէ եօթն հազար արանց, և այն՝ առանց ինչ կահուց կարասեաց, սակայն նրբափողոցիւք՝ որքան հնար էր՝ ևս անձկացոյց զղակիշ լաշքարին, զի ընդ կարի արհամարհանս լիցի յաչս թշնամեացն: Յայնժամ ապա դէտս արձակեալ յամենայն կողմանս, 'ի քննին մտանէ՝ ընդ ո՞ր ճանապարհ դիւրաւ հատեալ անցանիցէ ըզհովիտն:

Ծ. Ի նմին աւուր դոյզն ինչ թեթև գուպարածս հեծելոց եղեալ առ ջրովն, երկոքեան կողմանքն կացին 'ի տեղւոջ իւրեանց, Գաղղիացւոց ակնկալեալ հասատաբուան զօրաց՝ որ չև էին գումարեալ, Կեսարու՝ թէ արդեօք ձևով երկիւղի կարիցէ՞ հանել ձգել զթշնամիսն 'ի հովտէն յիւր տեղին, տալ պատերազմ առաջի ճամբարին. իսկ եթէ զայդ ոչ կարիցէ առնել, լրտեսեալ զճանապարհսն՝ փոքու մը-

տանգաւ ըստ հովիտն և ըստ վտակն անցանիցէ։ Ի ծագել լուսոյն հեծելագունդն Թշնամեաց մատեաւ առ Ճամբարն, և ձեռն արկ 'ի կռիւ ընդ մերոյ այրուձիոյն։ Կեսար կամաւ հրաման տայ հեծելազօրն տեղի տալ և 'ի Ճամբարն անկանել, համայն զի և յամենայն կուսէ բարձրագոյն պատնիշաւ պատեսցի Ճամբարն, դրունքն խցեալ պնդեսցին, և 'ի գործ անդր տագնապաւ շտապել հրամայէ և զերկիւղ կեղծաւորելով։

ԾԱ. Ամենայնիւ այսու հրաւիրեալ Թշնամիք, անցուցանեն զամբոխն, և յանպատեհ տեղւոջ Ճակատ յարդարեն. մատչին ևս մերձ առ մերսն՝ յեղանել նոցա արտաքս քան զպատնէշն, և յամենուստ կուսէ նետաձիգ լինին 'ի ներքս 'ի Ճամբարն, և քարոզս հանեալ շուրջանակի՝ պատուէր տան կարդալ, զի գալլիացի ոք կամ Թէ հռովմայեցի կամիցի առ ինքեանս անցանել՝ կարող լիցի յառաջ քան զերրորդ ժամն անվտանգ, յետ այնր ժամու՝ ոչ ևս։ Եւ այնպէս առ արհամարհս կալան զմերսն, զի մինչդեռ կերպարանօք ևեթ խցեալ էին դրունք իւրաքանչիւր կարգ 'ի կարգ դղձամբք, կարծեալ անհնարին ընդ այն 'ի ներքս անկանել, կէսք սկսան ձեռօք զպատնէշն խարխարել, այլք զփոսսն լնուլ։ Անդ յայնժամ Կեսարու ընդ ամենայն դըրունսն 'ի դուրս ոստուցեալ և զայրուձին յարձակեցուցեալ, իսկ և իսկ զԹշնամիսն արկանէ 'ի փախուստ, մինչև ամենևին ումեք 'ի կռիւ չկալոյ, և ամբոխ շատ 'ի նոցանէ կոտորեալ՝ զամենեսին արար զէնընկէց։

ԾԲ. Զանգիտեալ անդր ևս յառաջ խաղալ, զի մայրիք և Ճախճախուտք կային 'ի միջի, և տեսեալ զի ոչ դոյզն մնասու լքեալ էր նոցա զտեղին իւրեանց, զամենայն զօրս իւր ողջ և ամբողջ հանեալ 'ի նմին աւուր հասանէ առ Կիկերոն։ Զարմանայ ընդ մարտկոցս, ընդ կրայս և ընդ պատուարս Թշնամեացն։ Յառաջ հանեալ զգումարտակն, տեսանէ զի և ոչ մի 'ի տասանց զօրականին մնացեալ է անխոց։ Յայսմ ամենայնէ 'ի միտ առնու՝ քանի՛ վտանգաւ և որո՛վ քաջութեամբ վճարեալ իցէ։ Գովէ զԿիկերոն ըստ իւրում արժա-

նի, ևս և զդումարատն. կարգայ մանաւանդ զհարիւրապետսն և զհազարապետս զօրուն, զորոց զմեծ քաջութիւնն վկայութեամբ Կիկերոնի ծանուցեալ էր: Զաղէտսն Սաբինեցւոյն և զԿոտտայի ստուգագոյն տեղեկանայ 'ի գերելոցն: Ի վաղիւն ժողով արարեալ և զանցս իրացն 'ի մէջ մատուցեալ, մխիթարէ զզօրականն և քաջալերէ. զի զեանն՝ յանցանօք և յանդգնութեամբ տեղակալին է պատահեալ, անխռով տանելի է զայն. զի 'ի գիցն անմահից բարերարութենէ և ձերովդ, ասէ, քաջութեամբ՝ քաւեալ 'ի մէնջ վնասուն, ոչ թշնամեաց երկար ուրախութիւն մնացէ, և ոչ ձեզ յաւէժ սուգ:

ԾԳ. Ի նմին ժամանակի հռչակ յաղթութեանն Կեսարու անակնկալ երագութեամբ հասանէ ընդ Ռեմեանս առ Լաբիենոս. որ քանզի 'ի ձմերոցէն Կիկերոնի վաթսուն հազար քայլ հեռի էր, և Կեսար եհաս անդր յետ իններորդ ժամու աւուրն, յառաջ քան զհասարակ գիշեր հնչեաց աղաղակ առ դուրս ձմերոցին, յորմէ ծանուցեալ Ռեմեանց զյաղթութեանն նշան, աւետիս խնդութեան մատուցանէին Լաբիենոսի: Իբրև այս համբաւ եհաս առ Տրեւիրս, Ինդուտիոմար՝ որ սահմանեալ էր առ վաղիւ հարկանել զձմերոցն Լաբիենոսի, փախստեայ գնայ գիշերայն, և զզօրսն ամենայն ածէ անդրէն 'ի Տրեւիրս: Զփաբիոս՝ Կեսար գնդաւն հանդերձ կարգէ դարձեալ յիւրում ձմերոցին, ինքն դնէ 'ի մտի՝ երիւք գնդօք զՍամարոբրիկաւ ձմերել յերիս ձմերոցս. և զի այնչափ խռովք յուզեալ էին 'ի Գաղղիա, հաստատեաց ինքն զձմեռն ողջոյն մնալ առ զօրուն: Զի իբրև լու եղև աղէտք մահու Սաբինեցւոյն, ամենայն գրեթէ քաղաքք Գաղղիաստանեայց 'ի պատերազմ խորհէին ընդ միմեանս. առաքէին պատգամաւորս և հրեշտակութիւնս յամենայն կողմանս, և հետազօտէին՝ զինչ այլք խորհուրդ առնուցուն, և ուստի մարտին սկիզբն լինիցի, և գիշերի գիշերի յանապատ տեղիս 'ի ժողով գումարէին. և ոչ ժամանակ ինչ 'ի բովանդակ ձմերայնոյն առանց հոգոց և տատամսութեան անց զԿեսարաւ, և առանց բանբեր զոք ըն-

դունելոյ զխորհրդոց և զշարժմանց գաղղիացւոց։ Ցայսոսիկ ՚ի Լ. Ռոսկիոսէ ՚ի տեղակալէն, զոր երեքտասան գնդին վերակացու կարգեալ էր, գիր ընկալաւ, թէ մեծամեծ ամբոխք գաղղիացւոցն քաղաքաց՝ որ Արմորիկեանքն[1] կոչին՝ ժողովեալ են տալ ընդ նմա պատերազմ, և չեն աւելի քան զութ հազար քայլ հեռի յիւրմէ ձմերոցէն. բայց ՚ի հասանել լրոյ յաղթութեանն Կեսարու՝ ՚ի բաց երթեալ էին, փախստեան իմն նմանութեան նշմարանս բերեալ երթին։

ԾԴ. Բայց Կեսար զիշխանս իւրաքանչիւր քաղաքի առ ինքն կոչեալ, էր զոր ահացուցանելով՝ յասել անդ զինքն տեղեակ եղելոցն, և էր զոր յորդորելով, զմեծագոյն մասն Գաղղիոյ ՚ի հպատակութեան կալաւ։ Սակայն Սենոնք, որ է քաղաք ամուր յառաջագաս և մեծազօր ՚ի գաղղիացիս, աշխարհօրէն գուն գործեալ սպանանել զԿաւարին, զոր Կեսարու թագաւոր եդեալ էր նոցա, որոյ և եղբայրն Մորիտագ՝ գալստեամբն Կեսարու ՚ի Գաղղիա, որոյ և նախնիքն թագաւորութեան վիճակեալ էին, և նորա կանխաւ իրազգաց եղեալ և փախուցեալ, մինչև ՚ի ծագս սահմանաց իւրոց հալածեալ զնա՝ յարքայութենէն և ՚ի տանէ ևս ընկեցին. և յաղերս հպատակութեան հրեշտակս առ Կեսար արարեալ, ՚ի հրամայել նորա ամենայն աւագանւոյն գալ առ ինքն, ստունգանեցին հրամանին։ Այնչափ մեծ եղև առ խուժդուժսն այն զի գտան ոմանք նախիշխանք ձեռներէցք ՚ի մարտ պատերազմի, և այնչափ ՚ի կամս բոլորեցուն փոփոխումն արկ, զի թող զեդուացիս և զհռեմեանս, զորս միշտ ՚ի պատուի կալաւ Կեսար, զառաջինսն՝ վասն հնոյ և անպակաս հաւատարմութեան առ ժողովուրդն հռովմեական, զերկրորդսն՝ վասն նորոգ ծառայութեանցն ՚ի գաղղիական պատերազմունս, չգտաւ գրեթէ այլ քաղաք անկասկածելի մեզ։ Եւ այս ոչ գիտեմ թէ ինչ զարմանալի, թէ յայլոց բազում պատճառաց, և թէ մանաւանդ զի որ

[1] Այս ինքն է ըստ կեղտացւոց կամ գաղատացւոց ձայնին Ծովեզերեայք։

պատերազմական քաջութեամբ այլոց ամենեցուն առաջին էր ազգ, այնչափ անկան յայնմ համբաւոյ, մինչև անհնարին ապաշաւել զմտանելն ընդ հարկաւ ծառայութեան ժողովրդեանն Հռովմայ:

ԾԵ. Իսկ Տրեւիրք և Ինդուտիոմար ոչ դադարեցին բնաւ զձմեռն ողջոյն չառաքել հրեշտակս յայնկոյս Հռենոսի, դրդել զազգսն, խոստանալ գանձս, և ասել՝ թէ առաւելագոյն մասն սպային մերոյ սատակեալ, սակաւիկ ինչ յոյժ ապրեալ կայ: Սակայն և ոչ միում ազգի գերմանացւոցն ընդ միտ կարաց մտանել, զի անցցեն ըստ Հռենոս. զի երկիցս, ասեն, փորձ գտաք, 'ի պատերազմին Արիովիստայ և 'ի խաղալ Տեւկտերաց յայնկոյս. ոչ ևս մեզ արժան է 'ի թեթուս մատչել բաղդին: Ցայսմ յուսոյ 'ի դերև ելեալ Ինդուտիոմար, համայն սկսաւ զօրաժողով լինել, 'ի սահմանակցացն պահանջել, հայթայթել երիվարս, և զվտարանդիս և զընկեցեալսն 'ի Գալլիոյ՝ մեծապէս պարգևօք յինքն յանկուցանել: Եւ այսոքիւք այնչափ մեծ իշխանութիւն կալաւ 'ի Գալլիա, մինչև յամենուստ առ նա ընթանալ հրեշտակութեանց, և խնդրել աշխարհօրէն և առանձինն զշնորհս իւր և զբարեկամութիւն:

ԾԶ. Տեսեալ թէ մտադիւր առ ինքն գան, աստի Սենոնք և Կարնուտք 'ի խղճէ չարեացն ստիպեալ, անտի Ներուեանք և Ատուատիկք հանդերձին 'ի կռիւ ընդ Հռովմայեցիս, և եթէ զամ մի ըստ սահմանս իւր ելանիցէ՝ չպակասեսցեն նմա ինքնակամ նահատակաց բազմութիւնք, հրաման տայ զինեալ ժողովոյ: Այդ ըստ գալլիացի սովորութեան սկիզբն է պատերազմի, ուր ըստ օրինաց աշխարհին ամենայն աստիք մանկութեան ստիպելին գտանել. և որ ապաժաման ոք յետնեալ յամենեցունց եկեսցէ՝ յանդիման բազմութեանն ամենայն չարչարանօք խոշտանգեալ սպանանի: Ի ժողովի անդ յայնմիկ զԿինգետորիքս զիշխան միւսոյ կողմանն՝ զիւր փեսայն, զոր 'ի վերդ ցուցաք յարեալ 'ի հաւատս Կեսարու անմեկին 'ի նմանէ, ջանայ դատապարտ առնել իբրև զթշնամի ոք, և զինչս նորա հասա-

նէ 'ի գանձ աշխարհէն։ Զայսոսիկ յանդ հանեալ՝ առնէ 'ի ժողովքն, Թէ հրաւիրեալ 'ի Սենոնաց և 'ի Կարնուտաց և յայլոց յոգունց ազանց Գալլիոյ՝ անդր ճանապարհ առնելոց է ընդ երկիրն հռեմեանց, և զագարակս նոցա յաւարի առնլոց, և յառաջ քան զայս ընդ բանակին Լաբիենոսի առնլոց է պատերազմ. և զոր առնելն կամէր՝ հրաման տայ։

ԾԷ. Լաբիենոս՝ տեղւոյն բնութեամբ և ձեռակերտ ևս ամրացեալ 'ի բանակին, զանձին և զգնդին վտանգէ ոչ ինչ կասկածէր, այլ խորհէր չկորուսանել ինչ պատեհ ուղիղ տեսչութեան իրացն։ Արդ 'ի Կինգետորիքսէ և 'ի նորա մերձաւորացն լուեալ զբանսն Ինդուտիոմարայ՝ զոր 'ի ժողովին էր խօսեալ, պատգամաւորս յղէ առ սահմանակից ազգս, և յամենուստ այրուձի գումարէ. ժամադիր ժամակալ եդեալ զօր ժողովելոյ նոցա։ Զայնու աւուրբք Ինդուտիոմար գրեթէ զօրհանապազ այրուձիովն զճամբարաւ նորա շրջէր, է զի դիտել զդիրս բնակչացն, է զի 'ի բանագնաց լինել կամ ահ արկանել։ Այրուձին ամենայն ձիգ դնէին յաճախ 'ի ներքս 'ի պատնէշն։ Լաբիենոս զիւրսն յամուրս անդ պահէր, և զկասկած երկիւղին՝ որով և է հնարիւք՝ աճեցուցանէր։

ԾԸ. Իբրև այսպէս օր ըստ օրէ առաւել արհամարհանօք մերձենայ Ինդուտիոմար 'ի բանակետղն, 'ի միում գիշերի մուծեալ զհեծեալս ամենայն սահմանակից ազգաց՝ զորս կոչեալն էր, այնպիսի զգուշութեամբ 'ի ճամբարին պահեաց զիւրսն զամենեսեան, զի ոչ իւիք ամենևին 'ի վեր ել բանն, կամ 'ի Տրեւերս եհաս։ Յաւուրսն յայնոսիկ ըստ հանապազորդ սովորութեան եկն դարձեալ մատեաւ Ինդուտիոմար 'ի բանակն, և զմեծ կէս աւուրն անդ անցոյց. հեծեալքն նետս ընկենուին, և մեծաւ Թշնամանօք ձայնից զմերսն 'ի կռիւ գրգռեին։ Իբրև չգոյր ինչ ձիկ 'ի մերոցն, յորժամ հաճոյ Թուեցաւ՝ ընդ երեկս ցիր և ցան եղեալ մեկնեն 'ի բաց. Լաբիենոս անդէն նոյնժամայն ընդ երկոսին դուռն արձակէ զհետ զամենայն հեծելազօրն, պատուիրեալ նոցա և սաստեալ, զի 'ի խուճապել Թշնամեաց և 'ի փախուստ

աճապարել, զոր գիտէր թէ լինելոց է, որպէս և եղև իսկ, ամենեցուն զԻնդուտիոմար միայն խնդրել, և մի ումեք զոք հարկանել մինչև տեսցէ զնա սատակեալ. զի չկամէր թէ յապաղելովն ընդ այլսն՝ նմա ժամ տացի փախստեան։ Եւ որ զնա սպանանիցեն՝ մեծաշուք պարգևաց յոյս առաջի դնէ նոցա։ Զհետ յղէ և խումբս՝ զօրավիգն հեծելազին։ Հաւանի բաղդն ընդ խորհուրդս առնն, և զի բնաւք զմին խնդրէին, 'ի հուն գետոյն ըմբռնեալ Ինդուտիոմար՝ անդէն սպանանի, և զգլուխ նորա ածի 'ի բանակն։ Հեծեալքն 'ի դարձին՝ որոց կարէինն զհետ պնդին և կոտորեն։ Ի համբաւ իրացն՝ ամենայն Եբուրոնք և Ներուեանք՝ գումարս խմբեալք՝ 'ի բաց հալածին. և յետ այսր կուսոյ՝ խաղաղագոյն գտանէ Կեսար զԳաղղիա։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. Գուշակեալ Կեսարու զմեծագոյն յոյզս Գաղղիոյ, զզօրսն ըստուարացուցանէ: Բ—Է. Փութապէս նուաճեալ զՆերուեանս, և զՍենոնս և զԿարնուտս 'ի հնազանդութիւն ընկալեալ, ընդ լծով արկանէ զՄենապեանս: Ը. Ի նմին ժամանակի և Տ. Լաբիենոս զՏրեւիրս: Թ. Անցանէ Կեսար երկրորդ անգամ ըստ Հռենոս: ԺԱ. Պատեհաւ 'ի կշիռ եդեալ զգերմանացիսն ընդ գաղղիացիս, նախ զոցա բարս և սովորոյթս նկարէ: ԻԹ. Կեսարու ընդ վայր ջանացեալ ընդ Սուեւս՝ դառնայ յԵբուրոնս: ԼԵ—ԽԱ. Եւ 'ի շրջելն նորա յաջ և յահեակ ընդ երկիր նոցին՝ յարձակին Սիկամբրք 'ի վերայ ճամբարին, ոչ առանց հարուածոց հռովմայեցւոցն, բայց ոչ տիրեալ այնմ՝ դառնան 'ի տուն: ԽԴ. Կեսարու աւերեալ զերկիրն Եբուրոնաց, և զատեանն ժողովեալ՝ երթայ յԻտալիա գումարել զժողովսն:

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



## Գ Ի Ր Ք Զ.

Ա. Կեսարու 'ի բազում գլխոց դէտ ակն կալեալ մեծագոյն աղմկի գալլիաստանեայց, դնէ 'ի մտի այրընտիր զօրաժողով լինել 'ի ձեռն տեղակալացն Մ. Սիլանոսի, Կ. Անտիստիոսի Հռեգինու, և Տ. Սեքստիոսի. համայն և 'ի Կն. Պոմպէոսէ փոխանակէ բդեշխի խնդրէ՝ (զի նա 'ի Հռոմ մնաց հանդերձ իշխանութեամբն 'ի պէտս ընկերհաշտութեանն), զի զորս միանգամ 'ի յայսկոյս Գալլիոյ ընդ երդմամբ բըդեշխմին գումարեալն էր՝ ընդ դրօշուքն ժողովել տացէ նոցա հրաման, և առ ինքն գալ. կարևոր յոյժ համարեալ և առ յապայս յաչս Գալլիոյ՝ այնչափ երևել զօրութեանցն Իտալիոյ, զի թէ և տոյժ ինչ կրեսցէ 'ի մարտս պատերազմաց, ոչ միայն փութով առնէ դարման վնասուն, այլ և յաճախագունդ ևս զօրօք ճոխանայ: Ի շնորհել զայն Պոմպէի՝ ընկերհաշտութեան և բարեկամութեան, անդէն վաղվաղակի և ինքն զօրաժողով արարեալ 'ի ձեռն իւրոցն, երիս յառաջ քան զելս ձմերայնոյն կազմեալ և հանեալ գունդս, և կրկնապատկեալ զթիւ խմբիցն կորուսելոց ընդ Տիտուրիոսի և զօրացն, յայտ արար զզօրութիւն հրահանգաց և հարստութեան հռովմէական ժողովրդեանն:

Բ. Իբրև Խոգուտիոմար սպանաւ, որպէս ասացաք, զտէրութիւնն մատուցին Տրեւիրք առ ազգականս նորուն, որք ոչ դադարեն հրապուրել զԳերմանացիսն, նա և առծամթ ևս խոստանալ։ Ի մօտաւորացն ոչ ինչ կարացեալ, հեռագունիցն 'ի փորձ մատչին. և գտեալ զոմանս, զքաղաքսն երդմնակուռ կապեն ընդ միմեանս, և ընդ արծաթոյն առնուն պատանդս 'ի զգուշութիւն։ Զովող. և դաշնակից իւրեանց առնուն զԱմբիորիքս։ Զայս ամենայն ծանուցեալ Կեսարու, և տեսեալ զի ամենուստ պատերազմ պատրաստի, Ներուեանք, Ադուատիկք և Մենապեանք՝ յիւրեանս յարեցուցեալ և զԳերմանացիս որ յայսկոյս Հռենոսի, 'ի զէն վառեալ կան, Սենոնք չեն եկեալ 'ի հրամանն, և ընդ Կարնուտս և սահմանակից քաղաքս միաբանեալ են 'ի խորհուրդս իւրեանց, և Տրեւիրք ստէպ հրեշտակութեամբք յորդորեն զԳերմանացիս, հարկ համարեցաւ և իւր վաղագոյն խորհել 'ի պատերազմ։

Գ. Վասն որոյ՝ չև անցեալ ձմերայնոյն, զմերձակայ չորեսին գունդսն գումարեալ, դիմեաց յեղակարծում ժամու յաշխարհն Ներուեանց. և մինչ չև ժամանեալ նոցա գունդ լինել կամ փախուստ առնուլ, խաշն բազում և մարդիկ գերի առեալ և զաւարն զայն պարգևեալ զօրականին, աւերեալ և զգիւղսն, հարկեցոյց անձնատուր լինել, և տալ նմա պատանդս։ Զայն գործ երագ վճարեալ, ած անդրէն զզօրն 'ի ձմերոց։ Ի մուտս գարնայնոյ, որպէս սահմանեալն էր, ժողով հրամայեալ Գաղղիոյ, և եկեալ այլոց ամենեցուն բաց 'ի Սենոնաց, 'ի Կարնուտաց և 'ի Տրեւիրաց, սկիզբն պատերազմի և վարանջութեան զայն համարեալ, զի զամենայն ինչ յետին դասել թուեսցի, զժողովն փոխէ 'ի Լուտետիա Պարիսացւոց։ Սոքա սահմանորդք էին Սենոնաց, և քաղաքաւ ընդ նոսա միաբանք անդստին 'ի հարցն աւուրց, բայց 'ի խորհրդոյ անտի նոցա մեկուսի կարծեցեալք։ Զայս 'ի բեմէ հրատարակեալ, 'ի նմին աւուր գումարտակօքն հանդերձ խաղայ 'ի Սենոնս, և մեծայամ ուղևորութեամբք հասանէ անդր։

Դ. Իբրև լու լինի գալուստ նորա, Ակկոն՝ իշխանն խորհրդոյն այնորիկ, հրամայէ բազմութեան երթալ ժողովել յամուր ամուր քաղաքսն. մինչ այս մինչ այն, չև ատիկեալ առնել ինչ, պատմի հասանել հռովմայեցւոցն: Հարկաւ կասին 'ի մտացն, և հրեշտակս յղերս առաքեն առ Կեսար: Անցեալ գան ընդ եդուացիսն՝ յորոց ուխտին կայր քաղաքն 'ի վաղուց: Ի խնդրոյ եդուացւոցն թողութիւն շնորհէ նոցա Կեսար, և զաղերսն ընդունի, զի զամառնային ժամանակն՝ մօտալուտ պատերազմին համարէր, ոչ խնդրոց: Եւ հրամայեալ նոցա պատանդս հարիւր, ետ զնոսա եդուացւոցն պահել: Առաքեն նմա և Կարնուտք հրեշտակս և պատանդս՝ աղերսաւոր առեալ զհռեմեանս, ընդ որոց պաշտպանութեամբ կային: Առնուն զնոյն պատասխանիս: Կատարէ Կեսար զժողովն, և քաղաքի քաղաքի՝ այրուձիոյ հրաման տայ:

Ե. Խաղաղացեալ կողմանցս այսոցիկ Գալլիոյ, բովանդակ հոգւով և մտօք պատրաստ կայ պատերազմին Տրեւիրաց և Ամբիորիքսի: Կաւարինի ընդ հեծելազօրուն Սենոնաց՝ հրամայէ ընդ իւր երթալ. զի մի կամ 'ի սորա բարկութենէն, կամ յատելութենէ ազգին՝ զոր ժառանգեաց, խռովք ինչ շարժիցի: Զայսոսիկ կարգեալ և յօրինեալ, քանզի ստուգիւ գիտէր՝ թէ Ամբիորիքս չէ կռուելոց պատերազմաւ, միտ եդեալ հետազօտէր զայլ խորհուրդս մտաց նորա: Մենապեանք սահմանակիցք էին երկրին Եբուրոնաց՝ ամրացեալք բազում երկայն ճահճօք և անտառօք, որոց միայն չէր երբեք առաքեալ հրեշտակս 'ի Գալլիոյ առ Կեսար 'ի խաղաղութիւն: Գիտէր զի Ամբիորիքսի ասպնջականութիւն էր ընդ նոսա, և զի 'ի ձեռն Տրեւիրաց բարեկամութիւն հաստատեալ էր ընդ գերմանացիս: Զայս օգնականութիւն հարկ համարեցաւ նախ հատանել 'ի նմանէ՝ մինչ չև 'ի մարտ ընդ նմա մատուցեալ. գուցէ առ անյուսութեան երթեալ ղօղիցի 'ի Մենապեանս, կամ ընդ որս յայնկոյս Հռենոսի՝ ընդ նոսա միաբանեսցի: Զայս խորհուրդ կալեալ, զամենայն զաղխ բանակին առաքէ 'ի Տրե-

ւիրս առ Լաբիենոս, և երկուց գնդաց հրաման տայ առ նա երթալ: Ինքն հնգեգումբք թեթև գումարտակօք խաղայ 'ի Մենապեանս: Նոցա ոչ զօր ինչ գումարեալ, յամրութիւն տեղւոյն յուսացեալ՝ ապաստան լինին յանտառս և 'ի ճախճախուտս, և զամենայն ինչ զիւրեանց անդր ժողովեն:

Զ. Կեսարու բաժանեալ զզօրն ընդ տեղակալն Կ. Փաբիոս և ընդ Մ. Կրասսոս գանձակալ, և փութանակի կամուրջս կապեալ, խաղայ յառաջս երիս, զշէնս և զգիւղս հրձիգ առնէ, տիրէ բազում ամբոխի անասնոց և մարդկան: Ցորմէ բռնադատեալ Մենապեանց՝ առաքեն առ նա հրեշտակս՝ խնդրել զհաշտութիւն: Նորա ընկալեալ պատանդս, սպառնայ՝ 'ի համարի թշնամեաց ունել զնոսա, եթէ զԱմբիորիքս կամ զպատգամաւորս նորա՝ 'ի սահմանս իւրեանց ընկալցին: Զայս հաստատեալ, զԿոմիոս ատրեբատացի՝ հանդերձ այրուձիով՝ թողու 'ի Մենապեանս 'ի պահպանութիւն. ինքն խաղայ գնայ 'ի Տրեւիրս:

Է. Ի պարապել Կեսարու յայսոսիկ՝ Տրեւիրք գումարտակ արարեալ զօրու ծանու հետևաց և հեծելոց, կազմէին 'ի վերայ Լաբիենու և միոյ միայնոյ գնդին որ ընդ իւր ձմերէին յաշխարհի նոցա: Հեռիք էին 'ի նմանէ ոչ աւելի քան զերկօրեայ ճանապարհ, և ահա լսեն թէ գունդք երկու հասեալ գան առաքեալք 'ի Կեսարէ: Յայնժամ ղակիշ ածեալ հնգետասան հազար քայլ 'ի բացէ, կամին ըսպասել գերմանացւոցն օգնութեան: Լաբիենոս ծանուցեալ զխորհուրդ թշնամեացն, և յուսացեալ թէ 'ի յանդգնութենէ նոցա տացի իւր ասպարէզ ինչ, թողեալ զաղխն 'ի պահպանութիւն հինգ խմբից, ելանէ քսան և հինգ խմբիւք և մեծաւ այրուձիով խաղայ ընդ առաջ թշնամւոյն, և հազար քայլ մեկուսի 'ի նմանէ՝ բանակ հարկանէ: Էր ընդ մէջ Լաբիենոսի և թշնամւոյն գետ մի դժուարանցանելի քարաժեռ սեպացեալ դարափամբք: Ընդ այն ոչ ինքն ակն ունէր անցանել, ոչ զթշնամին անցանել յուսայր: Օր քան զօր աճէր յոյս օգնականութեանն: Խօսի համար-

ձակ 'ի ժողովն, թէ զգերմանացիս ասեն մերձենալ, և ինքն զիւր և զզօրուն բաղդ ոչ արկցէ յերկբայս, և վաղիւ ընդ այգն բանակ առցէ: Պատմի այս փութանակի առ Թշնամիսն, թէ 'ի մեծ բազմութենէ գալլիացի այրուձիոյն՝ զոմանս բնութիւնն ստիպէ նպաստ լինել գալլիական կողմանն: Կոչեցեալ Լաբիենոս գիշերախառն զհազարապետս զօրուն և զնախապետսն առաջի առնէ զխորհուրդս կամաց իւրոց. և առ դիւրաւ ևս արկանելոյ 'ի Թշնամիս կասկած երկիւղի, մեծաւ աղաղակաւ և ամբոխիւ քան զօրէն հռովմէական սովորութեան՝ առնուլ հրամայէ զբանակն. որով փախստի իմն օրինակ եցոյց զչուն: Եւ այս ևս 'ի մեծի անդ մօտաւորութեան բանակաց՝ պատմի 'ի լրտեսաց յառաջ քան զաշալուրջս յունկն Թշնամեաց:

Ը. Այն ինչ հազիւ գունդն վերջակաց ելեալ ըստ բանակետղն, և ահա անդէն գալլիացիք խրախոյս առ միմեանս բարձեալ, չկորուսանել 'ի ձեռաց զաւարն ակնկալեալ. զի 'ի զարհուրել հռովմայեցւոց՝ աւելորդ է սպասել գերմանացւոցն Թիկանց. և ոչ պարծանքս մեր ներեն՝ այսչափ ամբոխիւ զօրու՝ զայդ սակաւաձեռն արեար, ևս և փախըստական և ծանրաբեռնեալ, չիշխել հարկանել: Ոչինչ երկմտեն անցանել ըստ գետն և յանպատեհ տեղւոջն զմարտն մղել: Այսմ դէտ ակն եդեալ Լաբիենոս, հանդարտ յառաջ խաղայր նովին պատճառանօք երթի. որպէս զի զամենեսին ձգեսցէ այսր քան զգետն: Յայնժամ գունդ ինչ յաղխէ անտի յառաջ արձակեալ և արկեալ 'ի հողաբլուր մի. Ահաւասիկ ձեզ, ասէ, զօրականք. որում ցանկայիքն՝ հասեալ կայ. ունիք զԹշնամին 'ի նեղ և անձուկ և անպատեհ տեղւոջ. ցուցէք զօրավարացս զնոյն քաջութիւն, զոր բազում անգամ ցուցէք սպարապետին. դիք 'ի մտի Թէ նա ինքնին աստ իցէ և զեղեալսն տեսանիցէ: Զայս ասէր, և զնշանսն առ Թշնամին տայր դարձուցանել, և զռազմն ճակատեցուցանել. և վաշտս քանի մի Թողեալ 'ի պահ կարասւոյն, զայլ այրուձին յերկոսին Թևսն կազմէ: Մերոցն անդէն և անդ զաղաղակ բարձեալ, արդնընկէց 'ի Թշնամիսն

լինին։ Նոքա տեսեալ՝ զի զօրս փոխուցանել ակն ունէին, նոքին զայրագին նշանօք սաստանելովք առ ինքեանս յարձակեալ գային, և ոչ բռնութեան Թափոյն հանդարտեցին, և յառաջնում անդ հանդիպման 'ի փախուստ անկեալք՝ դիմեցին 'ի մօտաւոր անտառն, որոց Լաբիենոս այրուձիովն զհետ պնդեալ, զբազումս կոտորեալ, զյոլովս ձերբակալ արարեալ, յետ աւուրց ինչ առնու զքաղաքն։ Քանզի գերմանացիք որ նոցա յօգնութիւն գային, զգացեալ եղեալ փախըստեան Տրեւիրաց, 'ի տուն դարձան։ Ընդ նոսին ազգայինք Ինդուտիոմարայ՝ առաջնորդք ապստամբութեանն, ընկերակցեալ ընդ նոսին՝ մեկնեցան 'ի քաղաքէն։ Կինգետորիքս՝ զոր 'ի սկզբանէ ցուցաք կացեալ 'ի հարկի ծառայութեան, տուաւ 'ի ձեռս նորա իշխանութիւն և տէրութիւն։

Թ. Կեսարու 'ի Մենապեանց 'ի Տրեւիրս գնացեալ, յերկուց պատճառաց սահմանեաց անցանել ընդ Հռենոս. մի՝ զի Թիկունս ընդդէմ իւր առաքեալ էին Տրեւիրաց, երկրորդ՝ զի մի՛ Ամբիորիքս ապաւէն արասցէ զնոսա։ Զայս հաստատեալ, փոքր մի 'ի վերոյ քան զայն տեղի՝ ընդ որ յառաջն անցուցեալ էր զզօրն, եդ 'ի մտի կամուրջ արկանել։ Ցայս եղեալ և հաստատեալ խորհրդոյն՝ մեծաջան պնդութեամբ զօրականին 'ի սակաւ աւուրս գործն կատարումն առնոյր. և Թողեալ 'ի Տրեւիրս պահապանս կամըրջին՝ Թէ գուցէ խռով ինչ յանկարծ 'ի նոցանէ յարիցէ, զայլ ամբոխն և զայրուձին անցուցանէ։ Ուբեանք որոց պատանդս տուեալ և 'ի հպատակութիւն եկեալ էին, հրեշտակս առնեն առ նա՝ անբասիր առնել զանձինս, իրազեկ արարեալ՝ Թէ քաղաքէն իւրեանց 'ի Տրեւիրս չիք առաքեալ օգնականութիւն, և ոչ նոքա դրժեալ դաշինն։ Խընդրեն և պաղատին խնայել յինքեանս, զի մի խառն ընդ գերմանացւոցն ատելութեան՝ անյանցք փոխանակ ընդ յանցաւորաց վրէժս լուծցեն։ ԵԹէ այլ ևս պատանդս կամիցի, տալ խոստանան։ Քննեալ Կեսարու զիրսն, գտանէ 'ի Սուեւաց առաքեալ զօգնութիւնն, զՈւբեանց անմեղադրութիւնն ընդունի, մտանս և անցս 'ի Սուեւս որոնէ։

Ժ. Անտի յառաջ 'ի սակաւ աւուրս տեղեկանայ յՈւբեանց անտի, զի Սուեւք ամենայն 'ի մի վայր զզօրսն կուտեն, և ազգք որ ընդ իւրեանց իշխանութեամբ էին՝ պատգամ առնուս յղեն՝ առաքել առ ինքեանս օգնութիւն հետի և հեծելոյ: Զայսոսիկ ծանուցեալ՝ ժողովէ պաշար 'ի ռոճիկ, և ընտրէ տեղի յարմար 'ի բանակետղ: Հրամանն տայ Ուբեանց ածել խաշինս, և զամենայն ինչս իւրեանց յամուր աւանս հաւաքել, յուսացեալ զբիրտ և չինական մարդիկն ստիպել հարկել առ կարօտութեան պարենի 'ի ճախող ուրեք վայրի տալ պատերազմ: Պատուէր տայ առաքել ստէպ լրտեսս 'ի Սուեւս՝ գիտել որ ինչ առ նոսա գործիցի: Նոքա զհրամանն առնեն, և 'ի սակաւ աւուրս պատմեն*, 'ի լուր համբաւոյ գալստեան զօրաց հռովմայեցւոց՝ ընկրկեալ Սուեւաց ցեղերս սահմանացն իւրեանց՝ իւրեանցայովքն հանդերձ, և նիզակակից գնդօք առ հասարակ. և զի է անդ անտառ մեծ յոյժ, Բասենիս անուն, երկայնաձիգ 'ի խորս կոյս, որ որպէս պատուար 'ի բնէ անջրպետէ զՔերուսկս 'ի Սուեւաց, և զՍուեւս 'ի Քերուսկաց՝ պահել զնոսա 'ի հինից իրերաց: Անդ 'ի մուտս անտառին ղկայ առեալ կան Սուեւք՝ ձնալով գալստեան հռովմայեցւոց:

ԺԱ. Յայս վայր հասեալ բանիցս՝ 'ի դէպ Թուի ինձ տալ զնկարագիր բարուց գաղղիացւոց և գերմանացւոց, և ցուցանել իւ զանազանիցին յիրերաց ազգքս երկոքին: Ի Գաղղիա ոչ միայն յանցնիւր քաղաքս և յաւանս, և 'ի մարզս, այլ գրեաթէ և 'ի տունս իւրաքանչիւր այլ և այլ կուսակցութիւնք են, և կուսակցութեանց իւրաքանչիւր առաջնորդք, որք համարին՝ 'ի նոցին իսկ հաւանութենէ կացեալք. վարել զգերագոյն իշխանութիւն. որոց է զամենայն իրս և զխորհուրդս սահմանել ըստ կամս և ըստ ընտրութեան իւրեանց: Ի վաղնջուց Թուի այս կարգ հաստատեալ, զի մի՛ ոք 'ի ռամկէն զրկեսցի յօգնականութենէ ընդ-

* Աստ ապաւի Թարգմանութիւն Բագրատունւոյ Հօրն:

դէմ հզօրաց. զի ոչ ոք երբեք հանդուրժէ ընդ զրկանս և ընդ հարստահարութիւն իւրոցն. ապա թէ ոչ՝ չմնայ ինչ այնպիսումն իշխանութիւն 'ի վերայ իւրոցն: Այս կարգ է ընդ համաբոլոր Գալլիա. զի քաղաքք համօրէն յերկուս կուսակցութիւնս են անդ բաժանեալ:

ԺԲ. Ի գալ Կեսարու 'ի Գալլիա՝ միոյ 'ի կուսակցութեանց եդուացիք կային իշխան և միւսումն սեկուանացիք: Սոքա անզօրք առանձինն՝ վասն 'ի բազում ժամանակաց հետէ նախիշխան կալոյ եդուացւոց՝ և յոգունք յոյժ էին կուսակիցք նոցա, բազում խոստմամբք և մեծամեծ տուժիւք միաբանեալ էին ընդ իւրեանս զգերմանացիս և զԱրիովիստ. որով 'ի բազում պատերազմունս յաղթեալ, և զազատանի եդուացւոց կոտորեալ՝ զօրացեալ էին յոյժ, մինչև զմեծ կէս մասն կուսակցացն եդուացւոց յինքեանս ձգել, և զազատորդիս նոցին առեալ 'ի պատանդ՝ ստիպել զնոսա յերդումն հրապարակաւ՝ չմտաբերելոյ երբեք 'ի խորհուրդ թշնամութեան ընդդէմ սեկուանացւոց, և մինչև տիրել ևս սահմանակից վայրաց հատելոց 'ի նոցանէ զինու զօրութեամբ: Ցայսցանէ ստիպեալ Դիւիտիակոսի դիմել 'ի խնդիր օգնականութեան առ ծերակոյտն 'ի Հռոմ, և դարձեալ էր անտի ձեռնունայն: Ի գալ Կեսարու և 'ի կերպարանափոխ լինել իրաց՝ դառնալով պատանդիցն եդուացւոց, և 'ի գումարել վերստին ընդ նոսա առաջնոցն իւրեանց կուսակցաց, և նորոց ևս յաւելուլ հայթայթանօք Կեսարու, (զի տեսանէին զժողովեալսն առ նոսա ուտիւ բարեկամութեան՝ բարեբախտագոյնս ընդ արդարասէր իշխանութեամբ նոցին), և 'ի յաջողել ևս իրաց նոցա յամենայնի և բարգաւաճել ըստ արժանեաց և ըստ պատուոյ, նուազեալ էր իշխանութիւն սեկուանացւոց, և յաջորդեալ զնոսա հռեմացւոց. որոց ոչինչ ընդհատ ունել շնորհըս առ Կեսարու ծանուցեալ՝ որք միանգամ առ հնացեալ ոխութեան իւրեանց չկարէին և ոչ իւիք միաբանիլ ընդ եդուացիս, դային յարէին 'ի հռեմացւոցն կուսակցութիւն. և հռեմացիք մեծաւ խնամով պաշտպան կային նո-

ցա՝ հաստատելով այնու զնոր և զդեռածին իշխանութիւն իւրեանց։ Ըստ այսոցիկ իրաց՝ էդուացիք համարէին նախիշխանք, և յետ նոցա ունել հռեմացւոց զերկրորդ տեղին։

ԺԳ. Ընդ ամենայն Գալլիա կրկին ևեթ կարգք են մարդկան 'ի պատուի և 'ի համարի. քանզի ռամիկն ընդ ստրուկս է 'ի համարի, ապիկար ինքնին առ ամենայն, և ոչ մուտ 'ի խորհուրդս է նմա։ Բազումք ևս այնոքիկ են, որ ընկճեալ ընդ պարտեօք, կամ ընդ ծանր ծանր հարկօք, կամ հարստահարեալ յանիրաւ բռնութենէ հզօրագունից, մատնեն 'ի ծառայութիւն ազնուականաց. որք նովին օրինօք վարին ընդ նոսա՝ որպէս տեարք ընդ ստրուկս։ Մին 'ի կարգաց աստի Դրուիդացն է, միւսն Ասպետաց։ Առաջնոցն գործ է 'ի վերայ կալ դիցն պաշտամանց, և 'ի հանդերձանս զոհից հասարակաց և առանձնաւորաց, և 'ի հրահանգս կրօնից։ Առ սոսա ընթանայ մանկտին յոգնախումբ յուսումն, և մեծարէ զնոսա յոյժ։ Քանզի 'ի դատս հասարակաց և առանձնաւորաց, գրեթէ ամենեքեան նոքա կան դատաւորք. և զեղերանց և զսպանութենէ, և զվէճից ժառանգութեան կամ սահմանաց՝ նոքա տան դատավճիռ, և սահմանեն վարձս կամ պատուհաս։ Եւ եթէ ոք, թէպէտ 'ի սոսկականաց և թէ յաւագաց դիմադարձ գտցի վճռոյ նոցա, անհաղորդս առնեն զնա զոհից, որ պատուհաս մեծ է առ նոսա։ Եւ որ այսպէս պատուհասեալն է՝ յամբարշտաց և յոճրագործաց է 'ի համարի, և ամենեքեան խորշին 'ի նմանէ և խղճեն մերձենալ 'ի նա և խօսակից լինել ընդ նմա, թէ գուցէ 'ի հուպ լինելն առ նա՝ չարւոյ իմիք հանդիպեսցին. նա և ոչ զիրաւունս ինչ թէ խնդրեսցէ՝ լսելի լինի, և ոչ 'ի պատիւ ինչ հասանել կարէ։ Է ոք նախագահ 'ի Դրուիդս գերագոյն իշխանութեամբ. և 'ի մեռանել նորա՝ յաջորդէ զնա արժանաւորագոյն ոք 'ի նոցանէ։ Իսկ թէ յոլովք իցեն հանգիտապատիւք՝ նոցին իսկ Դրուիդացն քուէիւք առնի ընտրութիւն. և է երբեք զի և 'ի զէն ևս գան վասն բարձաձգութեան։ Սոքա ըստ սահմանեալ ժամանակի 'ի տարւոջ՝ գան ժողովին 'ի սրբավայրի ուրեք 'ի

սահմանս գաւառին Կարնուտայ, որ բոլորովին Գաղղիոյ միջավայր համարի. և ամենքեան որոց վէճք իցեն և կռիւք, անդր դիմեն ամենուստ։ Հաստատութիւն կարգացս 'ի Բրիտանիա առեալ սկիզբն, և անտի աստ համարի անցեալ 'ի Գաղղիա, և ցարդ իսկ որոց միանգամ ցանկալի է քաջահմուտ լինել նորայս՝ անդր երթան ուսանել։

ԺԴ. Դրուիդք սովոր են խորշել 'ի պատերազմէ, և ոչ հաւասար այլոց պահանջին 'ի նոցանէ տուրք. զերծք են 'ի զինուորութենէ և ազատք յամենայնի։ Ցայսքանեաց բարեշնորհութեանց յորդորեալ բազմաց՝ ինքնայօժար դիմեն առ նոսա յաշակերտութիւն, և այլք եւս 'ի ծնողաց և յընտանեաց առաքեալք։ Անդ, ասեն, ուսանել ոմանց տաղս բանից բիւրաւորս 'ի բերան, և յայն սակս իսկ յերկարել ոմանց յաշակերտութեան զամս քսան։ Այլ զուսեալսն ոչ օրէն համարին տալ 'ի գիր. թէպէտ և յայլ ինչ իրս աշխարհին և յառանձնականս՝ գրեաթէ առ հասարակ հելլեն գրութեամբ վարեալք։ Երկուց իրաց աղագաւ, ինձ թուի, զայս այսպէս օրինադրեալ նոցա. մի՝ զի մի հասարակաց լիցի ուսումնն և ռամկին. և միւս եւս՝ զի մի որք ուսանիցին՝ վստահացեալ 'ի գիր՝ հեղգասցին 'ի հրահանգս յիշողականին, որպէս պատահէ իսկ բազմաց զի գրովք օժանդակեալ՝ թերահոգ գտանին յուսումն և 'ի վարժս յիշողականին։ Երիցագոյն փոյթ նոցա է խորագոյնս տպաւորել 'ի միտ զանմահութիւն հոգւոց և զփոփոխումն նոցին 'ի մեռանելն՝ մարմնոյ 'ի մարմին, համարելով զայն յորդոր մեծ 'ի քաջութիւն, և յարհամարհել զերկիւղ մահու։ Դարձեալ և բազում ինչ այլ վարդապետութիւնք են նոցա զաստեղաց և զընթացից նոցին, զընդարձակութենէ տիեզերաց և զերկրի, զբնութենէ արարածոց, և զզօրութենէ և զիշխանութենէ դիցն անմահից, զորս ուսուցանեն մանկտւոյն։

ԺԵ. Երկրորդ՝ Ասպետացն է կարգ, որք 'ի տալ հարկին և 'ի գրգել մարտի, (որ յառաջ քան զգալուստ Կեսարու՝ գրեաթէ ամ յամէ պատահէր՝ 'ի տալ կամ 'ի վանել

զասպարանակ), ամենեքեան առ հասարակ ընթանային 'ի պատերազմ, ըստ իւրաքանչիւր ազնուականութեան տոհմին և ըստ առաւելութեան ճոխութեանցն յօգնախումբս ծառայից և սարկաց ընդ իւրեանս ածելով՝ յայս եւեթ զամենայն զօրութիւն իւրեանց և զմեծութիւն կացուցեալ։

ԺԶ. Գաղղիացիք մոլախապաշտք էին յոյժ ազգաւ. վասըն որոյ անկեալքն 'ի նոցանէ յախտս ծանունս, և որք 'ի պատերազմունս և 'ի վտանգս դատանին, առնէին մարդազոհս, կամ զանձինս ուխտէին 'ի զենումն, զոհիցն պաշտօնեայս զԴրուիդս ունելով. զի ոչ այլազգ համարէին ցածուցանել զցասումն դիցն անմահից, բայց կեանս ընդ կենաց փոխանակելով. և զոհքն հրապարակաւ սահմանեալ կատարէին առ նոսա։ Առ ոմանս 'ի նոցանէ էին առնապատկերք վիթխարիք՝ ողորահիւս անդամօք՝ յորս արկեալ զմարդիկ կենդանւոյն, հուր 'ի ներքուստ մատուցանէին, և 'ի ծաւալել բոցոյն շուրջանակի՝ հեղձամահ լինէին ամենեքեան։ Ղաճոյագոյն զոհ առաջի դիցն անմահից համարէին զպատուհաս ըմբռնելոցն 'ի գողութեան, յաւազակութեան կամ յայլ ինչ ոճիրս. և 'ի պակասել այնպիսեաց՝ ոչ խնայէին և յանմեղս։

ԺԷ. Վեհագոյն 'ի դիս պաշտէին զՀերմէս, որոյ յոյժ յաճախեալ էին դրօշեալք. և զնա համարէին հայր և գտակ արուեստից, զնա պետ և շահապ ճանապարհաց. զնա զօրավիգն հզօր 'ի տուրևառս և 'ի շահավաճառութիւն։ Յետ նորա մեծարէին զԱպողոն, զԱրէս, զԴիոս և զԱթենաս. զորոց կրեթէ հանգոյն այլոց ազգաց բերէին կարծիս. զԱպողոն համարեալ ախտահալած, զԱթենաս առաջնորդ և ուսուցիչ արուեստից և ձեռագործաց, զԴիոս իշխեցող երկնից, և զԱրէս տնօրէն պատերազմաց. որում նախ քան զմարտ ուխտէին յաճախ զաւար պատերազմին, և յետ յաղթութեան հանէին նմա 'ի սպանդ զամենայն անասուն առեալ յաւարէն. իսկ զկապուտ կողոպուտ ածեալ կուտէին 'ի մի վայր, որպէս է տեսանել 'ի բազումս 'ի քաղաքաց կոյտս կոյտս 'ի նուիրական տեղիս շեղջեալ։

Եւ դուն ուրեք անարգու ոք կրօնից՝ ժպրհի պահել ինչ առ իւր յաւարէն, կամ 'ի չեղջակուտից անտի գողանալ. և եղեռնաւորի այնպիսւոյ դառն և չարատանջ սահմանեալ է պատուհաս։

ԺԸ. Գալլիացիք առ հասարակ զՊլուտոն համարին իւրեանց նախահաւ՝ որպէս սերեալք 'ի նմանէ. և զայս 'ի Դրուիդաց ասեն ընկալեալ աւանդութեամբ։ Եւ այսր աղագաւ զմիջոցս ժամանակաց գիշերօք չափեն և ոչ տուընջեամբք. և սկիզբն աւուրց կենաց և ամսոց և ամաց կարգեն զգիշերս՝ որոց յաջորդեն տիւք։ Իսկ յայլում ամենայնի գրեթէ համանմանք այլոց ազգաց՝ այնու և եթ առավորութեամբ զանազանեալ 'ի նոցանէ, զի առ գալլիացիս՝ մինչև հասեալ պատանեաց 'ի չափ հասակի զինուորութեան, չէ նոցա օրէն հրապարակաւ առընթեր հարց իւրեանց կալ, և ամօթ մեծ համարի հարց՝ եթէ որդիք մանկահասակք երևեսցին համարձակ առաջի նոցա։

ԺԹ. Որչափ ինչ յամուսնանալն ընդունին արք, իբրև օժիտ 'ի հարսանց՝ համաչափ արժէից նորին յաւելուն գումար արծաթոյ 'ի նոյն, և միահամուռ կալեալ հաշիւ, ունին զշահսն 'ի պահեստի, և որ ոք յերկոցունցն լիցի յերկարակեաց՝ ժառանգէ զերկաքանչիւր բաժինս հանդերձ շահուք ամացն անցելոց։ Արանց իշխանութիւն է կենաց և մահու 'ի վերայ կանանց իւրեանց, ևս և 'ի վերայ որդւոց. և 'ի մեռանել մեծազգւոյ ուրուք տանուտեառն՝ գան 'ի մի վայր ամենայն ազգականք նորա, և եթէ գուցէ ինչ կասկած բռնամահ գոլոյ առնն, 'ի հարց փորձ մատուցանեն զկանայս նորա որպէս ստրուկս. և եթէ 'ի յայտ գայցեն իրքն, հրկէզ և չարատանջ 'ի մահ մատնեն զնոսա։ Առ գալլիացիս հանդէս յուղարկաւորութեան՝ ըստ պայմանի կենաց նոցա մեծաշուք է և բազմածախ, զոր ինչ ցանկալի և սրտահաճոյ վարկանիցին լեալ յուղարկաւորելոցն, ևս և անասունս, ընկենուն 'ի փայտակոյտ բորբոքեալ. և ոչ բազում ժամանակք են՝ զի և զծառայս նոցա և զձեռասունս՝ զորս գիտէին լեալ նոցա սիրելագոյնս, ընդ

Նոսա ծախէին 'ի հուր՝ յարժանավայելուչ յուղարկաւորութիւն նոցա:

Ի. Քաղաքաց՝ որ յաջողագոյնք են 'ի բարեկարգ տեսչութիւն հասարակաց պետութեան, օրէնս սահմանեալ է, զի որ ոք վնասակար ինչ պետութեան լուիցէ 'ի համբաւոյ կամ 'ի հծծելոյ մերձաւորաց, ազդ արասցէ աւագանւոյն առանց զեկուցանելոյ զայն այլում. գիտելով չափ զի յոլով ուրեք արք իրահամարձակք և անհմուտք՝ յանստոյգ համբաւոյ խռովեալք՝ բերին յանպատեհս, և յոր ինչ 'ի վեր է քան զչափ պայմանի իւրեանց: Իսկ աւագանին որպէս և զիարդ պատշաճ դատեսցի՝ զկարևորսն ծանուցեալ ժողովրդեան, զայլսն ծածկէ. զի զիրաց հասարակաց պետութեան չէ օրէն խօսել՝ բայց յատենի ժողովոյն:

ԻԱ. Յոյժ այլազգ յայսցանէ գերմանացւոցն է կենցաղ և սովորոյթ. չեն առ նոսա Դրուիդք՝ առաջնորդք կրօնից և վերակացուք զոհից. զայնոսիկ և եթ ունին առ աստուածս, զորս ակներև տեսանեն, և յորոց 'ի խնամսն վայելեն իսկապէս, որպիսի են Արեգակն, Հուր և Լուսին. իսկ զայլոց չունին և զծանօթութիւն: Անցուցանեն զկեանս իւրեանց յորսս և 'ի հրահանգս զինուորութեան. կրթին 'ի մանկութենէ յաշխատութիւն և 'ի խստամբերութիւն: Մեծապէս գովելի են առ նոսա որք յարբունսն յամենան. քանզի հաւանեալ են յաւելուլ այնպիսեաց 'ի հասակ և 'ի կորով և 'ի ջլապինդ հաստատութիւն: Ամօթ ամենամեծ համարեալ է առ նոսա մինչչև քսանամենի լեալ գիտել զկին. և թաքուցանել ևս զայն ոչ կարեն՝ զի խառն լոգանան 'ի գետս, և մորթովք և դոյզն այծենեօք ծածկեալք՝ մեծաւ մասամբ մերկանդամք են:

ԻԲ. Զերկրագործութենէ չէ ինչ նոցա փոյթ. զի սովորաբար կաթամբ, պանրով և մսեղինօք պարենաւորին. և չիք ուրուք չափ ինչ կամ սահման սեփական արտորէից. բայց աւագանին և իշխանք ամի ամի բաշխեն բնակակից մարդկան կամ ընտանեաց՝ անդաստանս որչափ և ուր պատշաճ համարին. և 'ի կատարած տարւոյն ստիպեն զնոսա

թողուլ զայնոսիկ այլոց։ Եւ այս բազում ինչ ածեն պատճառս, զի մի՛ յերկար սովորութեամբ՝ երկրագործութիւն զհրահանգս մարտի փոխանակեսցէ. զի մի՛ վաստակասիրաց գուն գործեալ զիւրաքանչիւր սահմանս ընդարձակել՝ բռունք զտկարս 'ի կալուածոց իւրեանց հալածեսցեն. զի մի՛ պատրաստարանս ամրածածուկս 'ի սառամանեաց և 'ի տօթոյ կառուսցեն. զի մի՛ ընչաքաղցութիւն 'ի ներքս սպրդեալ՝ հերձուածոց և երկպառակութեանց լիցի պատճառ. և զի ժողովուրդք հաճք և հաւան սրտիւ կացցեն 'ի հպատակութեան, տեսանելով զի և տկարք հզօրագունից հաւասարեն ճոխութեամբ։

ԻԳ. Քաղաքաց առ նոսա այնչափ առաւելուն փառք, որչափ ընդարձակագոյն վայրք ամայիք և անապատացեալք շուրջ կայցեն զնոքօք. զի առհաւատչեայ զօրութեան իւրեանց համարին զմերձակայից ամենեցուն տեղի տալ 'ի վայրաց անտի հալածական, և ոչ ումեք իշխել մերձ առ նոսա ունել բնակութիւն։ Համարին և յապահովացեալս այնու յերկեւաց յեղակարծ ասպատակաց։ Յորժամ հասանիցէ քաղաքի ումեք տալ կամ վանել զպատերազմ՝ ընտրեն զօրավարս, տուեալ նոցա իշխանութիւն կենաց և մահու։ Բայց 'ի ժամանակի խաղաղութեան չիք ոք նոցա իշխան հասարակաց, այլ գլխաւորք իւրաքանչիւր քաղաքաց և աւանաց կան իրաւարարք ժողովրդեան և կարճեն զվէճս։ Որք արտաքոյ քան զսահմանս քաղաքաց գործին գողութիւնք՝ չածեն բնաւ նախատինս, օգտակար համարեալ զայն 'ի կրթանս մանկտւոյ և 'ի բառնալ զվատութիւն։ Եթէ յաւագաց ոք 'ի ժողովի առաջարկէ կալ զօրավար, և ձայն տայ որոց կամիցին զհետ իւր փողել, ամենեքեան որոց հաճոյ թուի առաջարկն և առաջարկուն՝ յառնեն յոտին կան և խոստանան ձեռն տալ նմա. և ամբոխ բազմութեանն գովասանէ զնոսա. իսկ որք հրաժարեն՝ ընդ դասալիքս և ընդ մատնիչս համարին, և բառնի 'ի նոցանէ ամենայն վստահութիւն։ Դրժել ասպնջականութեան չէ օրէն առ նոսա, և զեկեալն առ իւրեանս որ և է

աղագաւ, պաշտպանեն 'ի բռնութենէ, առ որքաղանս ունին զնոսա և հացակից ևս առնեն:

ԻԴ. Յառաջ ժամանակաւ յորժամ հզօրագոյնք էին գալլիացիք քան զգերմանացիս՝ վանէին զնոսա պատերազմաւ. և առ 'ի չբաւելոյ անդաստանաց մեծի բազմութեան իւրեանց՝ առաքէին գաղթականս յայնկոյս Հռենոսի. ուստի եղև վոլկեան Տեկտոսակաց գրաւել 'ի բնակութիւն իւրեանց զպարարտագոյնս 'ի սահմանաց գերմանացւոց շուրջ զանտառաւն Հերկինեայ, զոր Երատոսթենեայ և այլոց ոմանց 'ի Յունաց գտանեմ ծանօթ լեալ ընդ անուամբ Որկինեայ: Անդ հաստատեալ կայ մինչև ցայսօր ազգն այն՝ գերահամբաւեալ արդարակորովն և հզօր. որ և ցարդ հանգոյն գերմանացւոց կենցաղավարի աղքատօրէն՝ սակաւապէտ և ժուժկալ, և հանգոյն նոցին կերակրի և զգենու: Բայց գալլիացւոց մերձ կալով 'ի Պրովինկիա, և ծանօթութեամբ իրաց ամենայնի որ յայնկոյս ծովուն՝ լիացեալ 'ի պէտս և յղփացեալ, առ սակաւ սակաւ տկարացան, և 'ի բազում պատերազմունս պարտեալ՝ չիշխեն կալ 'ի կշիռ ընդ զօրութեան գերմանացւոց:

ԻԵ. Հերկինեայ անտառին, զորմէ 'ի վեր այսր եղեն բանք, էր լայնութիւն իբրև գնացք ինն օրեայ ճանապարհի քաջընթացի առն. զի ոչ է մարթ այլազգ սահմանել առ 'ի չգոյէ առ նոսա չափուց ճանապարհի: Անդուստ 'ի սահմանացն Հելուետացւոց, Նամետաց և Հռաւրակաց ձգի դէպ ուղիղ զափամբք Դանուբ գետոյ 'ի սահմանս Դակաց և Անարտաց. անտի ընդ ձախակողմն խոտորեալ 'ի գետոյն՝ մեծաւ ընդարձակութեամբն պատի զբազում աշխարհօք և զազգօք: Ոչ ոք 'ի գերմանացւոց՝ գնացեալ ընդ այն մինչև զաւուրս վաթսուն՝ մերձ հասեալ է 'ի ծայրս անտառին, և կամ կարացեալ ցուցանել զսկիզբն նորին: Բայց զի բազմազգի երէոց վկայի գոլ կայան. և առաւել նշանաւորք արժանի յիշատակի այսոքիկ են:

ԻԶ. Եզն նման եղջերուի՝ միակ ունելով եղջիւր 'ի ճակատուն կշիռ 'ի մէջ ականջացն ցցուեալ ուղղաբերձ, մե-

ծագոյն յոյժ քան զծանուցեալսն առ մեզ. և 'ի ծայրէն ոստ որպէս արմաւենւոյ ստեղնեալ լայնատարած: Համանման արուին է և էգն, զնոյն ունելով ձև և մեծութիւն եղջեր:

ԻԷ. Են և Ալկէսն անուանեալք որք նմանին այծեաց ձևով և խայտաբղէտ մորթով. այլ խուռն մի մեծագոյնք են քան զնոսա և անեղջիւրք, և ոտք նոցա առանց յօդից և խաղալեաց. որով ոչ ընկողմանել կարեն 'ի հանգիստ, և ոչ յառնել յոտն կալ՝ եթէ լիցի նոցա անկանել գլորմամբ. ծառք 'ի խշտիս են նոցա. յենուն 'ի ծառս՝ փոքր մի առ 'ի կողեալ 'ի քուն: Վասն որոյ որսորդք 'ի հետոց նոցա գուշակեալ ուր յաճախեն՝ անդ զծառս՝ կամ յարմատոց խարխալեն, և կամ հատեալ թողուն զնոսա կանգունս վեր 'ի վերոյ. որպէս զի 'ի յենուլ երէոցն 'ի նոսա, որպէս սովոր են, անկանին ծառքն անկայունք ընդ բեռամբն, և ինքեանք ընդ նոսա համակործան:

ԻԸ. Երրորդ է ազգ ինչ գոմշաց, որք սակաւ մի փոքրագոյնք են քան զփիղս, նմանեալք ցլուց գունով, ձևով և տեսլեամբ: Ուժեղք են յոյժ և երագունք. ոչ խնայեն ամենևին որոց պատահեսն՝ ոչ մարդկան, ոչ անասնոց: Զսոսա բազում ճարտարութեամբ արկեալ 'ի փոս՝ սպանանեն: Յայս վաստակ ճգնի հասակն պատանեկան, և բռանայ 'ի կիրթ որսոց այսպիսեաց. և որ յոլովագոյնս 'ի նոցանէ սպանանիցէ՝ զեղջիւրս նոցա հրապարակաւ ածեալ 'ի ցոյց առհաւատչեայ, մեծի գովութեան լինի արժանի: Զէ մարթ ընդելացուցանել զնոսա և 'ի համբոյր ածել՝ թէ և մատաղորթս կալեալ: Եղջերք նոցա աննմանք են եղջերաց արջառոցն մերոց մեծութեամբ, ձևով և գունով, և խնդրին խնամով. զի շրթունք նոցին պատեալ արծաթով՝ փոխանակ բաժակաց վարին 'ի մեծահաց խնճոյս:

ԻԹ. Եւ իբրև ստուգեաց Կեսար 'ի լրտեսից Ուբեաց՝ զի Սուեւք ամրացեալ էին յանտառս, հաստատեաց 'ի մտի չխաղալ յառաջ, երկուցեալ 'ի կարօտութենէ պարենից, զի որպէս 'ի վեր անդր ասացաք՝ աղախտ լեալ է երկրագոր-

ծութիւն առ գերմանացիս առ հասարակ։ Բայց և զի մի արհաւիրքն՝ զոր գալստեամբ իւրով արկեալ էր 'ի խուժս՝ բարձցէն 'ի սպառ, և առ 'ի յամեցուցանել զգալուստ եկաւորացն առ նոսա յօգնականութիւն՝ նհանջեցոյց զզօրս իւր, և զխելս կամրջին 'ի կողմանէ գետափանցն Ուբեաց՝ ետ հատանել երկերիւր ոտնաչափ, և 'ի ծայր կամրջին կառոյց մարտկոց եռայարկ, և կացոյց անդ 'ի պահ գումարտակս երկոտասան, և ամենայն կարեւոր զգուշութեամբ ամրացոյց զտեղին զայն, և կարգեաց վերակացու վայրացն և կամրջին զպատանին Վոլկատիոս Տուլլոս։ Իսկ ինքն մերձ 'ի հասանել հնձոց ել 'ի վերայ Ամբիորիգեսի՝ առաքեալ զԼ. Մինուկիոս Վասիլ հեծելազօրօքն համօրէն՝ ընդ ճանապարհ արդուեննեան անտառին, որ մեծագոյն է քան զամենայն անտառս Գաղլիոյ, և անդուստ 'ի սահմանացն Տրեւիրաց երկայնեալ ձգի ցՆերուեանս ընդ հինգ հարիւր հազար և աւելի ոտնաչափ, զի ձեպընթաց հասեալ 'ի դէպ ժամանակի՝ յաջողեսցի թերեւս գործել ինչ. և պատուիրեաց նմա մի հուր 'ի հանդոյցս լուցանել, զի մի 'ի հեռաստանէ ծանիցի արշաւանն նորա. և յաւել՝ զի և ինքն զհետ նորա հասանէր։

Լ. Վասիլ արար ըստ հրամանին, և ձեպեալ զընթացսն 'ի վեր քան զամենայն ակնկալութիւն, եհաս կալաւ յեղակարծուց զբազումս 'ի գեղջէից. և ստուգեալ 'ի նոցանէ ուր կայրն Ամբիորիգէս՝ սակաւաձեռն հեծելովք, փութացաւ դիմեաց 'ի վերայ նորա։ Այլաքէն որպէս յայլ ամենայն իրս՝ նոյնպէս և 'ի պատերազմական մեծ է զօրութիւն բախտին. զի եթէ դէպք 'ի բարի յաջողեցին Վասիլեայ, մինչև տեսեալ ուրուք զգալուստ նորա և աղդ արարեալ Ամբիորիգեսի՝ յանզգաստից նորա և յանպատրաստից հասանել 'ի վերայ, ոչ ինչ ընդհատ բարեբախտ գտաւ և Ամբիորիգէս, զի 'ի խռան անդ մարտամբքն զինուց՝ պատեալ պաշարեալ 'ի կառաց և 'ի հեծելոց՝ կարաց խոյս տալ մազապուր 'ի մահուանէ։ Այս յաջողութիւն եղև նմա այնու՝ զի հանգոյն յոլովագունից 'ի գաղղիացւոց, որք 'ի գետափունս և 'ի հովանիս անտառաց բնականան՝ խոյս տուեալ 'ի տօթոյ, նոյն

պէս և Ամբիորիքսի էր բնակութիւն 'ի մէջ մայրեաց. և անդ յանձուկ վայրի զինուորակիցք նորա և ընտանիք սակաւիկ մի զդէմ կալան բռնութեան հեծելոցն մերոց. այլ 'ի գխմամարտել նոցա՝ հեծուցեալ յումեմնէ յիւրոցն 'ի ձի, փախեաւ. և ծածկեցին մայրիք զփախուստ նորա: Այսպէս զօրացաւ բաղդ և 'ի վտանգել զնա և 'ի կեցուցանել:

ԼԱ. Բայց Ամբիորիքսի՝ խորհրդով արդեօք չէր համախմբել բեալ զզօրսն 'ի ճակատամարտ, եթէ 'ի յեղակարծ արշաւանէ հեծելազօրուն տագնապեալ և ոչ ժամանեալ՝ կարծելով և բանակին զհետ իւր հասանել, ասել ոչ ունիմ: Այլ այս հաւաստի է, զի փութացաւ յղեաց գաղտ պատգամաւորս ընդ ագարակս ազդ առնել գեղջկաց՝ յապահովել զանձինս իւրեանց: Կէսք 'ի նոցանէ խոյս տուեալ անկան յարդուեննեան անտառն, այլք 'ի մերձակայ մօրուտս, իսկ որք յովկիանոսն ծովափնեայս էին՝ ամրացան 'ի կղզեակսն՝ յերթևեկէ ալեաց գործեցեալս. բազմաց ևս թողեալ զվայրս բնակութեան իւրեանց, ապաւինեցան յերկիր օտար իւրեանցայովքն հանգերձ: Կատիւոլկ արքայ կիսոյ մասին Եբուրոնաց՝ դաշնակից Ամբիորիքսի, ծեր և ապիկար 'ի պատերազմ, ոչ կարելով խուսել ևս 'ի բաց, դառն անիծանօք նզովեալ զԱմբիորիքս՝ որ գլուխ և առաջնորդ դաշնակցութեանն էր կացեալ, զըմպեաց զկեանս իւր գեղձիւ [1], որոյ յաճախութիւն մեծ է 'ի Գալլիա և 'ի Գերմանիա:

ԼԲ. Սեգացիք և Կոնդրուսացիք՝ ազգք գերմանականք՝ բնակեալք ընդ մէջ Եբուրոնաց և Տրեւիրաց, հրեշտակս աղերսաւորս առաքեցին առ Կեսար՝ մի՛ ունել զինքեանս առ թշնամիս, և մի՛ համախոհս համարել գերմանացւոց բնակելոց յայսկոյս Հռենոսի. զի չէր երբէք մտաբերեալ ինքեանց 'ի պատերազմ, և ոչ ձեռն օգնականութեան տուեալ առ Ամբիորիքս: Կեսարու ստուգեալ զիրսն 'ի գե-

---

1 Ծառ կամ թուփ թունաւոր taxus կոչեցեալ առ լատինս՝ նմանաձայն բառին toxicum, որ է թոյն:

ըելոց անտի, պատուէր ետ ազգացն՝ զփախստականս յեբուրոնացւոց առ ինքն յղել, և խոստացաւ չմխել 'ի սահմանս նոցա, եթէ կային 'ի պատուիրանին: Ապա յերիս խումբս զզօրսն բաժանեալ, զամենայն աղխս լէգէոնացն յղեաց յամրոց անդր՝ որ կոչի Ադուատուկ, և կայ գրեթէ 'ի միջաշխարհին Եբուրոնաց, ուր Տիտուրիոս և Աւրունկուլ կային 'ի ձմերել: Ընտրելագոյն համարեցաւ զայն տեղի, զի 'ի վերայ այլոց իրաց՝ որ ինչ 'ի հերուն հետէ ամրութիւնք լեալ էին անդ՝ ամբողջ կային, որով նուազէր աշխատութիւն զօրականին: Եւ 'ի պահպանութիւն աղխիցն կարգեաց անդ զլէգէոնն չորեքտասաներորդ, զմի յերիցն՝ զորս դեռ ևս գումարեալ էր յԻտալիա, և ածեալ ընդ իւր. և զԿ. Տուլլիոս Կիկերոն կացոյց հրամատար լեգէոնին և զօրանիստ վայրացն, տուեալ նմա հեծեալս երկերիւր:

ԼԳ. Կեսարու զօրահատոյց եղեալ՝ զԼ. Լաբիենոս երիւք լեգէոնօք 'ի ծովակողմն կոյս յղեաց, 'ի սահմանագլուխ Մենապեանց. և զԿ. Տրեբոնիոս նոյնչափ լեգէոնօք 'ի գաւառն սահմանակից Ադուատկաց՝ աւար հարկանել. և ինքն հաստատեցաւ երիւք լեգէոնօքն դիմել 'ի Սկալդիս գետ, որ երթեալ անկանի 'ի Մոսա, և 'ի ծայրս սահմանաց անտառին Արդուենայ, ուր զԱմբիորիքս սակաւուք ոմամբք հեծելովք ասէին փախուցեալ: Եւ 'ի մեկնել իւրում խոստանայր՝ դառնալ յեօթներորդում աւուր, զի էր օր բաշխելոյ ցորեան զօրականին որ 'ի պահ աղխիցն թողեալ. և Լաբիենոսի և Տրիբոնիոսի խրատ տայր՝ 'ի նմին աւուր դարձ առնել, եթէ մարթ էր առանց վտանգելոյ զիրս հասարակապետութեան, որպէս զի խորհրդակցութեամբ, և հետազօտելով 'ի վերայ կացեալ զօրութեանց թշնամեացն՝ կարասցեն ձեռնամուխ լինել միւսանգամ 'ի պատերազմ:

ԼԴ. Զէր Եբուրոնաց, որպէս 'ի վեր այսր ցուցաք, ոչ գունդ պնդակազմ, ոչ բանակետղ, և ոչ դղեակ ամրացեալ զինուք 'ի դիմամարտ. այլ ամբոխ բազմութեան համասփիւռ ընդ երկիրն, խնդրելով իւրեանց 'ի խորաձորս, 'ի

մացառուտս և 'ի մօրուտս անդնալիս՝ տեղի ապաւէնի 'ի փրկութիւն։ Եւ զի մերձակայիցն անդ բնակչաց քաջածանօթ էին վայրքն, մեծի զգուշութեան պէտք էին 'ի պահպանութիւն, ոչ համագունդ բանակին, որում չէր ինչ վետանգ 'ի խուճապելոցն և 'ի ցրուելոյ, այլ իւրաքանչիւրոց 'ի զօրականէն, որոց կորստեամբ վնասէր բանակին ողջոյն։ Քանզի և ցանկութիւն աւարի զբազումս առեալ ձգէր 'ի հեռաստան, ուր անստոյգ ճանապարհք 'ի թանձրախիտ անտառի ոչ ներէին խաղալ համախումբ։ Առ 'ի կատարել զգործ պատերազմին և 'ի սպառել զճետ ապիրատ մարդկանն՝ հարկ էր 'ի վաշտս վաշտս զզօրսն հատանել, և աննուստ 'ի վերայ նոցա անկանել. իսկ եթէ ըստ օրինի և ըստ սովորութեան հռովմէական զօրուն ընդ իւրաքանչիւր դրօշուք խմբեալ կային վաշտք, երկիրն ինքնին պաշտպանէր բարբարոսաց, և ոչ պակասէր նոցա յանդգնութիւն՝ գաղտագողի պարանակալութեամբ 'ի վերայ յարձակել միում միում 'ի ցրուելոց վաշտիցն։ Սակայն ընդդէմ դժուարութեանցս այսոցիկ՝ փոյթ և խնամ որչափ մարթ էր 'ի վար արկան, լաւագոյն համարեալ զանց առնել ուրեք 'ի վնասելոյ զթշնամին, թէպէտ ամենեցուն զրգռեալ էին ոգիք 'ի վրէժխնդրութիւն, քան կորստեամբ իւիք զօրականին՝ ամենայն ուրեք հասուցանել նմա վնաս։ Բայց Կեսարու պատգամաւորս 'ի սահմանակից քաղաքսն յղեալ, հրաւիրեաց զամենեսին յուսով աւարառութեան արշաւել 'ի վերայ Եբուրոնաց՝ լաւ համարեալ վտանգել գալլիացւոց յանտառս, քան դասականաց գնդիցն. որպէս զի 'ի խուռն բազմութենէ շրջապատեալ ազգն եղեռնագործ՝ ճետ նորա և անուն ևս քաղաքին ջնջեսցի։ Եւ եկին խռնեցան վաղվաղակի ամենուստ բազմութիւն մեծ։

ԼԵ. Մինչ այս իրք ամենայն ուրեք յերկրին Եբուրոնաց գործէին, գայր հասանէր օրն եօթներորդ սահմանեալ 'ի դարձ Կեսարու առ լեգէոնն պահանորդ աղխից։ Անդ էր տեսանել քանի զօրութիւն է բաղդին 'ի պատերազմի, և պատահարս որպիսիս յառաջ ածէ բաղդ։ Ի

ցրուել Թշնամեացն ահաբեկ, որպէս ցուցաւ աստ 'ի վերոյ, չէր նոցա և ոչ գունդ մի բաւական առ 'ի տալ կասկած երկիւղի. լու եղև առ Գերմանացիս յայնկոյս Հռենոսի՝ զի Եբուրոնք յաւար մատնեալ էին, և ամենեցուն էր հրաւէր յաւարառման։ Սիկամբրացիք մերձաւորագոյնք 'ի Հռենոս, որոց՝ որպէս 'ի վեր անդր ասացաք՝ ընկալեալ էր ըզՏենկտերս և զՈւսիպետս փախստեայս, փութացեալ ժողովեն հեծեալս երկու հազար, և լաստիւք և նաւակօք անցանեն ընդ գետն՝ երեսուն հազար քայլ խոնարհագոյն քան զկամուրջն հատեալ՝ ուր Կեսարու զպահակապանն նըստուցեալ էր, և դէպ ուղիղ դիմեն յերկիրն Եբուրոնաց, ուր գերեն զբազումս 'ի ցրուելոց անտի փախստէից, և տիրանան բազմահօտ հօտից խաշանց, որ սիրելիք են յոյժ խժից այնոցիկ. և 'ի ցանկութենէ աւարառութեան մղին 'ի հեռաստան, ոչ 'ի մօրուտս և ոչ յանտառս զկայ առեալ, ծնեալք 'ի մարտ և յաւազակութիւն։ Հարցանեն զգերեալս՝ թէ ո՞ւր իցէ Կեսար, և ուսանին զի 'ի բացեայ կա՛յր զօրօքն ողջոյն։ Եւ մի ոմն 'ի գերուոյն յաւելու. Զի՞ է ձեզ դոյզն և աղքատին աւարաց 'ի խնդիր ելանել. առ ձեռն կայ ձեզ ճոխանալ հարուստ աւարաւ։ Աստի երեք ժամք են յԱդուատուկ, ուր զամենայն ճոխութիւնս իւր ածեալ կուտեալ է լեգէոնաց Հռովմայեցւոց. և զունդ սակաւաձեռն պահանորդաց ոչ բաւեն շուրջ պահ ունել անդ զպատուարօք, և ոչ իշխէ ոք 'ի նոցանէ արտաքս քան զամրոցն ելանել։ Այսու յուսով հրապուրեալ Գերմանացւոց՝ դնեն 'ի պահ 'ի զանխուլ տեղւոջ զառ և զապուր իւրեանց և ճեպին յԱդուատուկ, առաջնորդ կալեալ զնոյն ինքն՝ որ գուշակն եղև իրացն։

ԼԶ. Կիկերոն՝ որ ըստ հրամանին Կեսարու զառաջին աւուրսն բազում զգուշութեամբ հսկէր 'ի վերայ զօրականին՝ ունել զնոսա յիւրաքանչիւր կայս, ոչ թողլով և ոչ փայտակրաց ելանել յամրոցէն, յեօթներորդումն աւուր սկսաւ երկմտել ընդ խոստումն Կեսարու 'ի ժամադրեալ աւուրն դառնալոյ. քանզի լսէր զարշաւել նորա 'ի հեռա֊

տեան, և ոչինչ զդարձէն առնոյր զբոյց: Երկնչէր ևս 'ի քրթմնջելոյ զօրացն, որք զերկայնամտութիւն իւր աղաչարումն իմն իւրեանց համարէին, ոչ ուրուք կարելով արտաքս քան զամրոցն ելանել. իսկ 'ի հակառակէն ոչ ինչ կասկած երկիւղի ունելով, զի Թշնամին երիւք հազար մղոնիւք 'ի բացեայ՝ ցրուեալ և գրեթէ վատթարեալ ամենևին՝ իշխեցէ խիզախել ընդդէմ իւրեանց լեգէոնաց և հզօր հեծելազօրուն, գումարտակս հինգ արձակեաց 'ի հունձս ցորենոյ 'ի մերձակայ արտօրայս, բլրակաւ միով անջրպետեալս յամրոցէն: Էին յամրի անդ բազմութիւն խօթացելոց 'ի լեգէոնաց անտի թողեալ, որոց յայնմ վայրի կազդուրեալ, երեք հարիւրիւ չափ 'ի նոցանէ յղեցան համագունդ ընդ գրօշու. հրաման եղև և մեծի ամբոխի կարասէկիր զօրաց, և բազմութեան գրաստուց՝ որ 'ի պատնէշս անդ կային, երթալոյ զհետ նոցա:

ԼԷ. Յայնմ վայրի գան հասանեն յեղակարծ հեծեալք գերմանացւոց բուռն յարձակմամբ, և նովին Թափով գան գործէին ընդ Տեկոման, ընդ յետկոյս դուռն ամրոցին, գրոհել 'ի ներքս: Եւ 'ի հասանել նոցա ընդ զանխուլ կողմն անտառին յանզգաստից մինչև յամրոցն, Թանգարք՝ որք սփռեալ կային անդ ընդ պատուարօքն վրանաւորք, ոչ ժամանեցին անկանել 'ի ներքս: Ի յեղակարծ պատահարացն խռովին մերքն, և հազիւ գունդ պահակերացն զդէմ ունի նախայարձակ Թափոյն: Շուրջ պատին Թշնամիք զամրոցաւն գտանել ուստեք մուտս. Ճգնին մերքն պահել ըզգրունս, զի այլ ամենայն մուտք՝ տեղեաւն և ամրութեամբք շատ իսկ պահպանեալ էին: Ամրականացն առ հասարակ խուճապեալ՝ հարցանէին զմիմեանս վասն աղմկին Թէ զինչ իրք իցեն. և չգիտէին ուր զդրօշսն ածել և յոր վայր զկայ առնուլ: Էր որ զամրոցն ասէր գրաւեալ, այլ ոք ասէր՝ խժից զպարապետն հարեալ, զզօրսն վատթարեալ, և անդր դիմեալ յաղթանակաւ. և բազումք այնոքիկ էին, որք նանրահաւատ խորանօք վայրաց՝ յուշ ածէին զաղէտս Կոտտայ և զՏիտուրիոսի, զապանելոցն յամրոցի անդ: Եւ

'ի խուճապելոյ անտի նոցա՝ հաստատեցան խուժք 'ի կարծիս, զոր լուեալ էր նոցա 'ի գերւոյն՝ թէ անպատսպար կայր ամրոցն. և սրտապնդեալ քաջալերէին զմիմեանս հորդան տալ ուժգին, և մի զպատեհն գեղեցիկ կորուսանել։

ԼԸ. Էր ընդ պահակերս ամրոցին թողեալ Պ. Սեքստիոս Բակուլոս խօթ, այն որ առ Կեսարու նախաշտէ կացեալ էր, որպէս յառաջին պատերազմունս անդ յիշատակեցաք, և 'ի հնգից աւուրց հետէ մնացեալ էր անկերակուր։ Սա անյոյս 'ի կենաց իւրոց և այլոց առ հասարակ, ել անզէն 'ի խորանէն. և տեսեալ զհասանել թշնամեաց, և զվտանգն մեծ անխուսելի, զէն առեալ յորոց անդն կային, արձանացեալ եկաց առ դրան։ Զհետ նորա ընթացան և հարիւրապետք գումարտակի պահանորդացն, և առ վայր մի ըղդէմ կալան։ Սեքստիոս հարեալ անդ կարեվէր անկաւ նուաղեալ, և բարձեալ յիւրոցն, ձեռաց 'ի ձեռս՝ ածաւ 'ի բաց մազապուր։ Յայնմ վայրի խրախուսեցին այլք դիմել յիւրաքանչիւր կայս 'ի պահ, և երևել կազմ և պատրաստք 'ի դիմամարտ։

ԼԹ. Մինչ այս մինչ այն զօրականն մեր դարձաւոր 'ի հնձոց՝ լուաւ զշռինդն աղաղակին. ընթացան հեծեալք, տեսին զմօտալուտն վտանգ. և չէր անդ տեղի ապաւինի պակուցելոցն ամրանալոյ։ Եւ քանզի նորամուտք 'ի զինուորութիւն՝ անհմուտք էին իրաց պատերազմի, կային ակընկառոյցք 'ի հազարապետս և 'ի հարիւրապետս՝ թէ զինչ հրամայիցեն։ Չիք ոք քաջասիրտ, որ 'ի յանկարծահաս արկածս ոչ խռովիցի։ Տեսեալ բարբարոսաց զդրօշս 'ի հեռուստ՝ զկայ առին 'ի յարձակմանէն, կարծելով 'ի սկզբան անդ դարձ արարեալ լեգէոնացն երթելոց 'ի հեռաստան՝ ըստ բանից գերւոյն. այլ 'ի տեսանել ապա զանօսրութիւն զօրականին, ամենուստ 'ի պատուարս անդր դիմեցին բուռն զօրութեամբ։

Խ. Փութացան կարաւէկիրք 'ի բլուրն մերձակայ, այլ իսկ և իսկ վանեալ անտի՝ իջին խառնեցան 'ի ռազմս բանա-

կին ընդ դրօշուք, զերկիւղ պակուցելոց զօրացն յաւելեալ։ Կէսք 'ի նոցանէ ասէին կարգել կոնաձև, և ճեղքեալ թափով զթշնամիս՝ անցանել յամուրս անդր որոց մերձ յայժ կային. և եթէ անկանել ևս ոմանց հաստատէր պաշարեալ 'ի թշնամեաց՝ սակայն այլք ապրէին։ Իսկ այլոց լաւագոյն թուէր կալ համախումբ 'ի բլրին, և ամենեցուն զնոյն կրել արկածս։ Բայց հինաւուրց զօրականքն, որ ըստ ասացելումս կայր ընդ միով դրօշու՝ ոչ հաճոյ թուեցաւ խորհուրդն. այլ խրախոյս տուեալ իրերաց, և ընդ առաջնորդութեամբ հրամանատարի իւրեանց Կ. Տրեբոնի ասպետի հռովմայեցւոյ, անցեալ ընդ մէջ թշնամեաց, հասին անվնաս յամրոց անդր՝ ոչ զոք կորուսեալ։ Զհետ նոցա և կարասէկիրք և հեծեալք նովին թափով դիմեալ, քաջութեամբ զօրականին ապրեցան։ Բայց որք 'ի բլրին զկայ առեալ էին, անհմուտք դեռ ևս իրաց պատերազմի, և յողդողդք 'ի խորհուրդ՝ զոր կալեալ էին 'ի բարձուէ անտի պաշտպանել անձանց, և ոչ նմանել այնոցիկ կարացեալ՝ որոց տեսինն թէ քանի օգնեաց թափ և զօրութիւն, դուն գործէին պատսպարել յամրոց անդր, և անկան 'ի վայր դժպատեհ։ Հարիւրապետք, յորոց ոչ սակաւք արիական նահատակութեամբ 'ի ստորին դասակարգէ այլոց լեգէոնաց վերամբարձեալ էին 'ի հրամատարութիւն այնր լեգէոնի, առ անկորուստ պահելոյ զփառս առաջնոց քաջութեանցն իւրեանց, արիաբար պատերազմեալ անկան. այլ 'ի խուճապել թշնամեաց 'ի քաջութենէ նոցա, կէսք 'ի վտանգելոցն պարապ գտեալ՝ անակնկալ ապրեցան յամուրն. իսկ այլք շուրջ պատեալ 'ի թշնամեաց՝ կորեան։

ԽԱ. Գերմանացւոց տեսեալ զամրապահ զգուշութիւն մերոցն, յուսահատք 'ի նուաճելոյ զամրոցն, առին զաւարն եդեալ 'ի պահ յանտառին, և մեկնեցան անցին յայնկոյս Հռենոսի։ Այլ յետ մեկնելոյ իսկ նոցա՝ յայն արհաւիրս ըմբռնեալ կային ամրականք մեր, զի 'ի գիշերին յայնմիկ 'ի գալ հասանել անդր Կ. Վոլուսենեայ, որ առաքեալն էր 'ի Կեսարէ հեծելազնդաւ, ոչ կարաց հաւատա-

րիմ առնել նոցա զգալուստ նորին ամբողջ բանակաւ։ Այնպէս կալեալ էին սիրտք նոցա յերկիւղէ, զի խելայեղեալք իմն՝ համարէին զհեծեալսն և եթ զայնոսիկ 'ի համայնաջինջ կոտորածէ զօրուն ապրեալ փախստեամբ. զի անմարթ համարէին գերմանացւոց յարձակել 'ի վերայ ամրոցին, եթէ Կեսարու անվնաս կային զօրք։ Այլ Կեսար փարատեաց գալստեամբ իւրով զերկիւղ նոցա։

ԽԲ. Լուեալ Կեսարու 'ի դարձին իւրում զարկածս պատերազմին՝ մեղադրեաց զտեղի և եթ տալ գումարտակացն 'ի կայից իւրեանց, և զպահապան գնդին տուաքումն 'ի բաց. զի ասէր՝ թէ չէր պարտ և փոքու իւիք տալ տեղի վտանգի. և յաւել՝ զի բաղդին մեծապէս սատարեալ էր 'ի յաջողութիւն յանկարծակի գալստեան խժից, ևս և վանելոյ իսկ զնոսա 'ի պատնշաց, և 'ի դրաց ամրոցին։ Այլ ընդ այն 'ի վեր քան զամենայն զարմանայր, զի Գերմանացիք վասն հինահար առնելոյ զսահմանս Ամբիորիգեայ անցեալ ընդ Հռենոս, յամրոց անդր 'ի վերայ հռովմայեցւոց եկեալ էին՝ սպաս բարեկամութեան մեծի մատուցանելով նմա։

ԽԳ. Կեսարու ելեալ միւսանգամ առ 'ի նեղել զթըշնամիս՝ զօրաժողով եղև ամբոխ բազում 'ի սահմանակից քաղաքաց, և արձակեաց զնոսա ընդ ամենայն կողմանս. որոց հուր հարեալ զգիւղից և զշինից, ուր և պատահէին՝ այրացաւեր առնէին, աւար բազում ամենուստ ժողովեալ։ Այլ զի սպառէին արմտիք՝ ոչ միայն առ բազմութեան գրաստուց և մարդկան, այլ և յեղանակէ տարւոյն և ամպրոպաց հարեալ, ապրեցելոցն ևս առ ժամն թագստեամբ՝ հարկ էր յետ մեկնելոյ անտի բանակին՝ սովամահ կորնչել առ 'ի չգոյէ պարէնի։ Բայց հեծելազօրուն սփռեալ ասպատակաւ ընդ ամենայն երկիրն, հանդիպէր ստէպ գալ 'ի տեղի, ուր ասէին գերիք տեսեալ զԱմբիորիքս փախստեայ, և պնդէին ևս՝ մօտ առ ինքեանս կալ նմա։ Ուստի վառեալ նոցա յուսով հասանելոյ զհետ նորա, և շնորհս յոյժ գտանելոյ առաջի Կեսարու, զամենայն ջան և զվաստակ՝ գեր 'ի վերոյ քան զկար՝ 'ի վար արկանէին. և ուր ուրէք կարծէին

ահա հասեալ ըղձից իւրեանց, նա ընդ գողուղի 'ի խորս և 'ի թաւուտս անտառին թագուցեալ ծողոպրէր, և գիշերախառն զանխլաբար խոյս տուեալ անկանէր այլուր՝ չորեք և եթ հեծելովք՝ յորս միայն վստահէր հաւատալ զանձն:

ԽԴ. Այսպէս յաւէր և յանապատ դարձուցեալ Կեսարու զերկիրն համօրէն՝ կորստեամբ երկուց ևեթ գումարտակաց, ժողովեաց զզօրս իւր 'ի Դուրոկորտ քաղաք հռեմացւոց. և գումարեալ անդ զատեան գալլիացւոց տայ 'ի քննել զդաւակցութիւն Սենոնաց և Կարդուսաց, և պատաւոր դատեալ զԱկկոն, որ գլուխ համախոհութեանն էր կացեալ, ետ զնա 'ի պատուհաս մահու՝ ըստ վաղնջուց սովորութեան ազգին. և որք 'ի պատուհասէ անտի զարհուրեալ՝ խոյս տուեալ էին, արգել 'ի հրոյ և 'ի ջրոյ: Ապա զերկուս 'ի լեգէոնաց 'ի սահմանս Տրեւիրաց, զերկուս այլ առ Լինգոնս, և զայլսն վեցեսին յԱգենդիկոն՝ 'ի սահմանս Սենոնաց կացոյց 'ի ձմերոցս, և զօրացն ամենեցուն պարաստեալ ցորեան 'ի պարէն՝ մեկնեցաւ ինքն գումարել, որպէս սահմանեալն էր, ժողով յԻտալիա:

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ԳԱՂԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## ԳԻՐՔ ԵՕԹՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ա. Համախոհութիւն յօգուտ ժողովրդոց Գալլիոյ 'ի լծընկէց ազատութիւն: Դ. Ընտրել նոցա ապարապետ իւրեանց զՎերկէնգետորիքս Եդուացի: Ը. Կեսարու յեղակարծ արշաւան յԱրվեռնս: Ժ. Երթ նորա յօգնութիւն Բոյացւոց: ԺԱ—ԺԴ. Նուաճել զքաղաքս Վելաւնոդունաց և Գենաբաց, և Նովիոդունաց: ԺԷ—ԺԹ. Գալլիացւոց հրկէզ առնել զանպատապար քաղաքս Բիտուրգաց: Մածանել պարեկապանս յԱւարիկոն՝ զոր պաշարեալն էր Կեսարու: Ի—ԻԱ. Վերկինգետորիքսեայ ամբաստանել առ իւրսն 'ի մատնութիւն, և անբասիր առնել զանձն: ԻԲ. Աւարիկոնի առ ժամանակ մի դիմակալել, և ապա նուաճել պատերազմաւ: ԼԳ. Խլրտումն Եդուացւոց, և Կեսարու գուլ առնել մարտին: ԼԴ. Հանդարտեցուցանել զնոսա Կեսարու, և խաղալ զօրօք 'ի Գերգովիա: ԼԵ—ԽԵ. Ի մարտընչել նորա անդ՝ միւսանգամ խլրտել Եդուացւոց: ԽԶ—ԾԲ. Հըռովմայեցիք առնուն 'ի Գերգովիա ամրոցս երիս 'ի թշնամեաց. և խռովատագոյն յարձակմամբ դիմեալ 'ի քաղաքն, վանին մեծաւ կոտորածիւ: ԾԳ. Կեսար յուսաբեկ 'ի նուաճելոյ զքաղաքն, չու առնէ բանակաւ առ Եդուացիս: ԾԸ. Պատերազմին Լաբիենոսի յաջողութիւն 'ի Պարիս: ԿԲ. գալ համախմբիլ նորա ընդ Կեսարու: ԿԳ. Գալլիացւոց ամենեցուն, բաց 'ի սակաւուց, վտարանջել զհետ Եդուացւոց: ԿԴ. Ի դիմել Կեսարու 'ի վերայ Սեկուացւոց՝ յարձակին 'ի վերայ նորա զճանապարհայն գալլիացիք ընդ առաջնորդութեամբ Վերկինգետորիքսեայ և մատնին 'ի պարտութիւն: ԿԸ. Հալածէ զնոսա Կեսար մինչև ցԱլեսիա քաղաք՝ յոր անկանին. և պաշարէ զնոսա: ՀԵ. Գալլիացիք կարդան զդաշնակիցսն յօգնութիւն, որոց եկեալ առ 'ի զերծուցանել զնոսա 'ի պաշարմանէ, խորտակին սպառսպուռ: ՁԹ. Ալեսիա և Վերկինգետորիքս լինին անձնատուր. ընդհետ նոցա և Եդուացիք և այլք բազումք:

# ԿԱՅԻՈՍԻ ՅՈՒԼԻՈՍԻ ԿԵՍԱՐՈՒ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ

## ԳԱԼԼԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ



## *ԳԻՐՔ Է.*

Ա. Ի հանդարտել Գալլիոյ՝ Կեսար, որպէս հաստատեալն էր 'ի միտ, ել գնաց գումարել ժողով յԻտալիա։ Անդ լուաւ զսպանումն Կլաւդիոսի, և ստուգեալ զվճիռ հրամանի ծերակուտին ընդ համօրէն Իտալիա 'ի համերդումն զինուորութեան արբունց առ հասարակ՝ հրաման ետ զօրաժողով առնել ընդ գաւառն ողջոյն։ Հնչեաց վաղվաղակի համբաւ իրացն 'ի Գալլիա յայնկոյս Ալպեանց, և յաւելին գալլիացիք ստուարացուցանել զհամբաւն ըստ պատշաճի իրաց իւրեանց, որպէս թէ Կեսարու խափանեալ 'ի քաղաքական վրդովմանց՝ ոչ հարիցէ 'ի խռովայոյզ ժամանակին դառնալ առ զօրսն իւր։ Եւ քանզի վաղ իսկ դժոխըմբեր էր նոցա լուծն հռովմէական ընդ որով նուաճեալ կային, զայս պատեհ կալեալ՝ խրախուսեցին յանդգնագոյնս 'ի պատերազմ։ Եւ գումարեալ իշխանաց նոցա ժողովս 'ի զանխուլ և 'ի հեռաւոր խորշս անտառաց, բողոք բարձին վասն սպանման Ակկոնի՝ 'ի նմին վտանգի տեսլով կալ և ինքեանց. աւաղէին զհասարակաց աղէտս Գալլիոյ, և վարձս և պարգևս խոստանային՝ որոց յառաջամատոյց լիցին 'ի պատերազմ՝ դիմագրաւեալ 'ի վերայ ազատութեան աշխարհին։

Եւ տակին փութալ կանխել մինչ չև ուրուք իրազգած լեալ զաղտնի խորհրդոյն, արգելուլ զվերադարձ Կեսարու 'ի զօրսն, ոչ ինչ դժուարին համարեալ զայն. զի չէր մարթ լեգէոնաց 'ի հեռաւորութեան սպարապետին իշխել ելանել 'ի ձմերոցաց, և ոչ սպարապետին անօգնական դարձ առնել առ լեգէոնսն: Եւ յայս կնքեցին զբանսն՝ զի լաւագոյն էր անկանել 'ի ճակատամարտի, քան զառաջնոց արութեանցն զփառս, և զառ 'ի նախնեացն ընկալեալ ազատութիւն կորուսանել:

Բ. Ի հաստատել խորհրդեանն՝ յառաջ մատեան Կորնուտք, և յանձն առնուին զամենայն վտանգ 'ի փրկութիւն հասարակաց՝ յառաջադէմք 'ի պատերազմ: Եւ զի վտանգ էր պատանդս յայնժամ առնուլ յերերաց յապահովութիւն՝ թէ գուցէ յայտնեսցին իրքն, պահանջեցին Կորնուտք տալ միաբան երդումն հաւատարմութեան 'ի վերայ համագումար դրօշուց, (որ մեծ յոյժ և սուրբ համարէր առ նոսա), զի մի յետ նախաձեռն առնելոյ մարտին՝ լքեալ թողցեն յայլոց: Մեծապէս գովեցան Կորնուտք, և ամենեքեան որ էին անդ՝ ետուն երդումն, և սահմանեալ զօր և զժամ պատերազմին՝ արձակեցաւ ժողովն:

Գ. Ի գալ հասանել ժամադրեալ աւուրն՝ Կորնուտք ընդ զօրավարութեամբ Կոտուատեայ և Կոնկտոդոնի, որք էին արք յանդգունք, 'ի տալ նշանին յարձակեցան 'ի Գենաբոն, սրակոտոր սպանին զհռովմայեցիս բնակեալս անդ 'ի գործ վաճառաշահութեան, ընդ որս և զԿ. Փուսիոն Կոտտաս զասպետ հռովմայեցի, զայր պատուական՝ զոր Կեսարու կարգեալ էր անդ վերակացու պարենից, և յափշտակեցին զամենայն ինչս նոցա: Լու եղեն իրքն վաղվաղակի ընդ ամենայն քաղաքս Գաղղիոյ. զի որ ինչ մեծ և երևելի գործեցեալ անդ՝ գեօղից 'ի գեօղս և քաղաքաց 'ի քաղաքս՝ մօտ 'ի մօտոյ աղդէին բարձրաձայն աղաղակաւ. որով գործեցեալքն 'ի Գենաբոն՝ յարևածայրս, յառաջնում պահու գիշերոյն լսելի եղեն 'ի ծագս արուերնական սահմանաց՝ ընդ քայլաչափս իբր վաթսուն հազար:

Դ. Անդ յայնժամ Վերկինգետորիքս, որդի Կելտիլլեայ տրուերնացի, երիտասարդ հզօր, որոյ հայր իշխան կացեալ էր բոլորումն Գալլիոյ, և յիւրոց անտի քաղաքացեաց սպանեալ վասն թեկն ածելոյ զթագաւորութեան, համախմբեաց զձեռականս իւր և վառեաց դիւրաւ զոգիս նոցա, մինչև ամենեցուն 'ի լուր բանից նորա 'ի զէն ընթանալ: Բայց Գոբանիտիոնի հօրեղբօր նորա և այլոց աւագաց ոչ հաճոյ թուեցեալ 'ի թեթուս մատչել բախտի, արտաքսեցին զնա 'ի քաղաքէ անտի Գերգովիայ. այլ նորա ոչինչ կասեալ 'ի խորհրդոցն, և 'ի գեղից և յագարակաց ժողովեալ զանկեալս և զոճրագործս՝ արար իւր գումարտակ. և որոց միանգամ հանդիպէրն 'ի քաղաքացեաց՝ յինքն յանկուցեալ զնոսա, յորդորէր զամենեսեան զէն առնուլ 'ի փրկութիւն հայրենեաց: Եւ ստուարացուցեալ նոքօք զզօրս իւր, վանեաց 'ի քաղաքէն զհակառակորդս, յորոց սուղ ինչ յառաջ ինքն արտաքսեալ էր: Եւ թագաւոր յիւրոցն կարգացեալ՝ հրեշտակս ամենայն ուրեք արձակեաց, երդմնի առնել զքաղաքս՝ կալ հաստատուն յուխտին իւրեանց: Արագ արագ միաբանեցին ընդ նմա Սենոնք, Պարիսացիք, Պիկտոնք, Կադուրկացիք, Տուրոնացիք, Աւլերկացիք, Լեմովիկք, Անդեանք, և այլք ամենեքեան զովկիական ծովեզերբքն բնակեալք. և ամենեցուն հաւանութեամբ առեալ իշխանութիւն, հրաման ետ քաղաքաց իւրաքանչիւր տալ պատանդս, և զօրս այսչափ յղել անյապաղ, սահմանեալ նոցա չափ և ժամանակ զէնս պատրաստելոյ: Երիցագոյն հոգ և խնամ կալաւ հեծելազօրուն. և ընդ մեծի փութոյն կցորդեալ զխստութիւն իշխանութեան՝ սաստկութեամբ պատուհասից ահացուցանէր զհեղգացեալսն. զըմբռնեալսն 'ի ծանր ինչ յանցանս՝ հրով և գանազան խոշտանգանօք կորուսանէր, և զթեթև ինչ յանցուցելոցն զաչս բրեալ, կամ ականջատս առ իւրսն արձակէր 'ի խրատ զգուշութեան, խստութեամբ պատուհասիցն ահ և սոսկումն յայլս արկեալ:

Ե. Եւ 'ի սուղ ժամանակի պատուհասիւքս այսոքիւք

յաճախեալ զզօրս իւր, արձակեաց զԼուկտերիոս՝ զայր քաջայանդուգն, գնդաւ միով 'ի Հռութէնս, եւ ինքն խաղաց գնաց 'ի վերայ Բիտուրգաց: Այդ եղեւ նոցա գալուստ իւր, եւ յղեցին հրեշտակս աղաչաւորս առ դաշնակիցս իւրեանց Եդուացիս՝ տալ իւրեանց ձեռն օգնականութեան առ 'ի վանել դիւրաւ զզօրս թշնամւոյն: Նոքա՝ խորհրդով տեղակալաց, զորս Կեսարու թողեալ էր առ զօրսն, յղեցին հեծեալս եւ հետեւակս 'ի զօրավիգն Բիտուրգաց. որոց հասեալ յափն Լիգերիս գետոյ, որ անջրպետէ ընդ Բիտուրիգս եւ ընդ Եդուացիս, զկայ առին անդ զաւուրս ինչ, եւ ոչ համարձակեալ անցանել ընդ գետն, դարձան այսրէն առ իւրեանս. եւ ասէին ցտեղակալս մեր՝ յերկիւղէ դաւաճանաց Բիտուրգաց փախուցեալ, որպէս թէ յանցս գետոյն՝ Բիտուրիգք աստի եւ Արուեռնեանք անտի պաշարելոց էին զինքեանս: Բայց թէ արդարեւ այս պատճառք էին դարձի նոցա, եթէ ստայօդեալ առ տեղակալս մեր, ստուգութեամբ ասել ոչ ունիմ: Բայց ընդ դառնալ նոցա՝ իսկ եւ իսկ միաբանեցին Բիտուրիգք ընդ Արուեռնացիս:

Զ. Իրազեկ եղեւ Կեսար յԻտալիա. եւ զի լուեալ եւս էր զի ճարտարութեամբ Կն. Պոմպէի ցածուցեալ էին աղմուկք քաղաքականք, դէմ եդեալ գնաց 'ի Գաղլիա յայնկոյս Ալպեանց: Այլ 'ի հասանել անդր՝ անկաւ 'ի մեծ վարանս՝ որպէս ընդ զօրսն միանալ. զի եթէ զլեգէոնսն 'ի Պրովինկիա առ ինքն կոչէր, հարկ էր նոցա առանց իւր մղել պատերազմ զճանապարհայն, իսկ ինքնին երթալ առ նոսա՝ ոչ թուէր նմա իմաստութիւն, զի վտանգաւոր համարէր հաւատալ զանձն այնոցիկ իսկ՝ որ ոչն խլրտէին յայնժամ:

Է. Ցայնմ վայրի Լուկտերիոս, որ 'ի Հռութէնս երթեալ էր, միաբանեաց զնոսա ընդ Արուեռնացիս. եւ յառաջ անցեալ 'ի Նիտոբրիգս եւ 'ի Գաբալս՝ էառ պատանդս 'ի նոցանէ, եւ բազմագունդ զօրօք խաղաց 'ի Նարբոնեանն Պրովինկիա՝ առնուլ զայն յարձակմամբ: Այդ եղեւ Կեսարու, եւ թողեալ նորա զամենայն՝ փութացաւ 'ի Նարբոն. եւ

հասեալ անդր՝ սրտապնդեաց զպակուցեալսն, և կացոյց պարեկապանս 'ի Հռութենս Պրովինկիոյ, 'ի Վոլկս արեկոմեանս, 'ի Տոլոսա և 'ի շրջակայս Նարբոնի սահմանակիցս Թշնամեաց. և հրաման ետ կէսոց 'ի զօրացն՝ զորս 'ի գաւառէ անտի ժողովեալ էր, և որոց նորընտիրս յԻտալիոյ ածեալ ընդ իւր, գնալ համախմբել 'ի Հելուիս՝ սահմանակիցս Արուերնաց:

Ը. Զայսոսիկ այսպէս տնօրինեալ Կեսարու, և զի Լուկտերիոս եւս՝ (բազմավտանգ համարեալ դիմել 'ի մէջ պահակապանաց՝ թէ գուցէ պաշարիցի 'ի նոցանէ), 'ի բաց գնացեալ էր, խաղաց գնաց 'ի Հելուիս: Եւ թէպէտ լեառնն Կեբեննայ, որ բաժանէ զԱրուերն 'ի Հելուեաց, 'ի կարէժմեռն եղանակին ձիւնախաղաղ ծածկեալ արգելոյր զանցս, այլ նա 'ի ձեռն սաստանակիր աշխատութեան զօրականին 'ի բաց պեղեալ զձիւնն ցվեց ոտնաչափ 'ի խոր, և հորդեալ ուղի, եհաս 'ի սահմանս Արուերնաց: Նոքա որպէս պարըսպաւ պատսպարեալ լերամբն Կեբեննայ, ընդ որ չէր ուրուք երբէք յայնմ եղանակի հատեալ անցեալ, մինչդեռ յապահովի զանձինս կարծէին, ըմբռնեցան 'ի յետին յեղակարծ տագնապ: Քանզի Կեսար հրաման ետ այրուձիոյն շուրջ գալ 'ի բացէ՝ որպէս մարթ էր, և արկանել ահ 'ի Թշնամիս: Վաղ ընդ փոյթ հնչեաց համբաւն և հասին գուժկանք առ Վերկինգետորիքս. և խռովեալ Արուերնաց՝ պատեցան զնովաւ, և ստիպէին թախանձէին փրկել զնոսա և մի լքանել 'ի ձեռս Թշնամեաց. մանաւանդ զի յիւր վերայ կայր բովանդակ պատերազմն: Ոչ անվրդով եկաց Վերկինգետորիքս ընդ աղաչանս նոցա, շարժեաց զբանակն 'ի Բիտուրգաց յԱրուերնիկս:

Թ. Բայց Կեսարու կանխաւ գուշակեալ որ ինչ առնելոցն էր Վերկինգետորիքս՝ ոչ յամեաց 'ի տեղւոջն աւելի քան զաւուրս երկուս, և առ 'ի լրումն զօրականին և այրուձիոյ՝ մեկնեցաւ 'ի բանակէն, թողեալ հրամանատար զօրացն զպատանին Բրուտոս: Եւ պատուէր ետ նմա յածեցուցանել հեծեալս 'ի բացէ որպէս մարթ էր. և ես փոյթ

կալայց առէ, ոչ աւելի քան զաւուրս երիս յամել 'ի գործ։ Այսու պատրաստութեամբ մեկնեալ, շտապաւ մեծաւ ըստ կարի, եհաս 'ի Վիեննա անակնկալ իւրոցն։ Անդ գըտեալ զնորընտիր այրուձին, զոր բազում աւուրբք յառաջ յղեալ էր անդր, անդուլ արշաւանօք զաւր և զցերեկ՝ ընդ սահմանս Եդուաց դիմեաց 'ի Լինգոնս, ուր լեգէոնք երկու ձմերէին, որպէս զի եթէ երբէք Եդուացիք ձախողակի ինչ զկենաց իւրոց խորհեսցին, վաղեալ անցցէ զվտանգաւն 'ի բաց։ Եւ ժամանեալ անդր՝ առաքեաց կոչեաց զայլ ևս լեգէոնս, և մինչև Արուերնիաց գիտացեալ զգալուստ իւր՝ համախմբեաց զամենսեան 'ի մի վայր։ Իբրև զայն լուաւ Վերկինգետորիքս՝ դարձաւ անդրէն զօրօքն 'ի Բիտուրիգս, և անտի դիմեաց պաշարել զԳերգովիա քաղաք Բոյացւոց, զորս 'ի հելուետական պատերազմին պարտեալ Կեսարու և բնակեցուցեալ էր անդ։

ժ. Ի վարանս տագնապի անկաւ յայնժամ Կեսար. զի եթէ զմնացուած ձմերայնոյն համախումբ 'ի միում վայրի զլեգէոնսն ունէր, և հարկատուք Եդուացւոց պարտեալ նուաճէին, վտանգ էր վտարանջելոյ յիւրմէ համօրէն Գաղիոյ՝ վասն բարեկամաց անօգնական մնալոյ. իսկ թէ տարաժամ հանէր զզօրսն 'ի ձմերոցաց, խիթայր զկարօտութենէ պարենի՝ վան ծանու աշխատութեամբ ածելոյ զայն։ Սակայն ընտրեաց զամենայն նեղութիւն յանձն առնուլ քան զայնպիսի նախատինս՝ թօթափելոյ յիւրմէ բարեկամաց ամենեցուն։ Վասն որոյ յորդորեալ զԵդուացիս հասուցանել պաշարս, փութացաւ զեկուցանել Բոյացւոց զգալուստ իւր, խրախուսել զնոսա կալ հաւատարիմ, և արիաբար զդէմ ունել բուռն յարձակման թշնամեաց։ Եւ թողեալ յԱգենդիկոն լեգէոնս երկուս և զաղխս զօրուն, դիմեաց առ Բոյացիս։

ժԱ. Ի վաղիւ անդր եհաս 'ի Վելաւնոդոն քաղաք Սենոնաց, 'ի մտի եդեալ նուաճել զայն վասն անխափան 'ի թշնամեաց կացուցանելոյ զճանապարհս յետկուսէ՝ յընդունելութիւն պարենից. և յաւուրս երկուս եած պա-

նէշ զքաղաքաւն. յերրորդումն աւուր հասին անտի հրեշտակք՝ յանձն առնուլ զնուաճութիւն. և հրամայեաց նոցա Կեսար ածել առ ինքն զզէնս և զգրաստս, և տալ պատանդս վեց հարիւր: Եւ թողեալ անդ զՏրեբոնիոս իւր տեղակալ 'ի կատարումն հրամանին, խաղաց գնաց դէմ եդեալ 'ի Գենաբոն Կորնուտաց: Նոցա այն ինչ լուեալ էր զպաշարումն Վիլլաւնոդոնի, և յերկարել կարծելով իւրացն, պատրաստէին յղել զօրս 'ի Գենաբոն առ 'ի պաշտպանութիւն: Անդր Կեսար յաւուրս երկուս հասեալ՝ բանակեցաւ հանդէպ քաղաքին. այլ զի տարաժամեալ էր օրն, եթող ընդյարձակումն 'ի վաղորդայն, հրաման տուեալ զօրականին կազմել պատրաստել զկարևորս 'ի նոյն: Բայց կամուրջ գետոյն Լիգերի կցորդէր ընդ քաղաքին, և կասկածեալ Կեսարու թէ գուցէ գիշերայն փախիցեն քաղաքացիք 'ի բաց, հրամայեաց երկուց սպառազէն լեգէոնաց հսկել և պահ ունել անդ: Եւ արդարև մերձ 'ի հասարակել գիշերոյն ելին գենաբոնացիք 'ի քաղաքէն, անցանել ընդ գետն: Ազդ եղև Կեսարու 'ի պահանորդաց, և յառաջ մատոյց զլեգէոնսն՝ որք կազմ և պատրաստ կային ըստ հրամանին, և հուր հարեալ զդրանց քաղաքին եմուտ 'ի ներքս և տիրեաց անդ, սակաւուց յոյժ 'ի բնակչացն 'ի բաց փախուցեալ, զի անձկութիւն ճանապարհաց և կամրջին՝ ոչ տային անցս բազմութեան փախստէից: Եւ մատնեաց զքաղաքն 'ի հուր և յաւար զօրականին. և անցեալ ընդ Լիգերիս, եհաս 'ի սահմանս Բիտուրգաց:

ԺԲ. Վերկինգետորիքս ընդ լսել զգալուստ Կեսարու, եբարձ զպաշարումնն, և փութացաւ ընդդէմ նորա: Կեսարու եդեալ էր 'ի մտի պաշարել և զՆովիոդունն քաղաք Բիտուրգաց՝ որ կայր 'ի վերայ ճանապարհին. այլ հասին անտի հրեշտակք աղաչաւորք՝ ներել ինքեանց և խնայել 'ի կեանս իւրեանց: Յայնժամ Կեսար առ 'ի վճարել զիրսն՝ նովին փութով որով յաջողեալն էր յամենայնի, հրամայեաց նոցա ածել զզէնս իւրեանց և զձիան և տալ պատանդըս: Եւ մինչ դեռ զկէս պատանդիցն ընկալեալ, և 'ի խըն-

գիր մնացելոցն և զինուց և գրաստուց, հարիւրապետաց ստա-
կաւաձեռն զօրօք 'ի ներքս 'ի քաղաքն յղեալ էր, երեւէին
'ի հեռուստ հեծեալք յառաջընթացք զօրուն Վերկինգետո-
րիգեայ: Իբրև տեսին զնոսա քաղաքացիքն՝ յուսով օգնակա-
նութեան խրախուսեալք՝ աղաղակ բարձին, 'ի զէն ընթա-
ցան, առին զդրունս, և 'ի պարիսպս անդր 'ի վեր փութա-
ցան: Եւ հարիւրապետացն գիտացեալ՝ զի 'ի տեսիլ Գաղ-
լիացւոց յայլ ինչ մտաբերեն քաղաքացիք, սուսերամերկ
կալան զդրունսն, և զիւրեանցայինս առ հասարակ հանին
'ի դուրս ողջ անվնասս:

ԺԳ. Յայնժամ եհան Կեսար 'ի բանակէն զհեծելա-
զօրսն 'ի ձիամարտ. և 'ի պարտասել իւրոցն արձակեաց
փոխանակ նոցա զգերմանացի այրուձին իբր չորեք հարիւր,
զորս 'ի սկզբանէ հետէ ունէր առ իւր: Գաղղիացւոց ոչ
ժուժկալեալ ընդդէմ բուռն յարձակմանն նոցա, դարձան
'ի փախուստ և անկան 'ի բանակ իւրեանց՝ կորուսեալ բզ-
բազումս: Ի տեսիլ պարտութեան նոցա վերստին ահ պա-
տեաց զքաղաքացիս, և կալեալ զորս համարէին դրդիչս
խուժանին, ածին առ Կեսար և եդին նմա անձնատուր:
Յետ այսորիկ խաղաց գնաց Կեսար յԱւարիկոն քաղաք
հզօր և պաշարայինդ 'ի սահմանս Բիտուրգաց՝ բնակեալ
յերկիր արգաւանդ, որում եթէ տիրանայր՝ վստահ էր 'ի
նուաճել զԲիտուրիգս առ հասարակ:

ԺԴ. Վերկինգետորիքս՝ 'ի ձախողել իրաց իւրոց հետ-
զհետէ 'ի Վելլաւնոդոն 'ի Գենաբոն և 'ի Նովիոդուն, կո-
չեաց զիւրսն 'ի ժողով և ասէ. Պարտ էր մեզ այլազգ յոյժ
մինչև ցայժմ տալ պատերազմ, և ամենայն հնարիւք հա-
տանել զճարակ և զպաշար հռովմայեցւոց, որ չէ ինչ դը-
ժուարին. և յաճախութիւն հեծելազօրու նոցա և եղանակ
տարւոյ նպաստեն մեզ 'ի նոյն, զի չեն արօտք 'ի հունձս, և
'ի ստիպել թշնամեաց սփռել 'ի շէնս և յագարակս 'ի խնդիր
խոտոյ, մարթ է այրուձիոյն մերոյ հարկանել զնոսա աւուր
աւուր և սպանել: Պարտ է մեզ դարձեալ 'ի փրկութիւն
հասարակաց անտեսել զանձնիւր օգուտ և տալ հրոյ զգիւ-

զօրէս և զչէնս, որ շուրջ զսահմանօք Բոյայ՝ ցոր վայր մարթ իցէ նոցա երթալ զպարէնից։ Առ մեզ առատութիւն է ամենայնի, և ուր և երթայցեմք 'ի պատերազմ, անտի մատակարարեսցի մեզ առատապէս. իսկ հռովմայեցւոց հասցէ սովամահ լինել, կամ հեռի 'ի բանակէն թափառիլ վտանգաւ մեծաւ։ Եւ զի՞նչ խոհր իցէ ընդ կոտորած սփռելոյն և ընդ սովամահ 'ի պարենից՝ սպառեալ. յերկոսին ևս արկածս չէ մարթ նոցա տալ պատերազմ։ Այլ և զքաղաքս անպատսպարս տեղեաւն և ամրութեամբ՝ պարտ է մեզ տալ 'ի հուր. զի մի՛ մերոցն խուսելոց 'ի պատերազմէ լիցի ապաւէն, և մի՛ հռովմայեցւոց տեղի պատրաստ 'ի գիւտ պարենից և աւարոց։ Եթէ ծանր և դժոխըմբեր այսոքիկ թուեսցին, յուշ ձեզ՝ զի ծանրագոյն ևս լիցի գերութիւն որդւոց և կանանց և կորուստ կենաց, որ անհրաժեշտ հարկ է պարտելոց։

ԺԵ. Հաստատեցաւ 'ի ժողովն անդ ամենեցուն հաւանութեամբ խորհուրդն այն, և քսան և աւելի ևս քաղաքք Բիտուրգաց այրեցաւեր եղեն 'ի միում աւուր. նոյնպէս և յայլ գաւառս. և էր տեսանել ամենայն ուրեք հրդեհ բորբոքեալ. և թէպէտ ցաւել ցաւէր ամենեցուն ընդ այն, այլ յուսով հուպ ընդ հուպ աներկբայելի յաղթութեան՝ խրախուսէին լինելի զառօժամն փոխարինելոյ։ Ի համախումբ ժողովն խնդիր եղև զԱւարիկոն քաղաքէ՝ պաշտպանել արդեօք այնմ, թէ հրոյ տալ և զայն։ Անդ Բիտուրիգք յոտս անկեալ գալլիացւոց ամենեցուն, աղերս արկանէին՝ մի՛ զգեղեցկագոյնն 'ի քաղաքս Գալլիոյ ստիպեսցեն ընդ իւրեանց ձեռն մատնել հրոյ 'ի ճարակ։ Եւ յաւելուին. «Քաղաքն ինքնին պատսպարեալ է 'ի բնէ տեղեաւն, ամենուստ գրեթէ շուրջ պատեալ 'ի գետոյ և 'ի մօրից, մի միայն ունելով մուտ նեղ և անձուկ»։ Լսելի եղեն աղաչանք նոցա, և Վերկինգետորիքս՝ զառաջինն անողոքելի՝ զիջաւ ապա և ինքն յաղերս նոցա և 'ի գութ ժողովրդեան, և յանձնեցաւ քաղաքն 'ի խնամս պաշտպանութեան արանց քաջաց ընտրելոց։

ԺԶ. Վերկինգետորիքս յամբագնաց զհետ երթայր Կեսարու, և ընտրեաց իւր բանակետղ՝ ամրացեալ շուրջանակի յանտառաց և 'ի մօրից՝ հեռի յԱւարիկոնէ հնգետասան հազար քայլ։ Անդ լրտեսք հաւատարիմք զեկուցանէին նմա հանապազօր ժամ 'ի ժամէ որ ինչ գործէրն 'ի քաղաքին, և ինքն զոր կամէրն տայր նոցա հրաման։ Դէտ կայր երթելոյն 'ի մէնջ 'ի խնդիր խոտի և պարենից, և որոց երթայինն ըստ հարկի հեռագոյնս 'ի բանակէն, 'ի վերայ յարձակեալ՝ տագնապ մեծ հասուցանէր նոցա, թէպէտ և ոչ վերջանային մերքն 'ի հնարաւոր զգուշութեանց՝ փոխելով զժամ և զուղի երթևեկի։

ԺԷ. Կեսարու յայն կողմն քաղաքին հարեալ բանակ, ընդ որ նեղ և անձուկ, ըստ ասացելումս վերագոյն, ընդ մէջ գետոց և մօրից էին մուտք 'ի քաղաք անդր, ձեռն էարկ 'ի պատրաստութիւն հողաբլրոյ, 'ի կազմութիւն շարժականաց պարսպամարտ պատնիշաց, և 'ի կանգնել մահարձակացս երկուս, զի ոչ ներէր տեղին 'ի բնէ՝ ածել շրջապատնէշ։ Իսկ վասն պարենից ոչ դադարէր 'ի յորդորելոյ զբոյացիս և զեդուացիս. այլ յետինքն թերահոգք՝ դոյզն ինչ լինէին նպաստ. և առաջնոց չէր ձոխութիւն բազում, զի քաղաք փոքրիկ էր նոցա և տկար, և զոր ունէին՝ սպառեցին փութով։ Ամին իրի տուայտէր զօրն 'ի մեծի կարօտութեան պարենից՝ վասն աղքատութեան բոյացւոց և անհոգութեան Եդուացւոց, և վասն շինից այրեացաւեր լինելոյ, մինչև պակասէր և հաց զօրականին զաւուրս բազումս, և 'ի հեռաւոր գեղօրէից հայթայթէին խաշինս՝ հարկանել նոքօք զանհնարին քաղց իւրեանց։ Սակայն և ոչ բան մի՝ դժպատեհ մեծանձնութեան հռովմէական ժողովրդեան և առաջնոց յաղթութեանցն, եղև 'ի զօրս անդ լսելի։ Նա մանաւանդ 'ի կոչել Կեսարու զլեգէոնս 'ի վաշտս, և 'ի հետաղօտել զկամս նոցա՝ զի թէ չկարիցեն բերել առավոյն ծանրութեան՝ բարձցէ զպաշարումն, ամենեքեան առ հասարակ խնդրէին չառնել նոցա զայն նախատինս, և ասէին. « Այս քանի ամք են զի ընդ հրամանաւ քով զի-

նուաճեալ՝ և ուրեք երբեք չառաք յանձն զվատութիւն թողլոյ թերակատար զձեռնարկ 'ի գործ. 'ի ձեռնթափ լինել արդ 'ի պաշարմանէս՝ նախատինս մեծ ածիցեմք զմեզ։ Լաւ իցէ մեզ ծանուցց ևս վշտաց հանդուրժել, քան թողուլ անպատուհաս զնենգ գալլիացւոց, և չխնդրել զվրէժ արեան կոտորելոցն 'ի նոցանէ 'ի Գենաբոն »։ Զնոյն և առ հարիւրապետս զօրաց և առ հազարապետս երկրորդէին, զի հասուսցեն յունկն Կեսարու։

ԺԸ. Այն ինչ Կեսար զմարտկոցսն 'ի պարիսպ անդր մատուցց, լուաւ 'ի գերուոյն՝ զի Վերկինգետորիքս առ նուազելոյ պարենից փոխեալ էր զբանակետղ իւր մերձ յԱւարիկոն, և առեալ զայրուձին և զմեկնակազէնս, որք սովորեալ էին խառն ընդ հեծեալս տալ պատերազմ, դարանէր նստէր 'ի տեղւոջ՝ ուր համարէր եկանել մերոցն 'ի վաղորդայն զճարակէ։ Եւ իբրև գիտաց զայս, չու արար լռելեայն փհասարակածաւ գիշերոյ, և յառաւօտուն պահու եհաս մօտ 'ի բանակետղ թշնամեաց։ Նոցա անդէն և անդ իրազեկ եղեալ 'ի ձեռն լրտեսաց գալստեան Կեսարու, թաքուցին 'ի մացառուտս անտառաց զկառս իւրեանց և զաղխըս, և հանեալ կարգեցին զզօրսն 'ի բարձրաւանդակ տեղւոջ յընդարձակ բլրի։ Զայն տեսեալ Կեսարու իսկ և իսկ հրաման ետ իւրոցն՝ կուտել 'ի մի վայր զամենայն աղխս և զկարասի, և 'ի զէն ընթանալ։

ԺԹ. Եւ էր բլուրն զառ 'ի կողեալ հեշտին 'ի վերելս. և եղտիւր դժուարագնացի և բազմավտանգ դրեթէ ամենուստ շուրջ պատէր՝ իբր յիսուն ոտնաչափ 'ի լայնութիւն։ Զայն տեղի կալեալ գալլիացիք իւրեանց ապաւէն՝ հատեալ զկամուրջս. և բաժանեալ յիւրեանս ըստ ազգաց և ըստ քաղաքաց, պահէին զեղտիւրն՝ չթողուլ ումեք վաղել անցանել ընդ այն, կազմք և պատրաստք՝ եթէ իշխեսցեն երբէք հռովմայեցիք հորդան տալ ընդ այն, հարկանել 'ի բարձուէ անտի զաշխատեալսն 'ի դժուարին անցս լճին։ Ի տեսանել ուրուք զկալ նոցա այնչափ մօտ առ թշնամին, համարէր արդեօք վառեալս զնոսա 'ի հանդէտ պատերազմ.

այլ հայեցեալ 'ի խոնիր անհաւասարութեան տեղւոյն, 'ի մեր աւանուղ էր՝ զի էին ցոյցք մնոտիք: Կեսարու առեւեալ զփութումն զօրացն ընդ համարձակել Թշնամեաց այնպէս 'ի մօտոյ ընդ դէմ իւրեանց, և զի ՚նշան խնդրէին 'ի պատերազմ, եցոյց նոցա քանի տուժից և կորստեան քաջորերոյ լիցի նոցա յաղթութիւնն. և յաւել. «Քանզի տեսանեմ զձեզ պատրաստս 'ի դիմադրաւել վասն իմ յամենայն վըտանգ, անիրաւեցիմ մեծապէս 'ի դատապարտութիւն իմն, եթէ առաւել քան զձեռն՝ սիրելի իցեն ինձ կեանք իմ»: Այսպէս արգահատեալ և սփոփեալ զզօրսն, ած զնոսա զայն օր 'ի պատնէշս՝ հրաման տուեալ պատրաստել որ ինչ կարևորն էր 'ի պաշարումն քաղաքին:

Ի. Վերկինգետորիքս դարձ արարեալ առ իւրսն՝ ամբաստանեցաւ 'ի մատնութիւն՝ վասն ածելոյ կացուցանելոյ զբանակն հուպ առ Հռովմայեցիս, և վասն մեկնելոյ իւրոյ 'ի բանակէն հեծելագնդաւն համօրէն. զի ելիք զզօրսն առանց զօրավարի, որով պատեհ գտեալ Հռովմայեցւոց՝ հուպ ընդ հուպ եկին հասին. և ասէին. «Այսոցիկ ամենայնի ոչ է մարթ վայրապար և առանց համախոհութեան իրիք հանդիպել. խնդրէ ուրեմն զա Թագաւորել 'ի Գալլիա շնորհիւ Կեսարու և ոչ մերովս ձեռնտուութեամբ»: Որոց ետ պատասխանի Վերկինգետորիքս. «Զբանակն առ 'ի չգոյէ անդ ախօտոյ փոխեցի այսր ձեռամբ իսկ խորհրդով. եկի հուպ առ Հռովմայեցիս ձգեալ 'ի պատկանաւոր դիրից տեղւոյս՝ որ 'ի բնէ ամրացեալ է. զայրուձին ումպէտ ասա՝ յանդգնալի եղտիւրս՝ ածի ընդ իս ուր մարթ էր նմա լինել օգտակար. 'ի մեկնել իմում չԹողի զոք իշխան հրամանատար՝ յառաջահայեաց խորհրդով, զի մի 'ի սախալելոյ բազմութեան ձեռնամուխ լիցի 'ի պատերազմ, որում ցանկացեալս տեսանէի զամենեսեան առ կարճմտութեան՝ ոչ ևս կարելով ձեր ժուժկալել երկարատև աշխատութեան: Հռովմայեցւոց գալ այսր՝ եթէ ըստ դիպաց յաջողեալ, բախտին են շնորհք, իսկ եթէ յակնարկութենէ ուրուք կոչեցեալ՝ կաչողին է շնորհք: Տեսանէք աստ 'ի բարձուէ զանօսրա-

թիւն թշնամեաց և զօրութիւն նոցա, որով ոչ իշխեալ գալ 'ի մարտ, խոյս ետուն վատութեամբ 'ի պատնէշս իւրեանց: Զեն ինձ պէտք ընդունել մատնութեամբ 'ի Կեսարէ զիշխանութիւն, զոր կարեմս ունել յաղթութեամբ' որ պատրաստեալ կայ առաջի իմ և գալլիացւոց համօրէն: Նա աւանիկ եթէ համարիք' զի ընդ փառս իմ քան ընդ փրկութիւն ձեր հոգայցեմ, արդ իսկ դարձուցից զաւանդն 'ի ձեռս ձեր: Եւ զի քաջ խելամուտ իցէք անկեղծութեան բանիցս, նոցին իսկ հռովմէական զօրացն լուարուք »: Եւ հրամայեաց ածել զհնձողսն, զորս աւուրբք ինչ յառաջ կալեալ էր յարօտս և տանջեալ 'ի կապանս սովոյ: Նոքա յառաջագոյն խրատեալք զինչ առ հարցուածս տալ պատասխանի' ասեն. « Զօրականք եմք 'ի լեգէոնականաց անտի, գաղտագողի ելեալք 'ի բանակէն առ սովոյ' գտանել ինչ թէ կարիցեմք' ցորեան կամ խաշն յարօտի. հանգոյն մեզ և բանակն ողջոյն տուայտի սովալլուկ. ամենեցուն անկեալ 'ի զօրութենէ' ապիկարք 'ի գործ վաստակոց: Նմին իրի եթէ յերիս աւուրս ոչ նուաճեսցի քաղաքն, Կեսարու եդեալ է 'ի մտի չու առնել մեկնել բանակաւն 'ի բաց »: Յաւել յայնժամ Վերկինգետորիքս. « Այսորիկ ահա բարութիւնք առ ձեզ այնորիկ' զոր ամբաստանէքդ 'ի մատնութիւն, և որոյ նախահոգ խնամով տեսանէք այսօր ըղզօրն յաղթական' առանց արեան ձերոյ' սպառեալ իմն 'ի սովոյ, և ոչ 'ի փախչել իւրում անարգաբար' գտանելով ուրեք ընկալուչ իւր, և ոչ քաղաք' որ տայցէ նմա ապաւէն »:

ԻԱ. Աղաղակեցին ամենայն բազմութիւն զօրացն, և 'ի շռինդն զինուց' որպէս սովորութիւն էր նոցա' յայտ արարին զհաճութիւն իւրեանց ընդ բանս նորա, և ասեն. « Արդարև զօրավար մեծ Վերկինգետորիքս, չիք երկբայել ընդ հաւատարմութիւն նորա, ոչ ոք ճարտարագոյն քան զնա գիտասցէ ուղղել զպատերազմ »: Եւ հաստատեցին այրընտիր յամենայն զօրուէն' բիւր մի մուծանել 'ի քաղաք անդըր, և մի՛ զհասարակաց փրկութիւն 'ի Բիտուրիգս թո-

ղուլ, որք 'ի պահել զքաղաքն՝ անձանց ընծայեցեն բա-
վանդակ զպարծանս յաղթութեան։

ԻԲ. Գաղղիացիք ազգ ճարտար և աջող 'ի նմանութիւն յուսանել և 'ի գործել զհաւասար ամենայնի զոր ուսա-նեն, բազմահնար մարթանօք իւրեանց մրցէին ընդ անզու-գական քաջութեան մերոյ զօրականին։ Քանզի հանգոյցս կեղթկապս զդերանդեօք[1] արկեալ և 'ի բաց զայնոսիկ գար-ձուցեալ՝ անուորդօք 'ի ներքս ձգէին. և փլուզանէին զհո-ղաբլուրս՝ ական 'ի ներքոյ հատեալ. զի առ յաճախու-թեան առ նոսա բովուց երկաթոյ՝ վարժք էին և հմուտք 'ի հատանել ականս պէսպէս։ Պարիսպք նոցա ամենուստ ամրացեալ էին փայտակերտ մարտկոցօք՝ պատեալ մոր-թովք. և ստէպ ստէպ 'ի տուէ և 'ի գիշերի յարձակէին 'ի պատնէշս մեր հրձիգ լինել, հարկանել զվաստակաւորս 'ի գործ, և ըստ բարձրանալ մարտկոցաց մերոց օր ըստ օրէ ամբարձմամբ հողաբլրոց, յաւելուին և նոքեանք բարձրա-ցուցանել զիւրեանցն՝ գերան 'ի գերան կցորդելով առ 'ի վեր. և 'ի գետնափոր անցս ճանապարհաց ընկենուին խան-ձողս և գերանս ծայրատաշս, կուպր եռացեալ և քարինս ստուարս, խափանել նոքօք զզօրական մեր 'ի պարիսպս ան-դրր մերձենալոյ։

ԻԳ. Գաղղիացւոց առ հասարակ գրեթէ մի և նոյն օրի-նակ էր պարսպաշինութեան. գերանս միափերթս ուղղա-բերձ հարստեն 'ի գետին երկոտնաչափ անջրպետօք՝ պա-հանգակապս գօտեաւ յետկուսէ, շուրջ ամրացուցեալ թանձրախիտ հողակուտիւ. և յանջրպետսն զոր ասացաք՝ զետեղեն յառաջոյ կողմանէ քարինս մեծամեծս։ Եւ հաս-տատեալ զայն հաստաբեստ և միայար, յաւելուն 'ի վերայ այլ կարգ նովին զուգաչափ հեռաւորութեամբ գերանաց ամենուստ, և յիւրաքանչիւր հաւասար անջրպետսն՝ դե-

---

[1] Գերանդիք պատերազմականք հաստատեալք 'ի ծայրս երկայն ձողոց՝ որովք վարէին 'ի քանդել զպարիսպս և 'ի խլել զփայտա-կերտս կամ զտախտակամածս նոցին։

րան ընդ մէջ զետեղեն քարինս, ճարտարագործ արուեստիւն առնել անդրդուելի։ Զայսօրինակ յառաջ վարեն ըզգործն մինչև ցպատշաճ բարձրութիւն պարսպին։ Այսու ուղղաձիգ շարակարգութեամբ քարանց ընդ գերանս զուգադրեալ՝ ոչ անշուք երևի գործն, և 'ի պաշտպանութիւն ևս քաղաքաց յանկագոյն և օգտակար՝ քարանց զդէմ ունելով հրոյ, և ատաղձիցն զհարուածոց խոյից, զի գերանք միայարք, ըստ յաճախ սովորութեան քառասուն ոտնաչափ երկայնք, պահանգակապ պնդեալք 'ի ներքուստ՝ անքակտելիք եղանին և անխորտակելիք։

ԻԴ. Այս ամենայն պատճառք եղեն յապաղելոյ պաշարմանն. և յայս ամենայն միջոց ժամանակի՝ ցուրտ և տիղմ և տարափք հանապազորդք՝ խափան լինէին վաստակոց զօրականին. սակայն անդուլ աշխատութեամբ յաղթող լեալ ամենայնի, 'ի քսան և հինգ աւուրս կանգնեցին պատնէշ հողաբլուր երեքհարիւր երեսուն ոտնաչափ 'ի լայնութիւն, և եօթանասուն 'ի բարձրութիւն։ Եւ իբրև այն 'ինչ 'ի պարիսպ անդր թշնամեաց հպէր գործն, Կեսարու 'ի վերայ կալով գործոյն՝ որպէս սովորն էր՝ և խրախուսելով զզօրականն զի մի՛ բնաւ ընդհատեսցի, և ահա տեսաւ զի ծխէր հողաբլուրն. քանզի ական ընդ նովաւ հատեալ՝ հրձիգ լեալ էին անդր թշնամիք. 'ի նմին պահու և աղաղակ մեծ լսելի լինէր ընդ պարիսպն ողջոյն։ Ընդ դրունս մարտկոցացն երկուստեք 'ի դուրս խուժեցին պաշարեալք՝ կէսք ջահս այլք խռիւս դիւրավառս 'ի պարսպէ անտի 'ի հողաբլուրն ընկենլով 'ի բացէ, այլք կուպր և այլ նիւթս հրաբորբոքս զնոքօք հեղուին, մինչև շուարել պաշարողաց յոր կոյս դիմել և ուր հասանել յօգնութիւն։ Բայց քանզի լեգէոնք կրկին կարգեալ 'ի Կեսարէ՝ հսկէին միշտ 'ի պահպանութիւն պատնիշաց, և այլք բազումք սահմանեալ ժամանակօք կային փոխանակաւ 'ի վաստակս, դիւրաւ յաջողեաց կիսոց զդէմ ունել յարձակելոցն 'ի դուրս, այլոց հատանել բաժանել զմարտկոցս 'ի հողաբլրոյն, և ամենեցուն առ հասարակ դիմել 'ի ղակշաց՝ շիջուցանել զհուրն։

ԻԵ. Իբրեւ անցանէր մնացուած եւս գիշերոյն, և ամենայն ուրեք էր պատերազմ, Թշնամեաց եւս քան զեւս յաւելոյր խրախոյս 'ի յաղթութիւն, մանաւանդ 'ի տեսիլ հրկիզելոյ փայտակերտից մարտկոցացն, և անպատսպար զօրականին, որում չէր դիւրին ունել ուստեք օգնութիւն, ուր առ իւրեանս անխոնջք ընդ խոնջս փոխանակէին։ Եւ իբրեւ համարէին նոքա ահա հասեալ զժամանակ փրկութեան Գալլիոյ, պատահեցին անդ ակներեւ դէպք ինչ ոչ անարժան յիշատակի, զոր ոչ է ինձ պարտ լռել։ Մի ոմն 'ի Գալլիացւոց անտի որ առ դրան քաղաքին՝ ձեռաց 'ի ձեռս ընկալեալ գնդակս ճարպ ընդ կպրոյ շաղեալս՝ ընկենոյր 'ի հուր անդր բորբոքեալ զառաջեաւ մարտկոցի մերոյ, և 'ի կարճէ [1] լեալ ընդ աջակողմն նետահար՝ տապաստ անկաւ. և 'ի փոխանակել այլոյ ուրուք յընթերակայից 'ի նոյն՝ հարաւ և նա նոյնպէս 'ի կարճէ. փոխանակէր միւս այլ երրորդ և չորրորդ, և ոչ մնայր վայրն դատարկ մինչև շիջաւ հուրն. և Թշնամեաց ամենեցուն տեղի տուեալ ամենուստ, դուլ լինէր պատերազմին։

ԻԶ. Գալլիացւոց զամենայն փորձ և հնարս 'ի վար արկեալ 'ի դերեւ; 'ի վաղիւ անդր 'ի յորդորելոյ և 'ի հրամանէ Վերկինգետորիգեայ խորհուրդ կալան խոյս տալ 'ի քաղաքէն, յուսացեալ 'ի լռութեան գիշերոյ՝ առանց մեծի կորստեան յաջողել 'ի նոյն. զի և բանակ Վերկինգետորիգեայ ոչ յոյժ հեռի էր 'ի քաղաքէն, և ճահիճ ամենայն ուրեք խափանէր զհռովմայեցիս պնդել զհետ։ Եւ մինչդեռ պատրաստէին 'ի գիշերախառն փախուստ, ելին դիմեցին յանկարծ 'ի դուրս յիւրաքանչիւր տանց կանայք, և անկեալ լալագին առ ոտս նոցա՝ պաղատէին Թախանձանօք խնայել յինքեանս՝ 'ի կանայս իւրեանց և յորդիս, և մի զանաւագ բնութիւնն ապիկար 'ի փախուստ՝ Թողուլ մատն և յաւար Թշնամեաց. և 'ի տեսանելն զնոսա անողոքելիս՝

---

1 Կարիճ է կազմած պատերազմական նետընկեցիկ, տեղալ նմա-նետս Թունալիցս 'ի ծայրս սլաքացն։

առ մեծի վտանգին, քանզի երկիւղ 'ի բաց մերժէ զգութ, ճիչ բարձին առ 'ի զեկուցանել հռովմայեցւոց զփախուստն. և գալլիացւոց զահի հարեալ թէ գուցէ պաշարեսցին 'ի հռովմէական հեծելազօրուէն, կասեցան 'ի խորհրդոց անտի։

ԻԷ. Ի վաղիւ անդր 'ի բովանդակել ամենայն գործոյ՝ զօրս Կեսարու հաստատեալ էր 'ի մտի առնել, և 'ի մատուցանել յառաջ զմարտկոցն, սկսաւ տեղատարափ յորդ. և դէպ բարեպատեհ թուեցաւ նմա այն 'ի կատարումն խորհրդոց իւրոց։ Զի տեսեալ զամրականս Թերահոգ 'ի պահպանութիւն պարսպացն, հրաման ետ իւրոցն ևս թուլակի վաստակել. և եցոյց նոցա որ ինչ կամէրն զի արասցեն։ Քաջալերեաց զմեկնակողէն լեգէոնս զօրս յետկոյս պահանգակապ պատնիշացն ծածկեալ էր, խրախուսել 'ի յաղթութիւն, և վայելել վայրիկ մի յարդիւնս բազում վաստակոցն. և խոստացաւ մրցանակ որոց նախայարձակ եղանիցեն 'ի պարիսպն։ Զայս ասացեալ, ետ նշան 'ի յարձակումն. և ընդ հարկանել փողոյն՝ սլացեալ ամենուստ դիմեցին արագ արագ զեղան 'ի պարիսպն։

ԻԸ. Զարհուրեցան թշնամիք յանակնկալ յարձակմանէն, և փախուցեալ 'ի պարսպաց անտի և 'ի մարտկոցաց՝ դիմեցին 'ի հրապարակ և 'ի բացարձակ վայրս քաղաքին, և կարգեցան կացին 'ի ձև իմն եռանկիւնի, առ 'ի կալ պատրաստ՝ ընդ որ կողմն և դիմեսցեն թշնամիք՝ 'ի ճակատամարտ։ Եւ իբրև տեսին զի ոչ ոք իջանէր 'ի վայր, այլ սփռեալ դրաւէին զպարիսպն ողջոյն, երկեան թէ գուցէ բարձցի ամենուստ նոցա յոյս փախստի, և զէնընկէցք խուռն դիմեցին յելս քաղաքին. և առ անձկութեան դրանն՝ մղեալ և ճնշեալ, կէսք կոտորեցան անդ 'ի զօրաց մերոց, այլք ելեալ ըստ դուռն սպանան յայրուձիոյն։ Եւ քանզի զայրացեալ էին զօրք ընդ կոտորածն կրեալ 'ի Գենաբոն, և ընդ բազում աշխատութիւնն, ոչ ինչ փոյթ ունելով զաւարէն, կոտորեցին անխնայ զանցեալսն հասակաւ և զկանայս և զմանկտի, որպէս զի 'ի խուռն բազմութենէ անտի քաղա-

քաղուց իւրե քառասուն հազարաց՝ հազիւ ութ հարիւր 'ի նախկին շուինգն աղաղակի փախուցեալ՝ զերծեալ ապաստանեալ առ Վերկինգետորիքս. որ ընկալեալ զնոսա լռելեայն 'ի խոր գիշերի, զի մի առ խառն փախստէից, խուժանն առնիցէ աղմուկ ինչ յարուցէ. և 'ի ձեռն մտերմաց իւրոց և գլխաւորաց իւրաքանչիւր քաղաքաց 'ի բացեայ զճանապարհայն զատուցեալ զնոսա ըստ ցեղից, զետեղեցոյց 'ի բանակին առ ազգակիցս իւրեանց, յիւրաքանչիւր առհմանեալ տեղւոջ 'ի սկզբանն:

ԻԹ. Եւ 'ի վաղիւ անդր ժողով գումարեալ, սփոփէր և քաջալերէր զնոսա՝ մի զանգիտել, մի լքանել առհասարակ ընդ արկածսն, և ասէր. «Իբր ոչ եթէ քաջութեամբ կամ հռոմայեցիք զյաղթութիւն, այլ բազմահնար արուեստագիտութեամբ իւրեանց 'ի պաշարումն քաղաքաց հմտագոյնք քան զմեզ: Սխալէ որ 'ի պատերազմունս յաջողութեան միշտ ակն ունի: Դուք ինքնին վկայէք որպէս հակառակ կացի պահելոյ զԱւարիկոն, այլ անզգոյշ խորհրդով Բիտուրգաց, և առաւելազանց զեխմամբ այլոց հասին մեզ արկածքս՝ որոց հուպ ընդ հուպ անկցի դարման առաւելագոյն յաջողութեամբ, 'ի գուն գործել խնամ միաբանել յաւելուլ 'ի մեզ և զայլ քաղաքս Գաղղիոյ, որք չեն ցարդ ընդ մեզ. և միակամ միախորհուրդ միաբանութեան բովանդակ Գաղղիոյ՝ աշխարհ համօրէն ոչ կարասցէ դիմակալել. և այս ոչ անագան: Այլ արդ պարտ է մեզ խորհել 'ի փրկութիւն հասարակաց, և պատնիշափակ ամրանալ առ 'ի դիւրաւ զդէմ ունել յեղակարծ յարձակման թշնամեաց:

Լ. Հաճոյ թուեցան գաղղիացւոց բանք նորա, այնու մանաւանդ՝ զի անվհատիլն 'ի ձախողակ արկածիցն՝ ոչ ծածկեաց զերեսս իւր, և ոչ խոյս ետ՝ չերեւել 'ի հանդիսի ժողովրդեան. մեծարոյ եւս համարեցաւ վասն նախահայեաց տեսութեանն, զի նախ քան զարկածն՝ [illegible] ն տուեալ էր հրկէզ առնել զԱւարիկոն, և յետ [illegible] 'թողուլ լքանել զայն: Այսպէս, ուր այլոց [illegible] 'ի ձախողել իւրացն նուազէ զօրութիւն, [illegible] ակն

յաւելոյր օր ըստ օրէ յետ պարտութեանն այնորիկ։ Դարձեալ և խոստմամբ միաբանելոյ ընդ իւր զայլ ևս քաղաքս 'ի դաշնակցութիւն՝ քաջայոյս առնէր զնոսա։ Զայս առաջին նուագ սկսան գաղղիացիք պատնիշափակ ամրանալ, այնպէս ընթեալ սրտաբեկ՝ զի որ անսովորքն էին յաշխատութիւն, պատրաստ կային յանձն առնուլ և կատարել որ ինչ և հրամայեսցի։

ԼԱ. Ոչինչ ընդհատ և Վերկինգետորիքս զուն գործէր օգուտ չափ՝ միաբանել ընդ իւր, ըստ խոստման իւրում, և զայլ քաղաքս, որսալով զիշխանս նոցա խոստմամբք և պարգևօք։ Եւ ընտրեաց առ այս արս աջողակս, և ճարտարութեամբ բանից և կերպարանօք բարեկամութեան բաւականս առ 'ի նոյն. խնամ կալեալ և ապրեցելոցն 'ի կոտորածէ անտի յԱւարիկոն, զգեցոյց զնոսա և զինեաց. և առ 'ի լնուլ զթերի բանակին, հրաման առնէր քաղաքի քաղաքի տալ և հասուցանել 'ի բանակ անդր այսչափ ինչ զօրս, ժամադիր ժամակալ եդեալ զօրաժողովոյ նոցա, և պատուէր ևս տուեալ գումարել զամենայն աղեղնաւորս, որոց բազմութիւն մեծ է 'ի Գալլիա, և առաքել առ ինքն։ Սոքիմբք լցոյց վաղվաղակի զկորուստ զօրացն առեալ յԱւարիկոն։ Ցայնմ վայրի և Թեւտոմատ որդի Ոլլովիկոնի՝ արքայ Նիտիոբրիգաց, այն՝ որոյ հայր բարեկամ 'ի ծերակուտէն մերմէ մեծարանաց անուամբ էր կոչեցեալ, եկն առ նա բազմաձեռն հեծելովք, զորս յիւրոյ անտի և յակուիտանացւոց առեալ բերէր։

ԼԲ. Կեսարու համբար բազում ցորենոյ և այլոց պարենից գտեալ յԱւարիկոն՝ եկաց անդ աւուրս ոչ սակաւ, կազդուրել զզօրականն պարտասեալ 'ի վաստակոց և 'ի սովոյ։ Անցանէր ձմեռն, և եղանակ տարւոյն ձայն տայր 'ի պատերազմ։ Կեսարու կամք էին դիմել 'ի վերայ թշնամեաց, հանել զնոսա արտաքս 'ի մօրից և 'ի մացառաց, կամ շուրջ պաշարել և 'ի նեղ արկանել զնոսա. և ահա աւագանին եդուացւոց գայր առ նա հրեշտակութեամբ, աղաչել՝ զի փութասցի 'ի կարևոր և 'ի տագնապ ժամուն հասանել

քացւոց իբրև քառասուն հազարաց՝ հազիւ ութ հազարք 'ի նախկին շփոթն աղաղակի փախուցեալ՝ զերծան մազապուր առ Վերկինգետորիքս. որ ընկալաւ զնոսա լռելեայն 'ի խոր գիշերի, զի մի՛ առ խուռն փախստէից, խուժանն աղեկէզ աղմուկ ինչ յարուսցէ. և 'ի ձեռն մտերմաց իւրոց և գըլխաւորաց իւրաքանչիւր քաղաքաց՝ 'ի բացեայ զճանապարհայն զատուցեալ զնոսա ըստ ցեղից, զետեղեցոյց 'ի բանակին առ ազգակիցս իւրեանց, յիւրաքանչիւր սահմանեալ տեղւոջ 'ի սկզբանէ:

ԻԹ. Եւ 'ի վաղիւ անդր ժողով գումարեալ, ափոփէր և քաջալերէր զիւրսն՝ մի՛ զանգիտել, մի՛ լքանիլ ամենևին ընդ արկածսն, և ասէր. «Իբր ոչ եթէ քաջութեամբ կալան հռովմայեցիք զյաղթութիւն, այլ բազմահնար արուեստ գիտութեամբ իւրեանց 'ի պաշարումն քաղաքաց հմտագոյնք քան զմեզ: Սխալէ որ 'ի պատերազմունս յաջողութեան միշտ ակն ունի: Դուք ինքնին վկայէք որպէս հակառակ կացի պահելոյ զԱւարիկոն, այլ անզգոյշ խորհրդով Բիտուրգաց, և առաւելազանց զիջմամբ այլոց հասին մեզ արկածքս՝ որոց հուպ ընդ հուպ առնիցի դարման առաւելագոյն յաջողութեամբ, 'ի գուն գործել իմում միաբանել յաւելուլ 'ի մեզ և զայլ քաղաքս Գալլիոյ, որք չեն ցարդ ընդ մեզ. և միակամ միախորհուրդ միաբանութեան բոլորումն Գալլիոյ՝ աշխարհ համօրէն ոչ կարասցէ դիմակալել. և այս ոչ անագան: Այլ արդ պարտ է մեզ խորհել 'ի փըրկութիւն հասարակաց, և պատնիշափակ ամրանալ առ 'ի դիւրաւ զդէմ ունել յեղակարծ յարձակման թշնամեաց:

Լ. Հաճոյ թուեցան գալլիացւոց բանք նորա, այնու մանաւանդ՝ զի անվհատիլն 'ի ձախողակ արկածիցն՝ ոչ ծածկեաց զերեսս իւր, և ոչ խոյս ետ՝ չերևել 'ի հանդիսի ժողովրդեան. մեծարոյ ևս համարեցաւ վասն նախահայեաց տեսութեանն, զի նախ քան զարկածսն՝ հրաման տուեալ էր հրկէզ առնել զԱւարիկոն, և յետ այնորիկ ևս՝ թողուլ լքանել զայն: Այսպէս, ուր այլոց սպարապետաց 'ի ձախողել իւրացն նուազէ զօրութիւն, սորայս ընդհակառակն

յաւելուր օր ըստ օրէ յետ պարտութեանն այնորիկ։ Դարձեալ և խոստմամբ միաբանելոյ ընդ իւր զայլ ևս քաղաքս 'ի դաշնակցութիւն՝ քաջայոյս առնէր զնոսա։ Զայս առաջին նուագ սկսան գալլիացիք պատնիշափակ ամրանալ, այնպէս լեալ սրտաբեկ՝ զի որ անսովորքն էին յաշխատութիւն, պատրաստ կային յանձն առնուլ և կատարել որ ինչ և հրամայեսցի։

ԼԱ. Ոչինչ ընդհատ և Վերկինգետորիքս զուն գործէր ոգւով չափ՝ միաբանել ընդ իւր, ըստ խոստման իւրում, և զայլ քաղաքս, որսալով զիշխանս նոցա խոստմամբք և պարգևօք։ Եւ ընտրեաց առ այս արս աջողակս, և ճարտարութեամբ բանից և կերպարանօք բարեկամութեան բաւականս առ 'ի նոյն. խնամ կալեալ և ապրեցելոցն 'ի կոտորածէ անտի յԱւարիկոն, զգեցոյց զնոսա և զինեաց. և առ 'ի լնուլ զթերի բանակին, հրաման առնէր քաղաքի քաղաքի տալ և հասուցանել 'ի բանակ անդր այսչափ ինչ զօրս, ժամադիր ժամանակ եդեալ զօրաժողովոյ նոցա, և պատուէր ևս տուեալ գումարել զամենայն աղեղնաւորս, որոց բազմութիւն մեծ է 'ի Գալլիա, և առաքել առ ինքն։ Սոքիմբք լցոյց վաղվաղակի զկորուստ զօրացն առարեալ յԱւարիկոն։ Ցայնմ վայրի և Թեւտոմատ որդի Ոլլովիկոնի՝ արքայ Նիտիոբրիգաց, այն՝ որոյ հայր բարեկամ 'ի ծերակուտէն մերմէ մեծարանաց անուամբ էր կոչեցեալ, եկն առ նա բազմաձեռն հեծելովք, զորս յիւրոյ անտի և յակուիտանացւոց առեալ բերէր։

ԼԲ. Կեսարու համբար բազում ցորենոյ և այլոց պարենից գտեալ յԱւարիկոն՝ եկաց անդ աւուրս ոչ սակաւ, կազդուրել զզօրականն պարտասեալ 'ի վաստակոց և 'ի սովոյ։ Անցանէր ձմեռն, և եղանակ տարւոյն ձայն տայր 'ի պատերազմ։ Կեսարու կամք էին դիմել 'ի վերայ թշնամեաց, հանել զնոսա արտաքս 'ի մօրից և 'ի մայրեաց, կամ շուրջ պաշարել և 'ի նեղ արկանել զնոսա. և ահա աւագանին էդուացւոց գայր առ նա հրեշտակութեամբ, աղաչել՝ զի փութասցի 'ի կարևոր և 'ի տագնապ ժամուն հասանել

յօգնութիւն քաղաքի նոցա, որ 'ի մեծի վտանգի կայր, և ասէին. « Ըստ վաղնջուց առ մեզ սովորութեան՝ ամի ամի ընտրեալ ոք իշխան՝ թագաւորէ. այլ արդ երկուց ոմանց կալեալ զիշխանութիւն, այր այր զիւրն համարի ըստ օրէնի: Մի յերկուց անտի է Կոնուիկտոլիտ՝ պատանի առոյգ և ազնուազգի. իսկ միւսն Կոտոն 'ի վաղեմի զարմէ, այր մեծազօր և բազմահմուտ, եղբայր Վետելիակեայ հերուն թագաւորելոյ: Քաղաքն ողջոյն յարուցեալ է 'ի զէն, աւագանին տարաձայն, ժողովուրդն երկպառակ. 'ի յերկարել վիճին՝ խանձեսցի երկուստեք մարտ քաղաքական »:

ԼԳ. Կեսարու ոչ բարւոք թուէր թողուլ զպատերազմն և հեռանալ 'ի թշնամւոյն, այլ զմտաւ ածեալ զորգասիս չարեաց՝ որ զհետ գան յաճախ հերձուածոց, և զի մի քաղաք այնպիսի և այնպէս կցորդեալ ընդ հռովմէական ժողովրդեան, որում իւր իսկ խնամարկեալ էր միշտ և պայծառացուցեալ զնա յամենայնի, յարիցէ 'ի զէն և 'ի կռիւ, և կողմն տկարագոյն կոչեսցէ յօգնութիւն զՎերկինգետորիքս, կարեւոր համարեցաւ կանխել զառաջն անուլ վտանգին: Եւ զի օրէնք էին առ Էդուացիս՝ մեծի իշխանին չելանել երբէք ըստ սահման, ոչ կամեցեալ Կեսարու սասանել ինչ օրինաց նոցա և իրաւանց, խորհեցաւ ինքնին երթալ առ նոսա: Կոչեաց զաւագանին նոցա համօրէն, և զպայքարեալսն ընդ իրեարս, գալ առ ինքն 'ի Տեկետիա. և ժողովեցաւ անդր գրեթէ քաղաքն ամենայն: Կեսարու հարցփորձ արարեալ ստուգեաց՝ զի ոչ ըստ օրինի լեալ էր ընտրութիւնն ուր և երբ պարտն էր, այլ սակաւուց և եթ գաղտագողի համախոհութեամբ այլուր և 'ի տարաժամու, եղբայր յեղբօրէ ընկալեալ զիշխանութիւնն, ուր օրէնք արգելուին երկուց ևս ազգականաց ոչ միայն չիշխել կենդանեաւ իրերաց, այլ և ոչ յատեան ծերակոյտին մտանել. և ստիպեաց զԿոտոն 'ի բաց կալ յիշխանութենէ. և զԿոնուիկտոլիտ, որ ըստ օրինի ընտրեալ էր 'ի քրմաց միաբանութեամբ աւագանւոյն, հաստատեաց յիշխանութեան:

ԼԴ. Զայս այսպէս վճռեալ Կեսարու՝ յորդորեաց զԷդուացիս 'ի բաց թողուլ զամենայն հակառակութիւն և ըզհերձուած, և զանցեալն 'ի մոռացօնս արկեալ՝ միայնոյ առաջակայ պատերազմին ևեթ փոյթ ունել 'ի ձեռնտուութիւն, մրցանակս խոստացեալ քաջացելոցն 'ի մարտի 'ի նուաճելն զԳալլիա։ Եւ ասաց յղել առ ինքն վաղվաղակի զհեծելազօր իւրեանց համօրէն և բիւր մի հետևակաց, առ 'ի կացուցանել զնոսա 'ի պահ և յապահովութիւն համբարաց. և բաժանեալ զզօրսն յերկուս, յղեաց լեգէոնս չորս ընդ Լաբիենոսի առ Սենոնս և առ Պարիսացիս, և զայլ վեցեսին լեգէոնս առեալ ընդ իւր էած ընդ ափն գետոյն Էլաւերայ յԱրուերնս 'ի Գերգովիա քաղաք. Նոյնպէս և զկէս հեծելոցն ետ Լաբիենեայ, և զմիւս կէսն կալաւ առ իւր։ Զոր իբրև գիտաց Վերկինգետորիքս, աւերեալ զամենայն կամուրջս Էլաւերայ՝ սկսաւ յայնմ կողմանէ գետոյն գալ յառաջ։

ԼԵ. Եւ 'ի հանդիպել զօրացն երկուստեք, և 'ի հարկանել գոգցես դէմ ընդ դէմ բանակ առ բանակ, դէտք ամենուրեք յերեսաց թշնամեաց կային 'ի պահ՝ չթողուլ հըռովմայեցւոց կամուրջ արկանել յանցս զօրաց Կեսարու. և անկաւ նա 'ի տագնապ մեծ, թէ գուցէ զմեծ կէս մասն ամարայնոյն արգելեալ մնասցէ յայնկոյս գետոյն, որ ըստ յաճախ սովորութեան յառաջ քան զաւուրս աշնայնոյ անհուն է։ Եւ 'ի հնարս իրացն եդ զբանակ իւր յանտառախիտ վայրի հանդէպ միոյ 'ի կամրջաց, զոր Վերկինգետորիգեայ աւերեալ էր։ Եւ 'ի վաղիւ անդր կացեալ անդ 'ի թագստեան երկոքումբք ևեթ լեգէոնօք, զայլսն՝ աղխիւքն հանդերձ բոլորեքումբք՝ որպէս սովորն էր, արձակեաց 'ի բաց, կալեալ ևեթ գումարտակս չորս յիւրաքանչիւր լեգէոնաց, զի ամբողջ թիւ լեգէոնացն երևեսցի։ Եւ հրաման տուեալ նոցա երթալ հեռագոյն ըստ կարի, այն ինչ 'ի բանակետղ անդր հասեալ զնոսա համարեցաւ, չափեալ ըստ աւուր զչու նոցա, ձեռն 'ի գործ արար կանգնել անդրէն զկամուրջն 'ի վերայ նոցին իսկ հիմանց՝ որ սորին մա-

սամիքն անհեղձ մնային։ Եւ վաղ ընդ փոյթ յամբոնջ զպարծն ածեալ, անցոյց յայնկոյս զլեգէոնսն. և ընտրեալ իւր վայր դիպաւոր 'ի բանակելոյ, առաքեաց կոչեաց անդրէն և զայլս 'ի զօրացն։ Զայն իբրև գիտաց Վերկինգետորիքս, ձեռ տուեալ իւրոցն՝ անց գնաց յառաջ շտապաւ, զի մի՛ ստիպեսցի ակամայ 'ի պատերազմ։

ԼԶ. Կեսարու հասեալ անտի 'ի Գերգովիա 'ի հանգոյս հինգ, եւ 'ի նմին աւուր հեծելախումբ մրցութիւն առ 'ի թեթև ինչ նախաշաւիղ պատերազմի. և տեսեալ 'ի բարձաւ լերին զքաղաքն անմատոյց ամենուստ, ոչ յուսայր նուաճել զայն պատերազմաւ. իսկ առ 'ի պաշարել հարկ էր պատրաստել նախ համբար 'ի պարէն։ Վերկինգետորի հարեալ բանակ 'ի լերին անդ մերձ 'ի քաղաքն, զետեղեաց զզօրս ազգաց իւրաքանչիւր՝ ուրոյն յիրերաց անձուկ միջոցաւ, որոց ծածկեալ համասփիւռ զոստս լերինն՝ ահագին տեսողացն երևէին։ Անդ զօր ամենայն 'ի ծագել առաւօտու ժողովէր զիշխանս ազգացն, առ խորհրդականս ունելով զնոսա, լսել 'ի նոցանէ և կամ տալ նոցա պատուէրս 'ի գործ պատերազմին. և գրեթէ զօր ամենայն մատուցանէր զհեծեալս 'ի փորձ իւրաքանչիւր նոցա քաջութեան և ուժոյ, 'ի հանդէս ձիամարտի խառն ընդ աղեղնաւորս։ Էր անդ 'ի հանդիպոյ քաղաքին՝ առ ստորոտով լերինն բլուր մի՝ քաջ շուրջանակի ամրացեալ, զոր թէ ունէին մերքն՝ նուազէր մեծաւ մասամբ ջուր թշնամեաց, և ոչ զճարակէ ելանել կարէին համարձակ. այլ և ոչ պահս ըստ արժան բաւականին ունէին անդ թշնամիք։ Կեսարու 'ի լռութեան գիշերի 'ի դուրս խաղացեալ 'ի բանակէն՝ հար վանեաց անտի զպահապանս՝ մինչև ժամանեալ նոցա օգնութիւն 'ի քաղաքէն, և կալեալ զբլուրն՝ կացոյց անդ լեգէոնս երկու. և 'ի մեծէ բանակէն մինչև ցփոքրն եառ հատանել փոսս կրկին լայնս երկոտասան ոտնաչափ, զի 'ի յեզակարծ յարձակել թշնամեաց՝ մարթ իցէ և միանաւորաց երթևեկել ընդ այն անվտանգ։

ԼԷ. Մինչդեռ այս անցք մերձ 'ի Գերգովիա անցանէին, Կոնուիկտոլիտոն եդուացի՝ որ վճռով Կեսարու, որպէս

տատ 'ի վերոյ ցուցի՝ հաստատեալ էր յիշխանութեան, կաշառեալ յարուերնացւոց՝ խօսեցաւ ընդ երիտասարդս քաղաքին, որոց գլուխ էր Միտաւրիկ եղբայրն հանդերձ, պատանիք մեծատոհմք. և բաժանորդս արարեալ զնոսա վարձուցն՝ յաւել. «Յուշ լիցի ձեզ զի ազատազգիք ծնեալ էք յիշխանութիւն. մի այս քաղաք է էդուացւոց՝ որ յամեցուցանէ զանշուշտ յաղթութիւն Գալլիոյ. այլք առ հասարակ ակն ածեն 'ի սմանէ. եթէ սա 'ի բաց կացցէ 'ի հռովմայեցւոց, ոչ ևս իցէ նոցա կռուան ոտին 'ի Գալլիա: Է իմ արդարև ընկալեալ շնորհս 'ի Կեսարէ՝ թէպէտ և ոչ առանց արժանեաց. սակայն հասարակաց ազատութեան փոխանակեմ զամենայն: Եւ ընդէ՞ր իցէ էդուացւոց զԿեսար նստուցանել իւրեանց դատաւոր 'ի վէճս իրաւանց և օրինաց, և ոչ հռովմայեցւոց զէդուացիս»: Հաւանեցան պատանիքն իսկոյն՝ հրապուրեալք 'ի բանից իշխանին, մանաւանդ վարձուցն ակնկալութեամբ. և խոստացեալ կալ առաջնորդ խորհրդոյն, խնդրէին զհնարս իրին: Քանզի խիթային 'ի քաղաքացւոց՝ անտի թէ գուցէ չառնուցուն յանձն յանդգնել 'ի պատերազմ: Հաստատեցաւ Միտաւրիկեայ կալ զօրավար բիւրուն՝ որ երթալոց էր ընդդէմ Կեսարու 'ի պատերազմ. և եղբարցն նորա յառաջել քան զինքն ընդդէմ նորա, և որ ինչ այլ պարտ էր առնել՝ սահմանեցաւ:

ԼԸ. Միտաւրիկեայ առեալ ընդ իւր զբիւր զօրականն՝ այն ինչ մերձ եղև 'ի Գերգովիա իբր երեք բիւր քայլաչափ, խօսեցաւ առ զօրականն համախումբ և ասէ արտասուօք. «Յո՞ դիմեալ երթամք, ո՛ զօրականք. կորեաւ հեծելազօր մեր, կորեաւ և ազատորեարն առ հասարակ, և Եպորեդորիքս և Վիրիդոմար որպէս մատնիչք՝ 'ի մահ վարեցան 'ի հռովմայեցւոց՝ առանց իրիք հարցափորձի: Զայսոսիկ ձեզ ապրեալքն 'ի կոտորածէն պատմեսցեն. զի ինձ՝ ցաւք կորստեան եղբարցն իմոց և մերձաւորաց ոչ ներեն մանրապատում զանցս իրացն առնել»: Ընդ յառաջ մատեան որք յառաջագոյն խրատեալքն էին, և 'ի լուր ժողովելոցն երկ-

բորբոքեալ զամենայն բանս Լիտաւիկեայ՝ յաւելուն. « Յաւ-ւագոյնք 'ի հեծելազօրուէն եդուացւոց, որպէս զաշնաւորք ընդ Արուերնացիս, կոտորեցան 'ի հռովմայեցւոց. մեք միայն ապրեցաք 'ի կոտորածէն՝ թագուցեալք 'ի խուռն ամբոխի զօրաց »: Յայնժամ աղաղակ բարձեալ եդուացւոց երդմնեցուցանէին զԼիտաւիկ՝ խորհել 'ի փրկութիւն իւրեանց: Որոց նա. « Եւ զի՞նչ պէտք իցեն խորհելոյ, պարտ է մեզ երթալ 'ի Գերգովիա, միաբանել ընդ Արուերնացիս: Ո՞րք 'ի լուր այդքանոյ ոճիր եղեռնագործութեան հռովմայեցւոց երկբայեսցի բնաւ չդիմելոյ նոցա և 'ի վերայ մեր՝ կոտորել զմեզ: Հապա, եթէ իցէ 'ի մեզ տակաւին խուն մի ոգի արութեան՝ խնդրեսցուք զվրէժ տարապարտ կոտորածին՝ կորստեամբ անօրէն ելուզակացդ »: Ասաց և ակնարկէր 'ի հռովմայեցիս, որք 'ի պաշտպանութիւն նորա յուսացեալ՝ երթային ընդ նոսա: Եւ անդէն եհար յափշտակեաց աւար բազում ցորենոյ և պարենից, և խժաբար խոշտանգանօք սպանեալ զհռովմայեցիս, գուժկանս առ էդուացիս 'ի քաղաքն արձակեաց, ստայօդեալ զկոտորած այրուձիոյն առ 'ի գրգռել զնոսա. և յորդորէր նովին չափով ըզվրէժ անօրէնութեանն խնդրել:

ԼԹ. Եպորեդորիգս էդուացի՝ պատանի մեծազգի, հըզզօր 'ի քաղաքի իւրում, և Վիրիդոմար հաւասար նմին հասակաւ և դեզով՝ այլ ոչ և տոհմիւ, զոր ընծայութեամբ Դիւիտիակեայ վերածեալ էր Կեսարու 'ի նուաստութենէ 'ի բարձ մեծի աւագութեան, սոքա երկոքին կոչեցեալ էին յանուանէ 'ի թիւ հեծելազնդին, զոր տարաւ ընդ իւր Կեսար: Սոցա վէճք էին ընդ միմեանս զաւագութենէ, և 'ի կռուի անդ գերագահ իշխանութեան՝ միոյն զԿոնուիկտոլիտեայ կալեալ զկողմն, և միւսոյն զԿոտոնի՝ վերամարտիկ լեալ էին յամենայն զօրութենէ: Ի սոցանէ իրավէկ լեալ Եպորեդորիկեայ գաղտնեաց Լիտաւիկեայ՝ զհասարակ գիշերաւ գուշակ եղև Կեսարու, և աղաչեաց զնա մի թողուլ՝ զի հրապուրանօք նենգամիտ երիտասարդացն կասեսցի քաղաքն 'ի բարեկամութենէ հռոմէական ժողովրդեան, և ըզ-

գոյշ կալ յառաջինկայ վտանգէն՝ եթէ բիւր մի եւս մարտկաց յաւելցի 'ի թշնամիս. զի երիտասարդացն այնոցիկ կեանք պատուականք են յոյժ իւրեանցայոցն, և ոչ առ քաղաքացիս արհամարհք:

Խ. Զայս ամենայն լուեալ Կեսարու, անկաւ 'ի տագնապ մեծ. քանզի խնամք մեծ էին նորա 'ի վերայ քաղաքին Եդուացւոց. և առանց ինչ ընդ բանս ածելոյ՝ ձայն ետ եհան 'ի կայից իւրեանց լեգէոնս չորս մեկնակազէնս, և զայրուձին առ հասարակ: Չեղև իսկ նմա պարապ 'ի շաաւղ տագնապին ամփոփելոյ զճամբարն, զի երագութեան պէտք էին առ 'ի յաջողել. և եթող անդ փոխանակ իւր զԿ. Փաբիոս երկոքումբք լեգէոնօք 'ի պահպանութիւն բանակին: Հրաման տուեալ էր ձերբակալ առնել զեղբարս Լիտաւիկեայ, այլ նոքա սակաւիկ մի յառաջ փախուցեալ էին առ թշնամիս: Յայնժամ քաջալերեաց զզօրականսն մի 'ի կարեւոր հարկին վեհերել յաշխատութենէ ճանապարհին. և 'ի խրախուսել նոցա ամենեցուն՝ խաղաց գնաց քսան և հինգ հազար քայլ. և տեսեալ զճամբար Եդուացւոց՝ արձակեաց զհեծելազունդն առնուլ զառաջս նոցա, և չթողուլ գալ յառաջ. արգելեալ մի ումեք զոք սպանանել: Եւ Եպորեդորիկեայ և Վիրիդոմարոսի, որք ընդ կոտորեալսն համարէին, հրաման ետ ձեմ առնուլ ընդ ատզմն հեծելոց, և ձայնել առ ազգակիցս իւրեանց: Ի տեսանել զնոսա Եդուացւոց՝ ծանուցեալ զնենգ խաբէութեան Լիտաւիկեայ, առ կարկառեալ, անձնատուր զէնընկէց լեալ, պաղատէին շնորհել զկեանս իւրեանց:

ԽԱ. Հրեշտակս անդէն արձակեաց Կեսար 'ի քաղաք անդր Եդուացւոց՝ յայտ առնել, զի որք ըստ օրինաց պատերազմի մահապարտք էին՝ շնորհիւ իւրով գտանէին ապրեալ: Եւ ապա ժամս երիս տուեալ զօրացն 'ի հանգիստ գիշերոյ, յուզի անկաւ բանակաւն 'ի Գերգովիա. և ահա զմիջոցաւ ճանապարհին հասին հեծեալք 'ի Փաբիոսէ զեկուցանել նմա զհասեալ վտանգն, և ասեն. «Բանակն ողջոյն տագնապեալ նեղի 'ի խուռն բազմութենէ թշնամեաց.

այլք զայլս հետ զհետէ տանել յաջորդեն վաստակելոցն անխոնջք. մերքն ամենքեան պարտասեալ են յանդուլ աշխատութենէ՝ կալով ցանգ տանց փոփոխելոյ 'ի պահ մեծատարած բանակին. 'ի տարափոյ նետից և ամենազգի զէնուց յաճախեն վիրաւորք. կազմածք ևեթ զէնընկէցք տան մեզ ժուժկալել կռուոյն: Փաբիոս 'ի գալ Թշնամեաց՝ եխեց փակեաց զմուտս ամենայն, երկու ևեթ թողեալ դրունս. յաւել և տախտակամած ամրութիւն 'ի պատնէշն՝ պատրաստեալ ընդդէմ նոցին յարձակմանց 'ի վաղորդայն »: Զայս ամենայն լուեալ Կեսարու, փութացաւ ճեպով մեծաւ զօրականին՝ և յառաջ քան զծագել արեւու եհաս 'ի բանակն:

ԽԲ. Մինչ այս անցք 'ի Գերգովիա անցանէին, էդուացիք ընդ առնուլ զլուր առաջնոյ պատգամաւորութեան Լիտաւիկեայ՝ առանց պարապոյ զճշմարտութիւն իրացն ստուգելոյ, որպէս այնպիսեացն է սովորութիւն՝ զամենայն լուր վարկպարազի համբաւոյ՝ համարել ճշմարտութիւն անխաբ, կէսք ընչաքաղցութեամբ, այլք 'ի ցասմանէ դըրդեալ, փութացան յաւար և 'ի յափշտակութիւն ընչից, 'ի սպանանել զհռովմայեցիս, 'ի վարել զնոսա 'ի ծառայութիւն: Յաւել վառվառել զկործանումն իրաց Կոնուիկտոլիկոն՝ գրգռելով զամբոխն 'ի զայրոյթ, զի առաւելեալք յոճիր՝ ծանրասցին գալ 'ի զգաստութիւն: Մ. Արիստիոսի հազարապետի զօրաց, որ երթայր առ լեգէոն իւր, տուեալ երդումն՝ հանին զնա 'ի Կաբիլլոն քաղաքէ. նոյնպէս և ընհաստատեալսն անդ 'ի գործ վաճառաշահութեան՝ ստիպեցին ելանել, և ստէպ յուղւոջ 'ի վերայ յարձակեալ՝ կողոպտեցին զնոսա յամենայնէ, և զդիմադարձս շուրջ պատեալ՝ նեղէին անդուլ զտիւ և զգիշեր, և յանկանել բազմաց երկուստէք՝ գրգռէին բազմագոյնս 'ի զէն:

ԽԳ. Յայնմ վայրի եհաս լուր անձնատուր լինելոյ զօրացն ամենեցուն 'ի Կեսար, և ընթացան միահամուռ առ Արիստիոս՝ ցուցանել նմա զի ոչ հասարակաց խորհրդով և 'ի հաւանութենէ էին գործեցեալքն. և խոստացան խնդիր

*տունել զյափշտակութեանց, և զինչս և զստացուածս Լի-
տաւիկեայ և զեղբարց նորա հատանել 'ի գանձ հասարա-
կաց. միանգամայն և պատգամաւորս առ Կեսար յղեցին լի-
նել 'ի չքմեղս: Զայսոսիկ 'ի փրկութիւն իւրանցայոցն հոգ
և խնամ կալեալ, բայց քանզի յոլովագոյնք յոյժ էին գոր-
ծակիցք և հաղորդք յափշտակութեանցն՝ շլացեալք ճոխու-
թեամբ աւարին՝ խորհէին առ ահի պատուհասից 'ի պա-
տերազմ, և հրեշտակութիւն գաղտ արարեալ՝ գրգռել 'ի
նոյն և զայլ քաղաքս: Կեսար թէպէտ և իրազգած ամե-
նայնի, սակայն քաղցրութեամբ՝ որպէս մարթ էր՝ ընկա-
լաւ զպատգամաւորսն, և ասէ. «Ոչ վասն յեղյեղուկ և
խորհրդակործոյս խուժանին չարիս խորհիմ 'ի վերայ քաղա-
քիդ, և ոչ վերջացայց 'ի խնամոց առ էդուացիս»: Այլ զի
մի գուցէ աղմուկ գրգռութեանն ճարակեալ և յայլ քա-
ղաքս Գաղղիոյ՝ պատեալ պաշարիցի ամենուստ, խորհէր
որպէս 'ի բաց մեկնել 'ի Գերգովիոյ և համախմբել վերստին
զզօրս իւր. զի մի որ յերկիւղէ վտարանջութեան էր չուն՝
համարեսցի փախուստ վատութեան:*

ԽԴ. *Եւ 'ի մտախոհն լինել յայս՝ դէպք 'ի բարի պա-
տահեցին նմա. զի 'ի գնալ իւրում 'ի բանակն փոքր 'ի զննե-
մարտացու վաստակոց, ետես անմարդացեալ զբլրակն, որ
աւուրբք յառաջ ծածկեալ էր բովանդակ յամբոխէ թշնա-
մեաց: Եւ զարմացեալ ընդ այն՝ եհարց 'ի փախստէից, ո-
րոց բազմութիւն մեծ յաճախէր առ նա օր ըստ օրէ, ըզ-
պատճառս իրացն. և ամենեցուն նոցա վկայութեամբ ստու-
գեալ գիտաց՝ զոր և 'ի լրտեսաց իւրոց էր լուեալ, զի բլուրն
այն սարահարթ գոգցես էր 'ի գագաթան, այլ անտի մինչև
ցմիւս կողմն քաղաքին նեղ և մացառուտ ճանապարհն, և
երկնչէին յոյժ թշնամիք. զի եթէ հռովմայեցիք, որոց կա-
լեալ էր զմիւս բլուրն՝ ունէին և զայն, ամենուստ դրեթէ
պաշարեալ՝ ոչ ևս մարթ էր նոցա ելանել զխարէ. այսր ա-
ղագաւ Վերկինգետորիգեայ անդր զամենայն զօրութիւն
իւր էր գումարեալ:*

ԽԵ. *Զայս իբրև գիտաց Կեսար՝ 'ի հասարակել գիշե-*

բոյն յղեաց այրուձի մեծ, պատուէր տուեալ նոցա յածիլ աղմկաւ իմն համատափիւռ զվայրօքն։ Եւ ընդ այգն առաւօտուն եհան 'ի բանակէն յոլով դրաստս և ջորիս, և բարձեալ 'ի նոցանէ զհամետս՝ հեծոյց 'ի նոսա զջորեպանս, սաղաւարտ 'ի գլուխ ըստ կերպի հեծելոց կեղծեալ, և հրամայեաց նոցա շուրջ գալ զբլրովքն։ Ցուցեալ ընդ նոսա և սակաւս 'ի հեծելոց առ 'ի բազմագոյն ևս տարածանել առ 'ի ցոյց, և պատուիրեաց նոցա ամենեցուն զնովին վայրօք գալ երկայն շրջանաւ։ Այսոցիկ ամենայնի տեսանատես էր քաղաքն 'ի բացուստ՝ զի 'ի հանդէպ Գերգովիոյ կայր բանակն, այլ վասն հեռաւորութեան չէարէր ստուգիւ 'ի վերայ կալ իրացն։ Արձակեաց Կեսար և զմի 'ի լեգէոնաց 'ի բլուր անդր, պատուէր տուեալ՝ սակաւիկ մի յառաջ խաղալ, և 'ի զնստագոյն ուրեք վայրի ծածկեալ 'ի մացառուտս՝ ըղկայ տանուլ։ Գաղլիացւոց առաւելաւ երկեւղ, և ամենայն զօրութեամբ դիմեցին 'ի պաշտպանութիւն տեղւոյն. յայնժամ Կեսարու տեսեալ ամայի զբանակ նոցա, հրաման ետ զօրականին ծածկել զձև զինուորական և զդրօշս պատերազմի, և այնպէս առ սակաւ սակաւ անցոյց զնոսա 'ի մեծէ բանակէն 'ի փոքր, անտես 'ի քաղաքէ անտի. և տեղակալացն իւրոց՝ հրամանատարաց լեգէոնացն՝ ցուցեալ որ ինչ խորհէր, պատուիրեաց նոցա ամենայնիւ զգուշանալ զօրականին, զի մի բուռն եռանդեամբ պատերազմի կամ ըղձիւք աւարի՝ յախուռն յարձակեսցին, և ասէ. «Ի ձախողակ տեղւոջ կամք, չմարթէ մեզ յաղթել այլազգ, բայց արագ արագ 'ի վար արկեալ զպատեհ»։ Այսպէս պատրաստեալ զամենայն, ետ փող հարկանել 'ի պատերազմ, և զոյգ նմին խաղացոյց զէգուացիս յաջմէ ընդ այլ ճանապարհ 'ի վերելս։

ԽԶ. Եւ ճանապարհն վերելից 'ի ստորոտէ բլրոյն մինչև ցպարիսպս քաղաքին՝ դէպ ուղիղ առանց պտուտից՝ էր հազար երկերիւր քայլ. այլ նոյնչափ ևս երկայնէր 'ի շըրջանս՝ որ առ 'ի դիւրել զվերելն գործէին։ Գաղլիացւոց զկողիւք բլրոյն 'ի կէս ճանապարհին որմ 'ի մեծամեծ քա-

րանց ըստ ներելոյ վայրացն շուրջ ածեալ էր վեց ոտնաչափ բարձրութեամբ, առ 'ի խորտակել զբռնութիւն յարձակման մերոցն. և զատորին կողմն բլրոյն թափուր թողեալ ամենևին, զվերինն ծածկեալ էին բովանդակ խիտ առ խիտ պատնիչօք: Ի տալ նշանին՝ իսկ և իսկ հորդան եւ զօրականն մինչև յորմ անդր, և վազեալ զնովաւ՝ կալաւ պատնէշս երիս, այնու երագութեամբ՝ զի Տեւտոմատ արքայ Նետոբրիգայ յեղակարծում պաշարեալ 'ի խորանին, ուր հանգչէր զմիջաւուրբ, կիսամերկ և ձիով խոյսելով մազապուր 'ի ձեռաց աւարառուաց զերծաւ:

Խէ. Կեսարու, ըղձիցն իւրոց պատահեալ, ետ հարկանել փող 'ի նահանջ. տասներորդի և եթ լեգէոնի՝ որում ինքն առաջնորդէր՝ հրամայեալ զկայ առնուլ: Բայց այլք 'ի լեգէոնաց առ հեռաւորութեան վայրաց ոչ լուան զձայն փողոյն. և թէպէտ հազարապետք զօրաց և տեղակալք ըստ հրահանգացն տուելոց 'ի Կեսարէ ընկրկէին զնոսա, նոքա խրախուսեալ 'ի յոյս առձեռն պատրաստ յաղթութեան, և վասն 'ի փախուստ դառնալոյ թշնամեաց, և յիշատակաւ առաջնոց յաղթութեանցն՝ ոչ ինչ դժուարին և անպարտելի առաջի զօրութեան իւրեանց համարեալ, ոչ ըղկայ առին 'ի հետամուտ լինելոյ փախստէից, բայց մօտ 'ի պարիսպ անդր առ դուրս քաղաքին: Յայնժամ քաղաքն ողջոյն հնչեաց 'ի գոչիւն աղաղակի, և բացակայից զարհուրեալ 'ի յեղակարծ աղաղակէն՝ կարծելով զթշնամին 'ի ներքս 'ի քաղաքն մտեալ, արկին զանձինս 'ի դուրս. և կանանին 'ի պատուարաց անտի ընկենուին առ հռովմայեցիս ձորձ և արծաթ, և հոլանի լանջօք կարկառեալ 'ի վերուստ՝ պաղատէին բազկատարած առ նոսա խնայել 'ի կեանս իւրեանց, և մի՛ որպէս յԱւարիկոն՝ կոտորել անխնայ զկանայս և զմանկտի. ոմանք ևս 'ի նոցանէ ձեռամբացի կախեալ 'ի պատուարաց անտի՝ անձնատուր եղեն զօրականին: Աւանդեն Լ. Փաբիոսի, որ հարիւրապետ էր յութերորդի լեգէոնին, ասացեալ 'ի նմին աւուր առ իւրսն, զի ակնկառոյց 'ի պարգևսն յԱւարիկոն ընկալեալս, ոչ ումեք թողուր կան-

խել քան զինքն 'ի վերելս պարսպին, և վերամբարձ 'ի ձեռս երկից ոմանց 'ի վաշտէ իւրմէ՝ եղ 'ի պարիսպն, և անտի ձգեաց և գնաց առ ինքն 'ի վեր՝ կալեալ զձեռանէ նոցա մի ըստ միոջէ ։

ԽԸ. Յայնմ վայրի երթելոցն 'ի միւս կողմն քաղաքին ըստ առաջելուսն յօգնականութիւն, խռովեալ ընդ լուր աղաղակին և 'ի գուժկանաց հետ ընդ հետ հասելոց առման քաղաքին 'ի հռովմայեցւոց, յղեալ յառաջոյ զհեծելազօրսն, և զհետ նոցա աճապարեցին և ինքեանք շտապաւ տագնապաւ ։ Եւ հասելոցն հետ զհետէ արձանացեալ առ պարըսպաւ, յաւելուին զթիւ մարտակցաց. և 'ի յորդել բազմութեան նոցա, կանանին՝ որ սակաւիկ մի յառաջ 'ի պարսպէ անտի ձեռս առ հռովմայեցիս կարկառէին, սկսան յայնժամ առ իւրեանցն կողկողել, և հերարձակք, ըստ օրինի գաղղիացւոց, զմանկունս իւրեանց ածել 'ի տեսիլ ։ Բայց անհանգէտ էր անդ մարտն. հռովմայեցիք 'ի ձախաղակ վայրի, նուազագոյնք թուով և պարտասեալ 'ի ձիգ արշաւանաց՝ դժուարաւ յոյժ թէ կարէին 'ի մեծատարած մարտին տոկալ ընդդէմ անխոնջ զօրականին ։

ԽԹ. Կեսարու անյաջող զվայրն տեսեալ, և զյաճախել տակաւ թշնամեաց, հոգացեալ զիւրոցն՝ առաքեաց առ Տ. Սեքստիոս տեղակալ, զոր 'ի փոքու բանակին թողեալ էր 'ի պաշտպանութիւն, հանել վաղվաղակի զգումարտակըս յիւրաքանչիւր պատնիշաց և ածել կացուցանել 'ի ստորոտ բլրոյն յաջմէ թշնամեաց, որպէս զի 'ի հալածել նոցա զմերսն՝ մի իշխեսցեն հետամուտ լինել համարձակ ։ Իսկ ինքն լեգէոնաւն հանդերձ սակաւ մի յառաջ անցեալ, կայր դէտակն ունէր ելից պատերազմին ։

Ծ. Մինչդեռ երկուստեք մօտ առ մօտ ընդ իրեարս զայրագին կռուէին, անտի տեղեաւն և յոգնախուռն բազմութեամբ խրախուսեալ, աստի 'ի քաջութիւն իւրեանց ապաստանեալ, և ահա երևեցան յանպատսպար կուսէ մերոցն էդուացիք՝ առաքեալք 'ի Կեսարէ ընդ այլ վերելս յաջմէ, ձեռն տալ նոցա ։ Այլ քանզի էդուացւոցն զէնք

համանման գալլիացւոցն էին, առ մեծ 'ի մերսն արկին, և թեպէտ աջոյ ուս նոցա, որպէս բաշխեալ էր նշան՝ էր հոլանի առ 'ի ճանաչելոյ զնոսա, այլ թուէր մերոցն՝ վարեալ նովաւ թշնամեաց առ 'ի նենգ։ Յայնմ վայրի Լ. Փաբիոս հարիւրապետ և որ ընդ նմա 'ի պարիսպ անդր ելեալ էին, պաշարեալ 'ի թշնամեաց և փողոտեալ՝ ընկեցան 'ի վայր։ Յայնժամ և Պետրէոս հարիւրապետ 'ի նմին լեգէոնէ՝ 'ի բանաբարել զդրունս քաղաքին, նկուն եղև յամբոխէ թըշնամեաց, և վիրաւեց անյոյս 'ի կենաց՝ առ զինուորակիցս իւր որ զհետն երթային, ասէ. « Զի և չէ ինձ մարթ ձեօք հանդերձ ապրել 'ի մահուանէ. պարտ է ինձ գէթ զձեզ ապրեցուցանել, զորս փառասիրութեամբ զհետ իմ առեալ արկի յայս վտանգ »։ Եւ զոյգ ընդ բանին դիմեալ յամբոխ անդր թշնամեաց, զերկուս 'ի նոցանէ արկ տապաստ և զայլս վարեալ վայրիկ մի 'ի դրանց անտի 'ի բաց, ասէ առ մարտակիցս իւր. « Մի՛ վայրապար աշխատ լինիք 'ի փրկութիւն իմ, զի ահա սպառի յիս արիւն և զօրութիւն. տեղի տուք սատի մինչդեռ կարէք, դարձարուք 'ի լեգէոն ձեր »։ Սակաւիկ մի ևս յնուհետև մարտուցեալ՝ անկաւ անդէն, զիւրսն ապրեցուցեալ։

ԾԱ. Մերքն հարուածեալ ամենուստ՝ տեղի ետուն, կորուսեալ հարիւրապետս քառասուն և վեց։ Այլ զբռնութիւն հետամտից դալլիացւոց խորտակեաց լեգէոնն տասներորդ, որ յօգնութիւն մերոցն էր եկեալ. և զի ոչ 'ի քաջադէպ տեղւոջ կայր, պատսպարան եղեն նմա գումարտակք երեքտասաներորդի լեգէոնին, որք ընդ Սեքստիոսի տեղակալի 'ի փոքր բանակէն զօրահատոյցք՝ 'ի բարձրագոյն տեղւոջ կային։ Այն ինչ լեգէոնք ոտն 'ի դիւրի եդին, զկայ առեալ պարզեցին դրօշս ընդդէմ թշնամեաց, բայց Վերկինգետորիքս յետս կոչեցեալ զիւրսն 'ի ստորէ բլրոյն, եմոյծ 'ի պատնէշս։

ԾԲ. Ի վաղիւ անդր Կեսարու ժողով կոչեցեալ, յանդիմանեաց զյանձնապաստանութիւն և զյանդգնութիւն զօրականին, որ անլուր եղեալ փողանշանին և հրամանի հա-

րիւրապետացն և տեղակալաց 'ի նահանջ՝ ինքնահրաման կամեցան յարձակել 'ի գործ. եցոյց նոցա քանի՞ զեան գործէ տեղի ձախողակ, և զիա՛րդ ինքն յԱւարիկոն՝ մինչ թշնամին անառաջնորդ և առանց այրուձիոյ կայր, եթող զստոյգ յաղթութիւն, զի մի՛ և փոքու իւիք վտանգեսցի մարտն յանաջող տեղւոջ և յաւել. « Զարմացեալ եմ ընդ արիական քաջութիւն ձեր, զոր ոչ ամրութիւն պատնիշաց, ոչ բարձրութիւն լերին և ոչ պարիսպք քաղաքին կարացին ընկրկել. այլ պարսաւեմ զապերասան յանդգնութիւնդ, որով քան զզօրապետս ձեր համարեցայք իմաստնանալ՝ յանձնապաստանք 'ի յաղթութիւն և 'ի յաջող ելս իրաց. այլ ինձ ոչինչ ընդհատ քան զարիական քաջութիւն զօրականին՝ ցանկալի է հլութիւն նորա և զգուշութիւն »:

ԾԳ. Զայսոսիկ հրապարակախօս եղեալ՝ 'ի կնիք բանիցն յաւել Կեսար սրտապնդել զզօրականն, մի՛ լքանել պարտութեամբն, և մի՛ զարկածս ձախողակ տեղւոյն՝ ընծայել քաջութեան թշնամւոյն: Եւ ապա զառաջին խորհուրդ իւր կալեալ 'ի չու, եհան զզօրսն 'ի բանակէն, ճակատեցոյց 'ի դիպան տեղւոջ: Յայնժամ և Վերկինգետորիգեայ իջեալ 'ի դիւր, բախեցան ընդ միմեանս 'ի նախաձեան թեթեւ հեծելամարտ, և փոքու իւիք յաջողեալ անդ Կեսարու, եմոյծ զզօրսն վերստին 'ի բանակատեղ: Զնոյն և յերկրորդումն աւուր արարեալ՝ բաւական վարկաւ 'ի կորանս գալլիացւոց և 'ի խրախոյս իւրոցն, և խաղացոյց զբանակն առ Էդուացիս: Զեղէն նմա թշնամիք հետամուտ, և յերիս աւուրս եհաս յափն Էլաւեր գետոյ, նորոգեաց ըզկամուրջն, և անցոյց զզօրսն յայնկոյս:

ԾԴ. Անդ կոչեցաւ Կեսար 'ի Վիրիդոմարեայ և յԵպորոդորէ, և լուաւ 'ի նոցանէ զերթ Լիտաւիկեայ հեծելագընդաւն ողջոյն առ Էդուեանս՝ գրգռել զնոսա, ոյր աղագաւ հարկ է և մեզ, առէին, յառաջել անդ և ունել հաւատարիմ զքաղաքն: Բայց Կեսարու թէպէտ և 'ի բազում դէպս զփորձ առեալ նենգութեան Էդուացւոց, ոչ անգիտանայր զի երթ նոցա երագեսցէ զվտարանջութիւն քաղաքին, սա-

կայն ոչ 'ի դէպ վարկաւ արգելուլ զնոսա, զի մի՛ թուեսցի բռնանալ կամ տալ կասկած երկիւղի 'ի նոցանէ։ Այլ եցոյց կարճ 'ի կարճոյ 'ի մեկնելն նոցա՝ որչափ ինչ բարիս արարեալ էր էդուացւոց և յորմէ նուաստութենէ, մինչ կայինն արգելականք 'ի քաղաքի, զրկեալք յանդաստանաց, նուաղեալք յամենայն զօրութենէ, ծանրացեալք ընդ հարկօք, կորացեալք ամօթով 'ի տալ պատանդս, ամբարձ զնոսա ոչ միայն յառաջին նսեհ և 'ի մեծութիւն իւրեանց, այլ գերագոյն ևս քան յամենայն ժամանակի պերճացոյց զնոսա իշխանութեամբ. զայս ամենայն յուշ արարեալ՝ արձակեաց զնոսա յիւրմէ։

ԾԵ. Էր առ ափամբք Լիգերեայ 'ի բարեդէպ վայրի Նովիոդոն քաղաք էդուացւոց, ուր Կեսարու 'ի պահ եդեալ էր զամենայն պատանդս գաղղիացւոց և զցորեան և զգանձ հասարակաց, և զմեծ մասն աղխից իւրոց և զզօրուն. անդր յղեալ էր և ձիան բազում՝ գնոց առեալ 'ի Սպանիոյ և յԻտալիոյ 'ի պէտս պատերազմին։ Եպորեդորի և Վիրիդոմարի եկեալ 'ի քաղաք անդր և հասու եղեալ իրացըն, իբրև գիտացին զընդունելութիւն Լիտաւիկկեայ յէդուացւոց անտի 'ի Բիբրակտ քաղաք իւրեանց մեծազօր, և զգալուստ Կոնուիկտոլիտեայ իշխանապետի առ նա մեծաւ բազմութեամբ աւագանւոյն, և զհրեշտակութիւնն առ Վերկինգետորիքս յղեալ յայտնապէս 'ի դաշն նիզակակցութեան, ոչ ևս յամել կամեցան և կորուսանել զբարեպատեհ յաջողութիւնն. վասն որոյ սրակոտ արարեալ զպահապանս Նովիոդոնի, և զեկաւորս ևս անդր 'ի վաճառաշահ և յուղևորութիւն, բաժանեցին յիւրեանս զարծաթն և զձիան. զպատանդս քաղաքաց ետուն տանել 'ի Բիբրակտ առ աւագանին, և զի մի՛ լիցի 'ի պէտս հռովմայեցւոց քաղաքն, զոր չկարէին պահել, հրկէզ արարին զայն. և զցորեան, որչափ ինչ մարթ էր՝ բարձեալ փութապէս 'ի նաւս, զմնացեալն ամացին 'ի ջուր և 'ի հուր։ Եւ զօրաժողով եղեալ 'ի սահմանակցաց՝ կարգեցին պահս, կացուցին պահանորդս ընդ գետեզերս Լիգերեայ, և սփռե-

ցին հեծեալս ամենայն ուրեք՝ առ որսանել 'ի հաց
ցիս, և արգելուլ 'ի նոցանէ զպաշար, զի [illegible]՝
պնեալքն մեկնել յաշխարհէն, և գետք 'ի ձմեռ պատ
յուսոյ նոցա, զի 'ի հալել ձեանց, յորդեր Լիգեր, և
հուն ուրեք անցից։

ԾԶ. Զայս ամենայն գիտացեալ Կեսարու, խորհէր
արդեօք պարտ էր վտանգել վասն կամուրջս արկանելոյ
'ի տալ պատերազմ՝ մինչև յաճախեալ ամբոխէ թշնամեաց
Քանզի փոխել 'ի խորհրդոց իւրոց և ընկրկել յետս 'ի
վինկիա՝ ոչ միայն բազմավտանգ համարէր և յամօթ
կորանս, այլ զի և լեառն Կեբեննա և դժուարութ
ճանապարհաց, կրճիմն ընդդէմ կային։ Նա առաւել
կալի ևս էր նմա երթալ զուգաւորել ընդ Լաբիենոս և ը
լեգէոնս՝ զորս յղեալ էր ընդ նմա։ Վասն որոյ ճեպընթ
զախւ և զգիշեր, յեղակարծումն ամենեցուն եհաս 'ի Լիգ
Եւ յանցս հեծելոց, որ ինչ ուրեք հուն ընդ գետն 'ի կ
րևոր հարկին մարթ էր, գաեալ՝ ուր զօրականն ուսով չ
և բազկօք 'ի վերոյ ջրոյց կարէր տանել զզէնս, կարգեա
զնոսա ընդդէմ հոսանաց, և 'ի խռովել կալ թշնամեաց ա
դէն 'ի սկզբան ընդ տեսիլն, անցոյց յայնկոյս զզօրսն անվ
տանգ։ Եւ եգիտ անդ ցորեան առատ յարտորայս, և բազ
մութիւն հօտից խաշանց, որովք լիացուցեալ զզօրականն,
դէմ եդ 'ի Սեննոնս։

ԾԷ. Մինչդեռ յայսոսիկ պարապեալ կայր Կեսար,
Լաբիենոսի թողեալ յԱգենդիկոն զնորընծայ զօրականն
եկեալ 'ի վերջէ՝ 'ի պահպանութիւն աղխից, ինքն չորիւք
լեգէոնօք խաղաց գնաց 'ի Լուտետիա քաղաք Պարիսացւոց,
կառուցեալ 'ի կղզւոջ ուրեք գետոյն Սեկուանայ։ Ազդ եղև
թշնամեաց գալուստ նորա, և եկին ժողովեցան 'ի շրջակայ
սահմանաց զօրք բազմամբոխ ընդ զօրավարութեամբ Կա.
մուլոգենի Աւլերկացւոյ, որ թէպէտ ... ուորբք,
այլ զի բազմահմուտ էր յիրս պատ ... յայն
աւագութիւն։ Եւ գիտելով նորա զ ... այքն
շուրջանակի և անգնալի՝ թացեալ ... ոյ,
զկայ եառ անդ, արգելուլ անտի զ

ԾԸ. Լաբիենոս հնարէր զառաջինն ողորահիւս պա-տնգակապ կազմածովք և վանդակեալ հողակուտիւ լիրւրկանել 'ի ճահիճն, և ռահ գործել. բայց տեսեալ ապա զդժուարութիւն իրացն, լուեալ յերրորդումն պահու գիշերոյն ել 'ի բանակէն՝ և ընդ ճանապարհ ընդ որ եկեալն էր՝ եհաս 'ի Մելոդոն քաղաք Սենոնաց՝ 'ի կղզւոջ գետոյն Սեկուանայ, ուր և զԼուտետիա 'ի վեր այսր ասացի: Անդ գտեալ նաւակս իբր յիսուն, և 'ի միմեանս յար կցեալ փու-թանակի, ելից զայնոսիկ զօրօք. և մինչդեռ քաղաքացիք ընդ նորատեսիլ իրսն ապշեալ կային, և յոլովագոյնք ևս 'ի նոցանէ երթեալ էին 'ի պատերազմ, առանց իրիք դիմա-մարտութեան կալաւ զքաղաքն: Եւ նորոգեալ զկամուրջն՝ զոր աւուրբք յառաջ հատեալ էին թշնամիք, անցոյց ընդ այն զզօրսն, և ընդ հոսանս գետոյն խաղայր 'ի Լուտետիա: Իրազեկ եղեալ թշնամիք 'ի փախստէից մելոդոնացւոց՝ հրաման ետուն հրդեհել զԼուտետիա, և հատանել զկա-մուրջն. և ինքեանք անցեալ ընդ ճախճախուտն՝ եկին բա-նակեցան յափունս Սեկուանայ առաջի քաղաքին հան-դէպ Լաբիենոսի:

ԾԹ. Լու եղև յայնժամ՝ թողեալ Կեսարու զպաշա-րումն Գերգովիոյ, և համբաւէր վտարանջել Եդուեանց, և յաջողել իրաց գաղղիացւոց. և սոքա հաստատէին զհամ-բաւն՝ որպէս թէ Կեսարու անանց գտեալ զճանապարհս գնալոյ 'ի Լիգեր, և առ 'ի չգոյէ պարենից դարձ 'ի Պրովին-կիա արարեալ: Բելովակք ևս, որք յառաջնմէ իսկ դայթ 'ի դայթի կային 'ի հաւատարմութեան, 'ի լուր վտարանջելոյ Եդուեանց զօրաժողով լինէին յայտնապէս 'ի պատերազմ: Ի յեղափոխել այսպէս իրացն, 'ի միտ եառ Լաբիենոս՝ զի այլազգ յոյժ քան զխորհեցեալն յառաջագոյն պարտ էր նմա ունել խորհուրդ. և թողեալ զաշխարհակալութիւն և զհետամուտ լինել թշնամեաց, հնարէր ածել զզօրսն անվտանգ յԱգենդիկոն: Քանզի աստի Բելովակք՝ անուա-նիք քաջութեամբ 'ի Գաղղիա, և անտի Կամուլոգենն կազմ պատրաստ կային զօրօք, և գետ լայն անջրպետէր ընդ

ցեն հեծեալս ամենայն ուրեք՝ ահ արկանել 'ի Հռովմայե-ցիս, և արգելուլ 'ի նոցանէ զպաշար, զի սովալլուկ՝ ստի-պեսցին մեկնել յաշխարհէն, և դէպք 'ի ձախ պատահեսցեն յուսոյ նոցա, զի 'ի հալել ձեանց, յորդէր Լիգեր, և չտայր հուն ուրեք անցից:

ՄԶ. Զայս ամենայն գիտացեալ Կեսարու, խորհէր թէ արգելօք պնդու էր վտանգել վասն կամուրջս արկանելոյ, և 'ի տալ պատերազմ՝ մինչչև յաճախեալ ամբոխի թշնամեաց: Քանզի փոխել 'ի խորհրդոց իւրոց և ընկրկել յետս 'ի Պրո-վինկիա՝ ոչ միայն բազմավտանգ համարէր և յամօթ և 'ի կորանս, այլ զի և լեառնն Կեբեննա և դժուարութիւն ճանապարհաց, կրճիմն ընդդէմ կային: Նա առաւել ցան-կալի եւս էր նմա երթալ գումարել ընդ Լաբիենոսի և ընդ լեգէոնսն՝ զորս յղեալ էր ընդ նմա: Վասն որոյ ճեպընթաց զաւիւ և զգիշեր, յերկարծում ամենեցուն եհաս 'ի Լիգեր: Եւ յանգս հեծելոց, որ ինչ ուրեք հուն ընդ գետն 'ի կա-րևոր հարկին մարթ էր, գտեալ՝ ուր զօրականն ուսով չափ և բազկօք 'ի վերոյ ջուրց կարէր տանել զզէնս, կարգեաց զնոսա ընդդէմ հոսանաց, և 'ի խռովել կալ թշնամեաց ան-դէն 'ի սկզբան ընդ տեսիլն, անցոյց յայնկոյս զզօրսն անվ-տանգ: Եւ եգիտ անդ ցորեան առատ յարտօրայս, և բազ-մութիւն հօտից խաշանց, որովք լիացուցեալ զզօրականն, դէմ եդ 'ի Սենոնս:

ՄԷ. Մինչդեռ յայսոսիկ պարապեալ կայր Կեսար, Լաբիենոսի թողեալ յԱգենդիկոն զնորընտիր զօրականն եկեալ 'ի վերջէ՝ 'ի պահպանութիւն աղխից, ինքն չորիւք լեգէոնօք խաղաց գնաց 'ի Լուտետիա քաղաք Պարիսացւոց, կառուցեալ 'ի կղզւոջ ուրեք գետոյն Սեկուանայ: Ազդ եղե-ւ թշնամեաց գալուստ նորա, և եկին ժողովեցան 'ի շրջակայ սահմանաց զօրք բազմամբոխ ընդ զօրավարութեամբ Կա-մուլոգենի Աւլերկացւոյ, որ թէպէտ և անցեալ զաւուրբք, այլ զի բազմահմուտ էր յիրս պատերազմի՝ կոչեցաւ յայն աւագութիւն: Եւ գիտելով նորա զի ճախճախուտ էր վայրն շուրջանակի և անգնալի՝ թացեալ անդուլ 'ի Սեկուանայ, զկայ էառ անդ, արգելուլ անտի զանցս մերոցն:

ԾԸ. Լաբիենոս հնարէր զառաջինն ողորահիւս պահանգակապ կազմածովք և վանդակեալ հողակուտիւ լիր արկանել 'ի Ճահիճսն, և ռահ գործել. բայց տեսեալ ապա զդժուարութիւն իրացն, լռելեայն յերրորդումն պահու գիշերոյն ել 'ի բանակէն՝ և ընդ Ճանապարհ ընդ որ եկեալն էր՝ եհաս 'ի Մելոդոն քաղաք Սենոնաց՝ 'ի կղզւոջ գետոյն Սեկուանայ, ուր և զԼուտետիա 'ի վեր այսր ասացի: Անդ կալեալ նաւակս իբր յիսուն, և 'ի միմեանսայար կցեալ փութանակի, ելից զայնոսիկ զօրօք. և մինչդեռ քաղաքացիք ընդ նորատեսիլ իրսն ապշեալ կային, և յոլովագոյնք ևս 'ի նոցանէ երթեալ էին 'ի պատերազմ, առանց իրիք դիմամարտութեան կալաւ զքաղաքն: Եւ նորոգեալ զկամուրջս՝ զոր աւուրբք յառաջ հատեալ էին թշնամիք, անցոյց ընդ այն զզօրսն, և ընդ հոսանս գետոյն խաղայր 'ի Լուտետիա: Իրազեկ եղեալ թշնամիք 'ի փախստէից մելոդոնացւոց՝ հրաման ետուն հրդեհել զԼուտետիա, և հատանել զկամուրջս. և ինքեանք անցեալ ընդ Ճախճախուտսն՝ եկին բանակեցան յափունս Սեկուանայ առաջի քաղաքին հանդէպ Լաբիենոսի:

ԾԹ. Լու եղև յայնժամ՝ թողեալ Կեսարու զպաշարումն Գերգովիոյ, և համբաւէր վտարանջել էդուեանց, և յաջողել իրաց գաղղիացւոց. և ոգքս հաստատէին զհամբաւն՝ որպէս թէ Կեսարու անանց գտեալ զՃանապարհս գնալոյ 'ի Լիգեր, և առ 'ի չգոյէ պարենից դարձ 'ի Պրովինկիա արարեալ: Բելովակք ևս, որք յառաջնմէ իսկ գայթ 'ի գայթի կային 'ի հաւատարմութեան, 'ի լուր վտարանջելոյ էդուեանց զօրաժողով լինէին յայտնապէս 'ի պատերազմ: Ի յեղափոխել այսպէս իրացն, 'ի միտ էառ Լաբիենոս՝ զի այլազգ յոյժ քան զխորհեցեալն յառաջագոյն պարտ էր նմա ունել խորհուրդ. և թողեալ զաշխարհակալութիւն և զհետամուտ լինել թշնամեաց, հնարէր ածել զզօրսն անվտանգ յԱգենտիկոն: Քանզի աստի Բելովակք՝ անուանիք քաջութեամբ 'ի Գաղղիա, և անտի Կամուլոգէն կազմ և պատրաստ կային զօրօք, և գետ լայն անջրպետէր ընդ

լեգէոնս իւր և ընդ ամուրն՝ ուր կային ամենայն կազմածք իւրեանց։ Ցայսպիսում յանկարծահաս տագնապի ոչ գոյր նմա այլ ապաստան բայց յանվեհեր քաջութեան։

Կ. Այսր աղագաւ համախմբեալ զզօրսն ընդ երեկս՝ յորդորեաց զնոսա կատարել ամենայն փութով և խնամով զպատուէրս իւր. և զմի մի 'ի Նաւակաց՝ զորս 'ի Մելոդունէ ածեալ էր՝ բաշխեալ 'ի հեծեալս հռովմայեցիս, պատուէր ետ նոցա՝ ընդ անցանել առաջնոյ պահու գիշերոյն իջանել լռելեայն ընդ հոսանս գետոյն չորեք հազար քայլ, և անդ սպասել հասանելոյ իւրոյ։ Եւ զումարտակս հինգ՝ ոչ 'ի քաջաց՝ թողեալ 'ի պահպանութիւն բանակին, այլոցն հնգեցունց այնր լեգէոնի՝ հրաման ետ չու առնել ամենայն աղխիւ 'ի մէջ գիշերի, և մեծաւ աղաղակաւ խաղալ 'ի վեր կոյս գետոյն։ Խնդրեաց եւս և նաւակնեարս. և զնոսա եւս արձակեաց ընդ նոյն կողմն, նաւել ուժգին շառաչմամբ թիակաց. և ինքն վայրիկ մի յետոյ մեկնեալ երիւք լեգէո-նօք լուռ լուռ դիմեաց ուր նաւացն հրամայեալ էր գնալ։

ԿԱ. Իբրև եհաս անդր, գէտք որ 'ի թշնամեաց ընդ ամենայն կողմն գետոյն կարգեալ կային, խուճապեալք 'ի յանկարծադէպ բուռն ամպրոպաց, հարան յեղակարծ 'ի մերոցս, և հետևակազօրն և այրուձին օգնեալք 'ի հռովմայեցի հեծելոց՝ որոց յանձն էր գործն, անցին փութանակի ընդ գետն։ Ի վաղիւ անդր զնովին ժամաւ ազդ եղև թշնամեաց՝ զի աղմուկ ինչ անսովոր լեալ էր 'ի բանակի հռովմայեցւոց, և զի գունդ մեծ նաւէր ընդ ջուր 'ի վեր գետոյն, որոյ շառաչիւն թիակաց լսելի լինէր յայնմ կուսէ, և զի խումբ ինչ 'ի խոնարհ չու առնէին զօրք 'ի նաւակս։ Յայսցանէ առին նոքա գուշակել՝ զի 'ի լուր վտարանջութեան էդուացւոց զահի հարեալ զօրացն ամենեցուն, ընդ երիս դէմս աճապարէին 'ի փախուստ. վասն որոյ բաժանեցին և ինքեանք զզօրս իւրեանց յերիս գունդս. զմին 'ի նոցանէ եդին 'ի պահպանութիւն բանակի իւրեանց ընդդէմ մեր. միւս այլ սակաւաձեռն 'ի Մետիոսեդոն կոյս արձակեցին՝ ուղղել ըստ նաւացն զչու իւրեանց, և զմնացեալն ածին ընդդէմ Լաբիենեայ։

ԿԲ. Ի ծագել առաւօտու յորժամ մերքն ամենեքեան անցեալ էին յայնկոյս, ծայր զօրուն Թշնամեաց ակսաւ երեւել. Լաբիենոս առ 'ի խրախուսել զիւրսն՝ յուշ արարեալ նոցա զառաջին արութիւնս իւրեանց և զքաջայաղթ Ճակատամարտս, յաւել՝ զի նոյն ինքն Կեսար, որոյ առաջնորդութեամբ 'ի բազում դէպս գեր 'ի վերոյ գտեալ էին Թշնամեաց, առընթեր կայր նոցա. և ետ փող հարկանել պատերազմի: Յառաջնում անդ յարձակման աջոյ Թեւին՝ ուր էր լեգէոնն եօթներորդ, վանեցան Թշնամիք Թիկնադարձոյցք 'ի փախուստ. իսկ 'ի ձախումն՝ յորում էր լեգէոնն երկոտասաներորդ, Թէպէտև առաջին դասակարգք Թշնամեաց անկան տիգահար, սակայն ուժգին ևս դիմակալէին այլք, և ինքն ևս զօրավարն Կամուլոգէն անդ կայր և խրախուսէր զնոսա: Մինչդեռ մարտն երկուստեք կայր անպարտելի, իրազեկ լեալ հազարապետաց եօթներորդի լեգէոնին որ ինչ 'ի ձախում Թեւի անցք անցանէին՝ անդր փութացան լեգէոնաւն իւրեանց, և պատեալ զկողիւք Թշնամեաց՝ ամբարձին գրոհս 'ի վեր. այլ և ոչ յայնժամ գտաւ ոք դասալիք. մինչև պաշարեալ 'ի մերոցս՝ անկան ամենեքեան առ հասարակ. բախտակից նոցին գտաւ և Կամուլոգէն. բայց որք ընդդէմ բանակին Լաբիենոսի կարգեալ կային պահանորդք՝ լուեալ զխառնուրդ պատերազմին, Ճեպեցին յօգնականութիւն իւրեանցայոցն, և զկայ առին 'ի բլրի ուրեք. այլ ոչ կարացեալ ժուժկալել ընդդէմ բուռն յարձակման յաղթականացն մերոց, յաւելան և նոքա 'ի փախստեայս. և որք միանգամ ոչ կարացին գտանել իւրեանց ապաւէն յանտառս կամ 'ի լերինս, հարան առ հասարակ 'ի մերոցն: Յետ այսորիկ Լաբիենոս չու արար յԱգենդիկոն, ուր կային 'ի պահ աղխք բովանդակ զօրուն. և անտի բանակաւն ողջոյն եկն եհաս առ Կեսար:

ԿԳ. Վտարանջութեամբ էդուացւոց երԹայր և ծաւալէր մարտն. հրեշտակք 'ի նոցանէ ընդ ամենայն կողմանս արձակեցան գուն գործել ամենայն հնարիւք, և զօրութեամբ բարեկամութեան և իշխանութեան և արծաթոյ

դրդուել զայլ ևս քաղաքս. և կալեալ զպատանդսն՝ զոր Կեսարու յաւանդի եդեալ էր առ նոսա, ահիւ սպառնալեաց պատուհասի նոցա՝ հնարէին ածել զերկմիտս 'ի հաւանութիւն: Էդուացիք առաքեցին առ Վերկինգետորիգ գալ առ ինքեանս 'ի խորհուրդ առաջիկայ պատերազմին. և 'ի գալն նորա՝ պահանջէին կալ ինքեանց նախիշխան: Ի լինել հակառակութեան թողան իրքն յաշխարհաժողով գալլիացւոց 'ի Բիբրակտ, ուր եկին ժողովեցան յամենայն կողմանց, և սահմանեցաւ անդ առաւելութեամբ քուէից՝ Վերկինգետորիգեայ միայնոյ կալ 'ի վերայ ամենեցուն ըսպարապետ: Ոչ գոյան 'ի ժողովի անդ հռեմացիք, և ոչ Լինգոնք և Տրեւիրք. երկոցունց առաջնոց անդրժելի կալեալ զբարեկամութիւն առ հռովմայեցիս. իսկ Տրեւիրք, քանզի բացականք էին յոյժ և նուաճեալք 'ի գերմանացւոց՝ անհաղորդք պատերազմին՝ ոչ յայսկոյս և ոչ յայն եղեն ձեռնտու: Ծանր յոյժ թուեցաւ էդուացւոց մերժումն 'ի գերագոյն իշխանութենէ. բողոք ունէին վասն յեղափոխելոյ բաղդի իւրեանց, և ցանկային իմն դիմել առ ներողամտութիւն Կեսարու. այլ ձեռնամուխ լեալ միանգամ 'ի պատերազմն, ոչ իշխեցին 'ի բաց կալ 'ի խորհրդոց հասարակաց: Իսկ Եպորոդորիքս և Վիրիդոմար, երիտասարդք մեծամեծաց ակնկալուք, դժկամակ էին հպատակել Վերկինգետորիգեայ:

ԿԴ. Բայց նա հրամայեաց և այլոց քաղաքաց տալ պատանդս 'ի ժամադրեալ աւուր. և տուեալ ածել առ ինքն վաղվաղակի զհեծեալս առ հասարակ հնգետասան հազար, յաւել. «Շատ է ինձ հետևակազօրն իմ. չեն ինձ կամք փորձ փորձել բախտի և տալ ճակատամարտ. ոչ ինչ դժուարին է մեզ բազմաձեռն այրուձիովս արգելուլ հռովմայեցւոց զխար և զցորեան. եթէ միայն արիաջիք յապարտ վարել զհունձս ձեր, հրկէզ առնել զամենայն շինուածս, և տուժիւք ձերովք ստանալ զազատութիւն և զիշխանութիւն անկորուստ»: Յետ այսորիկ հրաման ետ էդուեանց և սեգուսացւոց՝ սահմանորդաց Պրովինկիոյ տալ

բիւր մի հետեւակաց. յորս յաւելեալ հեծեալս ութ հարիւր՝ յղեաց զնոսա ընդ զօրավարութեամբ եղբօր Եպորեդորիգեայ 'ի վերայ Ալոբրոգաց 'ի պատերազմ, և ընդ այլ կողմն արձակեաց զԳաբալս և զշրջակայս արուերնեանց ընդդէմ հելուեցւոց. և զՀռութենս և զԿադուրկս յղեաց ասպատակել 'ի սահմանս Վոլկաց արեկոմեանց: Միանգամայն և հնարէր ծածկաբար հրեշտակութեամբ և պատգամաւորօք հրապուրել զԱլոբրոգս, կարծելով զնոսա հլուս առ զայրոյթ վերջնոյ պատերազմին. զգլխաւորս նոցա որսայր արծաթով, և քաղաքայնոց խոստանայր զիշխանութիւն բոլորում Պրովինկիոյ:

ԿԵ. Այսոցիկ ամենայնի կանխատես լեալ Կեսարու՝ կարգեալ էր տեղակալ զԼուկիոս Կեսար՝ տուեալ նմա գումարտակս քսան և երկու՝ հաւաքեալս 'ի Պրովինկիոյ: Հելուիք ինքնայորդոր պատերազմաւ յարուցեալ 'ի վերայ սահմանակցաց իւրեանց՝ վանեցան. և կորուսեալ զԿ. Վալերիոս Դոնատաւրոս զորդի Կաբուրեայ իշխանի քաղաքին և զայլս բազումս, անկան հալածական մինչև 'ի քաղաք անդր իւրեանց և 'ի պարիսպս: Ալոբրոգք կարգեալ պահակս խիտ առ խիտ ընդ եզերս Հռոդանու, մեծաւ փութով և զգուշութեամբ պահէին զսահմանս իւրեանց: Տեսեալ Կեսարու զառաւելութիւն հեծելազին թշնամեաց, և փակեալ ամենուստ զճանապարհս, որով չէր նմա ակն ունել օգնականութեան՝ ոչ 'ի Պրովինկիոյ և ոչ յԻտալիոյ, առաքեաց 'ի Գերմանիա յայնկոյս Հռենոսի 'ի քաղաքս ամօք ինչ յառաջ նուաճեալս յիւրմէ, և ընկալաւ 'ի նոցանէ այրուձի և մեկնակազէն հետևակս՝ որք խառն ընդ հեծելոց սովոր էին պատերազմել: Եւ 'ի գալ հասանել նոցա՝ տեսեալ զի երիվարք հեծելոց չէին ռազմիկք, բաշխեաց նոցա զերիվարս հազարապետաց և այլոց ևս հռովմայեցի և օժանդակ զօրաց:

ԿԶ. Ցայնմ վայրի եկին հասին արուերնացիք և այրուձին ամենայն 'ի Գալլիոյ ըստ հրամանին, և գումարեալ ընդ զօրս թշնամեաց՝ յաւելուն զամբոխ բազմութեան նոցա մե-

ծի։ Եւ այն ինչ չու առնէր Կեսար յեզերս սահմանացն Լինգոնաց՝ առ ՚ի կարելոյ դիւրաւ հասանել անտի յօգնութիւն ՚ի Պրովինկիա, Վերկինգետորիքս եհար բանակս երիս հեռի ՚ի հռովմայեցւոց իբր բիւր մի քայլ։ Եւ համախմբեալ զզօրագլուխս հեծելազօրուն, խօսեցաւ ընդ նոսա և ասէ. «Ժամ է արդ յաղթութեան. հռովմայեցիք թողեալ զԳաղղիա՝ խոյս տան ՚ի Պրովինկիա. շատ է մեզ այս առ ժամս առ ՚ի շահել զազատութիւն, այլ ոչ և յանչարժ խաղաղութիւն առ յապա. զի յօգնախումբ ևս զօրու դարձցին վերստին, և ոչ ևս լիցի զրաւ պատերազմիս։ Հապա յարձակեսցուք ՚ի վերայ յամրախաղաց բանակին. զի եթէ զկայ առցէ հետևակազօրն յօգնութիւն մարտակցաց իւրոց, արգելցի յընթացից, և ոչ կարասցէ յառաջ խաղալ. իսկ եթէ թողեալ զաղխս, որպէս հաւանելի ևս ինձ թուի, հոգասցի ՚ի փրկութիւն իւր, կապուտ կողոպուտ ՚ի կարևորաց՝ երթիցէ ամօթալից։ Իսկ զի ՚ի հեծելոց նոցա իշխեսցէ և ոչ ոք ելանել ըստ բանակն, ձեզ իսկ աներկբայելի է։ Սակայն յառաւելագոյն ձեզ ՚ի խրախոյս՝ հանից ճակատեցուցից զառաջեաւ բանակիս զզօրս համօրէն՝ յահարկութիւն թշնամեաց»։ Յայնժամ հեծելազօրն առ հասարակ աղաղակեաց՝ զի արժան էր տալ երդումն սուրբ չմտանելոյ ումեք ընդ յարկաւ առ որդիս առ կանայս և առ ընտանիս, մինչև երկիցս ընդ ռազմս թշնամեաց ձիավարեալ։

ԿԷ. Հաճոյ թուեցան բանքն. և յերդնուլ ամենեցուն՝ ՚ի վաղիւ անդր յերիս գունդս բաժանեցաւ հեծելազօրն. գունդք երկու խաղային երկուստեք ՚ի կողմաց բանակին մերոյ, և երրորդն ՚ի դիմաց՝ արգելուլ զճանապարհն։ Գիտաց զայն Կեսար. և ինքն ևս բաժանեալ զհեծելազօր իւր յերիս, հրաման ետ նոցա դիմել ընդդէմ թշնամեաց։ Խառնեցաւ մարտն ամենուստ. զկայ էառ բանակն, և լեգէոնք զաղխ և զաղխամաղխ ՚ի մէջ առեալ պահէին։ Եւ ուր ուրեք տեսանէր Կեսար ընկճեալ և տկարացեալ զմերսն, անդր տայր ածել զդրօշս, և զզօրսն յառաջ խաղացուցանէր՝ արգելուլ զթշնամիս ՚ի հետամուտ լինելոյ մե-

լոցն, և սրտապնդել զմերսն յուսով օգնականութեան: Հուսկ ապա կալան գերմանացիք զբլուրն որ յաջմէ, և վանեալ անտի զթշնամիս՝ հալածեցին զնոսա մինչև 'ի գետ անդր՝ ուր կայր Վերկինգետորիքս ընդ հետևակազօրուն, և զբազումս 'ի նոցանէ կոտորեցին. յորմէ երկուցեալ և այլոց թէ գուցէ պատեալ պաշարեսցին, դարձան 'ի փախուստ: Բայց ամենայն ուրեք եղեն նախճիրք արեանց, երեք ոմանք յաւագագունից եդուացւոց եղեն ձերբակալ, և ածան առ Կեսար. Կոտոս զօրավար հեծելոց, որ 'ի վերջնումն ժողովի ընտրութեան՝ հակառակորդ կացեալ էր Կոնուիկտոլիտանեայ. Կաւարիլլոս, որ 'ի վտարանջել Լիտաւիկեայ՝ կարգեալ էր զօրավար հետևակաց. և Եպորեդորիքս, որ յառաջ քան զգալուստ Կեսարու զօրավարեր եդուացւոց 'ի պատերազմ ընդդէմ սեկուեանց:

ԿԸ. Ի պարտիլ այրուձիոյն՝ ժողովեալ Վերկինգետորիքս զհետևակազօրն, զոր ճակատեցուցեալ էր զառաջեաւ բանակին, ձեպէր գնալ յԱլեսիա քաղաք Մանդուբաց. և հրաման ետ 'ի բաց հանել փութով 'ի բանակէ անտի զկարասին, և գալ զկնի իւր: Իսկ Կեսարու ածեալ զաղխս 'ի բլուր մի մերձակայ, և լեգէոնս երկու թողեալ անդ 'ի պահ՝ զհետ պնդեցաւ թշնամեաց զօրն զայն ողջոյն. և կոտորեալ 'ի վերջապահ գնդէ նոցա արս իբրև երեք հազար, 'ի միւսում աւուր եհար բանակ հանդէպ Ալեսեայ. և 'ի տեսանել զդիրս քաղաքին և զթշնամին՝ որ 'ի հեծելազօր իւր յուսացեալ էր՝ վանեալ ահաբեկ, խրախուսեաց զզօրս իւր յաշխատանս՝ պաշարել պատնիշափակ զքաղաքն:

ԿԹ. Եւ էր քաղաքն այն 'ի բարձրաւանդակ բլրի, գոգցես անառիկ առանց պաշարման: Գետք կրկին ընթանային երկուստեք զստորոտով բլրոյն. զառաջեաւ քաղաքին էր դաշտավայր ընդարձակ, երկայնաձիգ իբրև երեք հազար քայլ. յայլոց կողմանց կային շուրջանակի բլուրք զուգաբերձք քաղաքին՝ մօտ առ մօտ յիրեարս: Զարևելից կողմն բլրոյն ծածկէին բովանդակ զօրք գաղղիացւոց՝ պարկէն և քարորմ հողամած շուրջ ածեալ վեցոտնաչափ 'ի բարձրութիւն:

Իսկ միջոց ընդարձակութեան շրջապատանէն ամրութեան զոր գործէին հռովմայեցիքն՝ երկայնէր ցմետասան հազար քայլ. բանակն 'ի պատշաճ տեղւոջ կայր և ամրոցք քսան և երեք առ նովաւ կառուցեալ, յորս կարգեալ կային պահանորդք 'ի տուէ՝ զի մի՛ գուցէ յարձակումն 'ի ներքուստ 'ի քաղաքէն յանկարծ պատահեսցէ. զնոյն և զգայր հսկէին հզօր գիշերապահք:

Հ. Մինչ չև էր բովանդակեալ վաստակն՝ եղև հեծելամարտ յընդարձակ դաշտավայրին, որ ըստ ասացելումս 'ի վեր այսր՝ երկայնաձգէր 'ի մէջ բլրոց երեքհազար քայլ: Կողմանք երկոքին զայրագին սաստկութեամբ բախեցան ընդ միմեանս. Կեսար ընդ պարտելոցն 'ի մերոց փոխանակէր զգերմանացիս, և զլեգէոնս հանեալ կարգէր զառաջեաւ բանակին՝ ընդդէմ յեղակարծ յարձակման հետևակազօրու թշնամւոյն: Ի տեսիլ լեգէոնացն յաւելաւ եռանդըն քաջութեան մերոցն, և թշնամիք դարձան 'ի փախուստ, որք առ խուռն ամբոխին խափանեալք յիրերաց՝ ընդ անձուկ դրունսն նեղէին: Գերմանացիք ուժգին զհետ նոցա մինչև 'ի պատնէշս անդր պնդեալ, արարին կոտորած մեծ: Բազմաց 'ի նոցանէ թողեալ զերիվարս իւրեանց և վազեալ ընդ փոսն, անցին ընդ քարորմն: Յայնժամ Կեսար սակաւիկ մի յառաջ մատուցեալ զհետևակազօրն, ճակատեցոյց զնոսա զառաջեաւ բանակին: Ոչ ինչ ընդհատ և գաղղիացիք, որք 'ի ներքս 'ի պատնիշի անդ կային, զահի հարան. և կարծելով թէ ահա գան յարձակել 'ի վերայ, գոչեցին առ հասարակ և 'ի զէն ընթացան. և ոմանք զարհուրեալ զիմեցին անկանել 'ի քաղաքն: Վերկինգետորիքս հրաման ետ առնուլ զդրունսն, զի մի՛ ամայասցի բանակն: Բազում նախճիրս արարեալ անդ գերմանացւոց և ձիան բազում առեալ յաւարի, դարձան այսրէն առ իւրեանս:

ՀԱ. Մինչ չև հռովմայեցւոց բովանդակեալ զկառուցումն պատնիշաց, խորհեցաւ Վերկինգետորիքս զայրուձին առ հասարակ գիշերայն 'ի բաց արձակել. և 'ի հրաժեշտի կացուցեալ զնոսա՝ պատուէր ետ երթալ յիւրաքանչիւր

քաղաքս, և զամենայն հասակ զինաշարժ ստիպել 'ի պատերազմ։ Ցուշարար նոցա զամենայն վտանգս իւր, և յաւել. « Երդմնեցուցանեմ զձեզ խնայել յանձինս ձեր, և մի՛ ընդնուիրեալս 'ի վերայ փրկութեան հասարակաց՝ թողուլ 'ի խոշտանգանս թշնամեաց. եթէ զայսուիկ անփոյթ առնիցէք, ութ բիւրք ընտրելոց կորիցեն ընդ իս։ Ի հանդէս համարոյ՝ սակաւ մնայ մեզ ցորեան՝ բաւական աւուրց եւթ երեսնից, և խնայելով մեծաւ խուն ինչ թերևս աւելի »։ Զայս պատուէր տուեալ, յերկրորդումն պահու գիշերոյն արձակեաց զնոսա լռելեայն ընդ անջրպետս թերակատար վաստակոցն մերոց։ Հրաման ետ ապա ածել առ ինքն զամենայն ցորեան, սպատուհաս մահու 'ի վերայ կալեալ՝ որոց ստունգանիցեն։ Եւ զխաշանց բազմութիւն հաւաքեալ 'ի Մանդուբաց, բաշխեաց ըստ բերան. այլ զցորեան չափով և խնայութեամբ տալ հրամայեաց։ Զզօրսն կացուցեալս շուրջ զքաղաքաւ՝ 'ի ներքս եմոյծ, և սպասելով հասանելոյ օգնականութեան 'ի Գաղլիոյ, կազմէր պատրաստէր 'ի պատերազմ։

ՀԲ. Զայս ամենայն գիտացեալ Կեսարու 'ի փախստէից անտի և 'ի գերւոյն, ըստ այնմ կարգաւորեաց զգործ պատերազմին։ Հրաման ետ փոս շուրջանակի հատանել քսան ոտնաչափ 'ի լայնութիւն, և ուղղորդ երկուսաեք 'ի խորութիւն՝ զուգաչափ ափանցն հեռաւորութեամբ մինչև ցյատակ. և զշրջապատնէշ ամրութիւնսն չորեքհազար ոտնաչափ եդ հեռի 'ի փոսոյն։ Քանզի առ մեծի ընդարձակութեան կարևոր շրջափակին՝ չէր մարթ զօրուն շուրջ պահ ունել ամենուստ, և վտանգ էր յեղակարծում, կամ գիշերախառն յարձակելոյ թշնամւոյն մեծաւ ամբոխիւ, և 'ի տուէ տարափս նետից 'ի վերայ վաստակաւորաց գործոյն տեղալոյ։ Ի միջոցի անդ ետ Կեսար պեղել փոս կրկին հնգետասան ոտնաչափ 'ի լայնութիւն, և հաւասար 'ի խորութիւն. և ջուր 'ի գետոյ ընդ հարթ և ընդ զիջագոյն տեղիս ածեալ, ելից զփոսն ներքին։ Եւ յետ այսուիկ փոսոյն կանգնեալ հողակոյտ և պատնէշ երկոտասան ոտնաչափ 'ի

բարձրութիւն, ած զնովաւ ողորահիւս ամրութիւն, և մահարձանս. և ընդ անչքալետս այնոցիկ յաւել բունս ըն-տուարս եղջերաձև 'ի դուրս կարկառեալ՝ արգելուլ զվեր-ելս թշնամեաց. և աշտարակք հեռի 'ի միմեանց ութսուն ոտնաչափ՝ զլրութիւն կազմածոյն շուրջ պատէին։

ՀԴ. Գործ այլ և այլ 'ի նմին ժամանակի առաջի կայր մերոցն կարևոր. յօրինուած մեծի ամրութեանն, և խնդիր տաղձից և համբարոյ 'ի հեռուստ. որով նուազէր զօրու-թիւն բանակին ընդդէմ թշնամեաց, որ երբեք երբեք ուժ-գին յարձակմամբ ընդ ամենայն դրունս քաղաքին՝ ջան գործէին եղծանել զձեռակերտս մեր։ Վասն որոյ հարկ եղև Կեսարու յաւելուլ և այլ ինչ վտանգ՝ որով մարթ իցէ սակաւուց զօրաց պահել զշրջապատնէշն լրիւ իւրով։ Եւ հատանել բունս ծառոց և ուղէշս ստուարս ոստաքանցս, և զվերին ծայրս նոցա սլաքեալ՝ հարստել երկայնաշար 'ի պարկէնս անդ պեղեալս հինգ ոտնաչափ 'ի խորութիւն. որք անխլելի ամրապնդեալ 'ի ստորուստ՝ ամբառնային բունք 'ի վեր քան զուղէշս։ Հինգ կարգ էին ձողիցն այնպէս զօդեալք ընդ իրեարս և շաղկապեալք, զի ըմբռնելոցն 'ի նոսա վտանգ մեծ էր 'ի ստուարասուր ծայրից նոցա, որ Կոճէղսն կոչէին։ Զառաջեաւ աղամող կարգաց սոցին, որ 'ի ձև երեքկուսի յայսկոյս և յայն կամակորէին, պեղեցան գուբք երեքոտնեայ խորութեամբ անձկագոյնք 'ի յատակս, և կանգնեցան 'ի նոսա ձողք սիւնաձևք՝ ազդերբ չափ ըս-տուարք. ծայրք նոցա սրեալ և խանձողեալ, ցչորս մատնա-չափ վերամբարձք 'ի գետնոյ։ Եւ յանխլելի հաստատու-թիւն նոցին՝ արկեալ հող զնոքօք, անդուստ 'ի խորոց առ իւրաքանչիւր ոտնաչափ պնդէին ամրակուռ 'ի տրոփ ոտից, և զմնացեալ մասն գբոցն ծածկէին մացառօք և դալարեօք թաքուցանել զորոգայթն։ Ութ կարգ էին գբոցն հեռի յի-րերաց երեք ոտնաչափ, որ կոչէին Շուշանք՝ բերելով իմն զձև ծաղկանն, և առ նոքօք ընդ երկիրն բովանդակ մխե-ցան խիտ առ խիտ ցիցք՝ ոտնաչափ երկայնք, սլաքս երկա-թիս 'ի ծայրսն ունելով՝ որ Խայթոցքն կոչէին։

ՀԴ. Եւ 'ի կատարել գործոյն՝ գտեալ Կեսարու դաշտագետին հարթարդակ՝ որպիսի ինչ 'ի տեղւոջն մարթէր գտանել՝ չորեքտասան հազար քայլ 'ի շրջաբերութիւն, կառոյց անդ միւս այլ պատնէշ հանդէպ առաջնումն ըստ նմին օրինակի՝ զգէմ ունել եկելոց արտաքուստ թշնամեաց. որպէս զի բազմագումար եւս ամբոխիւ ոչ կարասցեն պատել պաշարել զպահանորդս ամրութեանցն: Հրաման ետ և զօրացն ամենեցուն պատրաստել իւրաքանչիւր խար և ցորեան՝ նպար ամսօրեայ, զի մի 'ի բազմավտանգ ժամանակի հարկեսցին ելանել ըստ բանակն:

ՀԵ. Մինչ դեռ այսոքիկ առ Ալեսեաւ գործէին, աւագանին գալլիացւոց գումարեցաւ 'ի ժողով, և ոչ 'ի դէպ թուեցաւ նոցա զինուորել զամենայն հասակն կարող 'ի զէն, որպէս Վերկինգետորիգեայ պատուիրեալ էր, այլ քաղաքաց իւրաքանչիւր տալ այսչափ ինչ զօրական՝ զի մի խառնեսցի գուգաղ խառնամբոխ անընդունակ հրահանգաց, որ չկարէր իսկ խոտրել զիւրսն 'ի թշնամեաց, և չէր իսկ մարթ պարենաւորել զնոսա: Եւ սահմանեցաւ Էդուեանց և հովանաւորելոցն 'ի նոցանէ Սեգուսեանց, Ամբիւարետաց, Աւլերեան Բրաննովացւոց և Բրաննովաց տալ երեսուն և հինգ հազար, նոյնչափ եւս Արուէրնաց, և որոց ընդ նոսա՝ ելեւթերեան Կադուրկաց, Գաբալաց և Վելաւնաց, որ ընդ ձեռամբ նոցա սովոր էին զինուորել: Սենոնաց, Սեկուանաց, Բիտուրգաց, Սանտոնաց, Հռութենից և Կարնուտաց՝ իւրաքանչիւր երկոտասան հազար: Բելլովակաց բիւր մի, նոյնչափ և Լեմովկաց, Պիկտոնաց, Տուրոնաց, Պարիսացւոց և Հելուեանց ութ ութ հազար: Սուեսիոնաց, Ամբիոնաց, Մեդիոմատրացւոց, Պետրոկորաց, Ներուեանց, Մորինաց և Նիտիոբրից միում միում հինգ հազար, նոյնչափ և աւլերկեան Կենոմանաց: Ատրեբատաց չորեք հազար. Բելլոկասից, Լեքսոբաց, աւլերկեան Եբուրոնից§երեք հազար. Հռաւրակաց և Բոյացւոց երեք բիւր, և ազգաց առ հասարակ որ զծովեզերբ Ովկիանեայ՝ կոչեցելոց 'ի նոցանէ Արմորիկաց՝ որ են Կուրիոսոլիտք,

Հաւեգոնք, Ամբիբարք, Կադետք, Ոսիսմացիք, Լեմովիկք, Վենետք և Ունելեանք, իւրաքանչիւր ումեք ազգի հազար: Ի սոցանէ Բելլովակք միայն ոչ կամեցան տալ զբաժին իւրեանց, ինքնորէն և ինքնուրոյն կամելով մարտնչել ընդ հռովմայեցիս և ոչ ընդ հրամանաւ այլոց. բայց ապա զիջեալ յաղաչանս Կոմիոսի՝ ասպնջականին իւրեանց, յղեցին հազարս երկու:

ՀԶ. Այս այն Կոմիոս էր, որ 'ի Բրիտանական պատերազմին, որպէս յառաջագոյն ասացի, հաւատարիմ լեալ էր Կեսարու և վաստակաւոր, և փոխարէն վաստակոցն ընկալեալ 'ի նմանէ զշնորհս ազատութեան քաղաքին իւրոյ՝ կալ ինքնորէն յաղիկամի և իշխանութիւն ունել 'ի վերայ Մորինաց: Բայց 'ի համաշունչ միաբանութեան գաղղիացւոց աշխարհաւ՝ առ 'ի թափել զազատութիւն իւրեանց և ստանալ վերստին զառաջնոց յաղթութեանցն պարծանս, ոչ ևս յուշ եղեն նոցա ոչ բարեկամութիւն և ոչ երախտիք, այլ զամենայն զօրութիւն իւրեանց և զգոյս ժողովեալ 'ի պատերազմն յայն, գումարեցին այրուձի ութ հազար, և հետևակազօր բիւրս իբրև քսան և չորս. և անդէն յաշխարհին էդուացւոց հանդէս արարեալ՝ գտին զթիւ համարոյ զօրուն. և կացուցին նոցա զօրագլուխս և նախիխանս՝ զԿոմիոս Ատրեբատ, զՎիրիդոմար և զԵպորեդորիքս էդուացիս, և զՎերգասիլաւնոս արուերնացի՝ զհօրաքեռորդի Վերկինգետորիգեայ. և խորհրդականս նոցա ետուն ընտրեալս յամենայն քաղաքաց՝ ուղղել խորհրդով նոցա զպատերազմն: Զու արարին առ հասարակ զուարթամիտք և յուսալիցք երթալ յԱղեսիա: Ոչ ոք էրբէք երկբայէր թէ կարիցեն հռովմայեցիք 'ի տեսիլ և եթ մեծի բազմութեանն ժուժկալել, մանաւանդ զի երկուստեք հասանէր նոցա դիմամարտել. աստի՝ ընդդէմ յարձակելոցն 'ի քաղաքէն, և անտի՝ ընդդէմ անբաւ բազմութեան հեծելոց և հետևակաց:

ՀԷ. Բայց որ 'ի ներքս յԱղեսիա պաշարեալ կային, յանցանել սահմանեալ աւուր հասանելոյ ակնկալեալ օգ-

նականութեան իւրեանցայոց, սպառեալ զամենայն ցորեանն զոր ունէին, և անգէտք ամենևին որ ինչ անցք առ էգուեանս անցանէին, ժողով կոչեցին խորհել զելից իրացն իւրեանց: Եւ յետ բազում խնդիր լինելոյ՝ կիսոց կարծիք եղեն յանձն առնուլ զնուաճութիւն, և այլոց առնել յարձակումն մինչդեռ 'ի զօրութեան կային: Անդ ատենախօս եղև Կրիտոգնատ. զնորանշան բանս նորա անգութս և ամբարիշտս ոչ թողում անյիշատակ: Սա յարուերնացւոց անտի մեծատոհմ և մեծարոյ, խօսեցաւ և ասէ. «Զեն ինձ իրք ընդ այնոսիկ, որք նուաճութիւն կոչեն զվատ ծառայութիւն: Զէր իսկ պարտ զայնպիսիս ընդ քաղաքացիս համարել, և ոչ 'ի խորհուրդ այսր կոչել: Առ այնոսիկ բարբառիմ, որք ընդ յարձակումն կամին. սոցա խորհուրդ՝ ձերով իսկ ամենեցուն վկայելով՝ զնախնւոյ քաջութեան մերոյ բերէ զառհաւատչեայ: Իցէ իսկ քաջութիւն, և ոչ մանաւանդ անարի մեղկութիւն, չհանդուրժել վայրիկ մի սովոյ: Յօժարագոյնք են այս՝ որ գիտիցեն տալ կամակար զանձինս 'ի մահ, այլ սակաւք 'ի վշտակրութիւն: Ես իսկ հաւանէի արդեօք խորհրդոցդ՝ եթէ կենաց ևեթ հասանէր մեզ վըտանգ, այլ աստ զգալլիացւոց են բանք, զորս ազգովին մեզ յօգնութիւն կարդացաք: Արդ, ածէք զմտաւ. 'ի կոտորել աստ ութ բիւր մարդկան միանգամայն, զորս յարենակիցս մեր և 'ի կենակիցս ունիմք, զիա՞րդ և որո՞վ հոգւով եկեսցեն տալ պատերազմ՝ որպէս թէ 'ի վերայ դիականց մերոց: Մի՛ լիցի ձեզ զրկել յօգնականութենէ ձերմէ զայնոսիկ, որք զանձինս իւրեանց 'ի վերայ ձեր գնեն, և մի՛ խօլ յանդգնութեամբ և անարի վատութեամբ լիցի ձեզ նիւթել կորուստ և գերութիւն բոլորումն Գալլիոյ: Վասն ապաժաման լինելոյ նոցա 'ի ժամադրեալ աւուր՝ իցէ՞ ձեզ օրէն կասկածել ընդ հաւատարմութիւն և ընդ հաստատութիւն մըտաց նոցա: Եւ զի՞նչ. միթէ առ 'ի զբօսանս աշխատ լինին հռովմայեցիքդ ածել պատնէշ զպատնիշիւ: Եթէ փակեալք ամենուստ՝ չկարէք ստուգել լրտեսիւք զմօտեալ օգնականութեանն առ ձեզ, հաւատեն ձեզ զայն՝ որք յահէ գալստեան

նոցա խուճապեալ, փախստական զտիւ և զգիշեր: Իսկ զի՞նչ ապա խորհեցիմ ես. — զայն՝ զոր և նախնիք մեր յանհաւասար պատերազմին ընդ Կիմբրացիս և ընդ Տևտոնս արարին: Պաշարեալ և նոքա ամենուստ, և տուայտեալ որպէս զմեզ 'ի սովոյ, զանպիտանացելոյ 'ի պատերազմ հասակին կերան զմարմինս, առ 'ի չլինելոյ անձնատուր թշնամեաց: Եթէ չէր իսկ մեզ նոցայն օրինակ, սակայն պարտ էր և վայելուչ թողուլ զայն թոռանցն մերոց քաջաց: Եւ պատերազմ իսկ նոցա զի՞նչ էր առ մերովս. Կիմբրացիք յայնժամ մեծաւ ասպատակաւ նեղէին զԳաղլիա, այլ թողին ապա և զմեզ, և զիրաւունս մեր, և զօրէնս, զանդաստանս և զազատութիւն, և մեկնեցան գնացին 'ի բաց: Իսկ սոքա հռովմայեցիքդ զի՞նչ. չարայաչաղ թշնամիք համբաւելոց իշխանութեամբ և քաջութեամբ 'ի մարտի՝ կալան զքաղաքս նոցա և զարտօրայս, նուաճեալ զնոսա 'ի գերութիւն անճողոպրելի: Ամենայն պատերազմացն նոցա այս է կատարած: Եթէ անգէտք իցէք գործեցելոցն 'ի հեռաւոր ազգս, հայեցարուք 'ի սահմանակիցն ձեզ 'ի Գաղլիա, որ ընդ հռովմէական գաւառս կարգեալ, և կապուտ կողոպուտ յիրաւանց իւրոց և յօրինաց, ընդ տապարօք նոցին հեծէ գերի մշտընջենաւոր:

ՀԸ. Եւ 'ի յայտ առնել ամենեցուն զիւրաքանչիւր կարծիս, յաղթեաց կալաւ այս բան խորհրդի. 'ի բաց հանել 'ի քաղաքէն զտկարս, և զհնասակ ապիկար 'ի պատերազմ, և չև զամենայն դուն գործեալ՝ չտալ տեղի խորհրդոյ Կրիտոգնատեայ. իսկ 'ի յամել օգնականութեանն և 'ի բռնանալ հարկին, յանձն առնուլ զայն, քան անձնատուր լինել և զիջանել 'ի պայմանս: Մանդուբք, որոց ընկալեալ էր զնոսա 'ի քաղաք անդր իւրեանց, ստիպեցան ելանել անտի հանդերձ կանամբք և որդւովք, և մատուցեալ 'ի պատնէշս հռովմայեցւոց՝ պաղատէին արտասուօք լինել նոցա 'ի ծառայս՝ առ 'ի լնուլ եւեթ զքաղց: Բայց Կեսարու պահ 'ի պատնէշս կացուցեալ, արգել չընդունել զնոսա:

ՀԹ. Ցայնմ վայրի Կոմիոս և որք ընդ նմա էին զօրա-

գլուխք Նախիշխանք՝ եկին հասին յԱլեսիա հանդերձ ամենայն զօրօք, և կալան զբլուրն արտաքին՝ հեռի 'ի պատնիշաց մերոց ոչ ինչ աւելի քան զհազար քայլ։ Եւ 'ի վաղիւ անդր հանեալ զայրուձին 'ի բանակէն, ծածկեցին բովանդակ զդաշտավայրն՝ երկայնաձիգ ընդ երեքհազար քայլ՝ որպէս ասացաք, և անտի ոչ յոյժ 'ի բացեայ կացուցին 'ի բարձրագոյն վայրս անտես զհետևակազօրն. իսկ բանակետղն կայր ակներև քաղաքին Ալեսեայ։ Ցերևել գալըստեան օգնական զօրացն խռնեցաւ ամբոխ՝ ուրախակից լինել իրերաց, և խնդալիցք խրախուսէին։ Հապա հանեալ զզօրս իւրեանց 'ի դուրս՝ կացուցին զառաջեաւ քաղաքին. լցին զփոսն մերձակայ վանդակեալ հողակուտիւ, և կային կազմ և պատրաստ 'ի յարձակումն, և առ ամենայն որ ինչ և հասանիցէ։

Ձ. Կեսարու զամենայն զօրս իւր յերկոսին պատնէշս անդր բաժանեալ, որպէս զի 'ի տալ պիտոյից դիտասցեն ունել զիւրաքանչիւր կայս, հրաման ետ հեծելազօրուն ելանել 'ի պատնիշաց, և հնչեցուցանել փող 'ի պատերազմ։ Ասպարէզ մարտին ակներև կայր ամենայն բանակին, որ զբարձունս ունէր շուրջանակի, և աչք զօրացն ամենեցուն յայն յառեալ՝ ելից մարտին ուշ ունէին։ Գալլիացւոց խառն ընդ այրուձին կարգեալ էր ուրեք ուրեք աղեղնաւորս և մեկնակապէնս յօգնութիւն իւրեանցայոցն, եթէ երբէք տկարանայցին, և առ 'ի խորտակել զթափ յարձակման այրուձիոյն մերոյ։ Ի սոցանէ հարեալ բազումք 'ի մերոց, տեղի ետուն 'ի պատերազմէ։ Իսկ որ 'ի ներքս 'ի շրջապատնիշի անդ կային գալլիացիք, և որ արտաքուստ եկեալ էին յօգնութիւն, տեսանելով զկողմն իւրեանց զօրացեալ և զմերսն ընկճեալ 'ի խռանէ, ձայն բարձին առ հասարակ մեծագոչ աղաղակաւ, և սրտապնդեալ խրախուսէին զիւրեանցսն։ Ի տեսիլ ամենեցուն մղէր պատերազմն, և քաջացելոցն և վատաց ոչ թագչէին հանդէպք. տենչ փառաց և ամօթ կորանաց գրգռէր երկուստեք զոգիս։ Ի միջօրէէ մինչև ընդ երեկս մղեցաւ մարտ. և իբրև յերկոցունց կող-

մանց Թեայր անպարտելի, գերմանացիք համախմբեալ 'ի մի գունդ պնդակազմ՝ յարձակեցան 'ի մի 'ի թևոց թշնամեաց, և վանեցին զնոսա. և 'ի խոյս տալ նոցա, աղեղնաւորք պաշարեալք ամենուստ՝ կոտորեցան սպառասպուռ. և յայլոց ևս կողմանց մերքն հետամուտ եղեալ փախստէից մինչև 'ի բանակ անդր, չետուն նոցա պարապ համախմբել վերստին: Իսկ որ արտաքս 'ի քաղաքէն ելեալ էին, կոր 'ի գլուխ դարձան անդր յուսահատք 'ի պատերազմէն:

ՁԱ. Ի վաղիւ անդր դադարեալ գալլիացիք 'ի պատերազմէ, զօրն ողջոյն աշխատ լինէին 'ի պատրաստութիւն վանդակելոց բազմաթիւ հողակուտից, սանդղոց և ձանկից երկաթեաց. և յընդմիջել գիշերոյն՝ ելեալ լռելեայն 'ի բանակէն, մատեան յամրոցս մեր 'ի դաշտավայրի, և յանկարծօրէն աղաղակաւ ձայն տուեալ պաշարելոցն 'ի քաղաքին զգալստենէ իւրեանց, արկանէին անդր զհողակոյտսն վանդակեալս, և քարամբք և պարսիւք և նետաձգութեամբ գուն գործէին վանել զմերսն 'ի պատնիշաց անտի. և որ ինչ 'ի պէտս էին 'ի դիմամարտ՝ պատրաստէին: Ի շռինդն աղաղակին և Վերկինգետորիքս նոյնժամայն փողանշանս հարեալ՝ եհան զիւրսն 'ի քաղաքէն: Դիմեն մերքն 'ի պատնէշս ունել զյառաջագոյն սահմանեալ իւրաքանչիւր կայս. և պարսաքարամբք և վրգօք և կապարեայ գնտովք տագնապէին զգալլիացիս: Բազումք հարեալ երկուստեք 'ի մթան անդ անկանէին, և տարափք նետից 'ի կազմածոց անտի տեղային: Մ. Անտոնիոս և Կ. Տրեբոնիոս տեղակալք, որոց յանձն էր պահպանութիւն կողմանցն այնոցիկ, ուր ուրեք զտկարանալ մերոցն լսէին, անդր 'ի հեռաւոր մարտկոցաց առեալ յղէին օգնականութիւն:

ՁԲ. Գալլիացիք, ցորչափ հեռագոյնս կային 'ի պատնիշաց՝ 'ի ձիգ թանձրատարափ նետիցն յաջողէին. այլ 'ի մօտել իւրեանց՝ յանզգաստից վտանգեալք 'ի խթանաց, կամ 'ի պարկէնս անկեալ և 'ի կոճեղս վարսեալ, և կամ 'ի ստուարաբուն աշտէից ձգելոց 'ի պատնիշէ և 'ի մարտկոցաց՝ հարեալ կորնչէին: Այսպէս հարուածեալք ամե-

Նուսա ոչ կարացին խրամատ 'ի պատնէշսն գործել, և 'ի լուսանալ առաւօտուն երկուցեալ Թէ գուցէ անմպատրսպարք 'ի կողաց՝ պաշարեսցին 'ի Թշնամեաց 'ի բարձու անդ բանակելոց, դարձան 'ի տեղիս իւրեանց: Իսկ որ 'ի քաղաքին էին՝ 'ի գործ պատրաստութեանցն Վերկինգետորիգեայ առ 'ի յարձակումն, և առ 'ի լիր արկանել 'ի փոսս մերձակայս յամեալ, չև 'ի պատնէշ անդր էին հասեալ՝ լուան զյետադարձ իւրեանցայոցն, և Թերի Թողեալ զիրս՝ 'ի քաղաք անդր դարձան և ինքեանք:

ԶԳ. Գաղղիացիք երկիցս կորստեամբ մեծաւ վանեալ, խորհուրդ 'ի մէջ առին Թէ զինչ արասցեն: Հարցին զհմուտս վայրացն, և ծանեան 'ի նոցանէ զառաւելութիւն դրից բանակին մերոյ 'ի բարձունս, և զմեծամուր զօրութիւն: Էր անդ 'ի հիւսիսոյ բլուր մի մեծ և լայնանիստ, զոր առ մեծի շրջաբերութեանն ոչ կարացեալ մերոցն առնուլ 'ի շրջապատնէշ անդր, ստիպեալ էին առ կարևորութեան տեղւոյն՝ անդ 'ի դժնդակ տեղւոջն՝ որ միտէր զառ 'ի վայր, բանակ հարկանել. և Անտոնիոս Հռեգինոս և Կ. Կանիոս Հռեբիլոս տեղակալք՝ երկոքումբք լեգէոնօք պահ ունէին անդ: Զօրագլուխք Թշնամեաց, գիտացեալ 'ի ձեռն լրտեսաց զհանգամանս տեղւոյն, այրընտիր եղեն յամենայն քաղաքաց որ 'ի համարի էին քաջութեան՝ վեց բիւրս զօրաց. և համախոհ եղեալ յիւրեանս 'ի ծածուկ, սահմանեցին զինչ և որպէս պարտ էր առնել. և ժամադիր եղեն ձեռն արկել զմիջաւուրբ 'ի գործ: Առաջնորդ զօրուն կացուցաւ Վերգասիղաւնոս արուերնացի, յազգականութենէ Վերկինգետորիգեայ, մի 'ի չորից զօրագլխաց: Սա յառաջնում պահու գիշերոյն չու արար 'ի բանակէն, և ընդ այգն հասեալ 'ի տեղի անդր՝ Թագեաւ յետկուսէ բլրոյն, և հրաման ետ զօրականին կազդուրել 'ի գիշերագնաց աշխատութենէն: Եւ իբրև օրն ընդմիջէր՝ դիմեաց 'ի վերայ բանակին՝ զորմէ ասացի: Ի նմին ժամու մատեաւ և այրուձին 'ի պատնէշս անդր դաշտականս, և զօրն առ հասարակ ելանէր գայր 'ի բանակէն:

ԶԴ. Վերկինգետորիքս տեսեալ զիւրսն 'ի բարձուէ Ալեսեան գղեկին, ել և ինքն 'ի քաղաքէն՝ ածեալ 'ի պատնիշաց անտի զձողսն երկայնաձիգս, զխլըրդնաձեւս, զգերանդիս՝ և որ ինչ այլ 'ի պէտս յարձակման պատրաստեալ էին։ Միահաղոյն ամենայն ուրեք խանձեցաւ մարտ. ուժգին 'ի ճգանց Թողաւ. և ուրուրեք նուազեալ Թուէր զօրութիւն՝ անդր դիմէին համախումբ։ Հռովմայեցւոց առ մեծի ընդարձակութեան պատնիշացն ոչ բաւէր ձեռն՝ ամենայն ուրեք հասանել դիւրաւ. և ահարկու յոյժ էր մերոցն շաֆեգըն աղաղակի մարտուցելոց 'ի Թիկանց. զի 'ի վտանգի այլոց՝ զիւրեանցն նկատէին. և որ չև ևս հասեալ չարիք՝ բազում այն է զի ուժգնագոյն զմիտս մարդկան խուճապեն։

ԶԵ. Կեսարու գտեալ տեղի քաջադէպ՝ դիտէր որ ինչ յամենայն կողմանս անցք անցանէին, և պարտասելոցն հասուցանէր օգնութիւն։ Գիտացին երկոքեանք զի ժամ էր յետին ճգանց. գաղղիացւոց չմնայր ուստեք յոյս փրկութեան՝ եթէ զամուրս խրամատել ոչ զօրէին, և Հռովմայեցւոց ամենայն աշխատութեանցն հասանէր վախճան, եթէ յաջողէին 'ի գործն։ Մեծագոյն 'ի վերնումն բանակի անդ գործէր ճիգն, ուր զՎերգասիլաւնոս ասացի առաքեալ. խուն ինչ հակումն զառ 'ի վայր՝ առաւելուր յոյժ 'ի յաջողութիւն. կէսք նետաձիգ լինէին. այլք ընդ ասպարափակ ծածկութիւ յառաջ մատչէին, զխոնջեալսն անխոնջք փոխանակէին, և հողակոյտք ամենուստ յամրութիւնս անդր արկեալ, դիւրէին զվերելս գաղղիացւոց 'ի պատնէշ անդր, և զորոգայթեալ վասակս հռովմայեցւոց 'ի գետնի՝ ծածկէին, և ամենայն զէն և զօրութիւն մերոցն սպառէր։

ԶԶ. Իրազեկ լեալ Կեսարու, արձակեաց զԼաբիենոս վեցեքումբք գումարտակօք յօգնութիւն պարտասելոցն, պատուէր տուեալ մի դիմադրաւել նոքօք 'ի յարձակումն և 'ի պատերազմ, բայց միայն 'ի վերջնում հարկի՝ ուր ոչ ևս մարթ իցէ իւրոցն տոկալ։ Եւ ինքն երթեալ խրախուսէր զմնացեալ զօրսն՝ մի վեհերել 'ի վաստակոց, և ասէր. « Այս օր է և ժամ ժողովելոյ բովանդակ զարգասիս առաջ-

նոցին ձերոց շահատակութեանց »։ Իսկ որ 'ի քաղաքէն ելեալ էին, ոչ յաջողեալ 'ի գիւղի՝ առ մեծատարած ընդարձակութեան ամրութեանցն հառվմայեցւոց, դիմեցին առ 'ի փորձ՝ 'ի վայրս զառ 'ի վեր սեպացեալս, անդր զամենայն հանդերձանս կազմածոց իւրեանց ածեալ. և 'ի տարափս նետից տագնապէին զվերամարտիկս մարտկոցաց. և լիր 'ի փոսս վանդակեալք հողակուտիւք արկեալ՝ ռահ հորդէին, և գերանդեօք զպատնէշսն և զլանջաբերձ պատուարսն հարեալ աւերէին։

ՁԷ. Ցղեաց նախ անդր Կեսար զպատանին Բրուտոս վեցիւք գումարտակօք, և զհետ նորա զՓաբիոս տեղակալ այլովք ևս նոյնքանեօք. և ապա 'ի սաստկանալ մարտին՝ ինքնին անխոնջ զօրօքն դիմեաց անդր յօգնութիւն. և զօրացուցեալ զմարտն, և վանեալ զթշնամիս, դիմեաց առ Լաբիենոս՝ ուր յղեալն էր զնա։ Կոչեաց գումարտակս չորս 'ի մերձակայ ամրոցէն, և կիսոյ այրուձիոյն հրաման ետ գալ զկնի իւր, միւսոյ կիսոյն պատուէր տուեալ շուրջ գալ արտաքուստ զպատնիշօքն, և յարձակել յետկուսէ 'ի թըշնամին։ Լաբիենոսի տեսեալ զի թումբք և փոսք ոչ բաւէին զդէմ ունել բռնութեան թշնամեաց, ժողովեաց զերեսուն և ինն գումարտակսն՝ զորս դէպք ըստ բախտի ձգեցին անդր 'ի մօտաւոր ամրոցաց, հրեշտակ արար առ Կեսար, զեկոյց նմա զոր խորհէրն։ Աճապարեաց Կեսար գալ նպաստ 'ի կռիւ լինել նմա։

ՁԸ. Ծանուցաւ գալուստ նորա 'ի գոյն հանդերձիցն՝ զոր սովոր էր զգենուլ 'ի պատերազմի. և տեսեալ թշնամեաց 'ի բարձուէ զառ 'ի վայրին զխումբ հեծելոցն և հետևակաց՝ որոց հրամայեալ էր գալ զհետ, խառնեցան 'ի մարտ։ Բարձրացաւ երկուստեք շռինդն պատերազմին, և պատնէշք և ամրոցք տային արձագանգ։ Ի բաց արկեալ մերոցն զաշտէս, ձեռն 'ի սուր ձգեցին. անդ յանկարծ երևեցաւ այրուձին, հասին և այլ գումարտակք. թիկնադարձոյց եղէն թշնամիք, փախստէից պատահեցին հեծեալք, և եղև կոտորած մեծ։ Անդ անկաւ Սեդուլիոս իշխան և զօրավար

Լեմովկաց. Վերգասիլաւնոս արուերնացի 'ի խուռնաբեկել խուրում կենդանեայն եղև ձերբակալ, և դրօշք եօթանասուն և չորք ածան առ Կեսար: Ի բազմախուռն ամբոխէն սակաւք յոյժ ողջամբ 'ի բանակն անկեալ ապրեցան. և որ 'ի քաղաքի անդ էին' տեսեալ զփախուստ իւրեանցայոցն, անյոյս 'ի փրկութենէ, կոչեցին զզօրս 'ի պատնիշաց. և զալլիացւոց լուեալ զայն' խոյս ետուն ինքեանք ևս 'ի բանակէն. և զօրականն մեր' եթէ չէր վաստակաբեկ 'ի սաստիկ աշխատանաց յօգնականութիւն, և յանդուգ աշխատութենէ զօրն ողջոյն, համայնաջինջ առնէր զթշնամիս: Ի հասարակել գիշերոյն յղեցան հեծեալք հետամուտ լինել վերջապահ գնդին. բազումք 'ի գնդէ անտի սպանան, և ապրեալքն 'ի կոտորածէն' 'ի քաղաքս իւրեանց փախուցեալ անկան:

ՁԹ. Ի վաղիւ անդր Վերկինգետորիքս կոչեաց ժողով, խօսեցաւ և ասէ. «Ոչ վասն իմ ինչ եկի ես յայս պատերազմ, այլ վերամարտիկ ազատութեան հասարակաց. բայց քանզի հարկ է արդ տեղի տալ բախտի, աւասիկ կամ 'ի պատրաստի հպատակել կամաց ձերոց, որպէս զիարդ հաճոյ ձեզ թուիցի' տալ զիս կենդանւոյն 'ի ձեռս հռովմայեցւոց, և կամ մահուամբ իմով հաճել զնոսա»: Առաքեցան վասն այսորիկ պատգամաւորք առ Կեսար. և հրաման ետ տալ 'ի ձեռս զզէնս և ածել առ ինքն զզօրագլուխս, և բազմեցաւ յաթոռ շուրջ ամրացեալ 'ի պատնիշի: Ածան առ նա զօրագլուխք, Վերկինգետորիքս եղև անձնատուր, ընկեցին եղեն զէնք. և գերին ամենայն, բաց 'ի յէդուեանց և յարուերնեանց' զորս 'ի բաց եհան Կեսար' առ որսալոյ նոքօք թերևս զքաղաքս, բաշխեցաւ 'ի զօրս մէն մի առ այր:

Ղ. Զայսոսիկ յանկ հանեալ' խաղաց գնաց առ էդուացիս, և զքաղաք նոցա կալաւ. անդր հասին պատգամաւորք յարուերնացւոց հարցանել զկամս նորա և խոստանային հնազանդել. կալաւ նա 'ի նոցանէ պատանդ բազում: Զլեգէոնս 'ի ձմերոցս արձակեաց, դարձոյց առ արուերնեանս և առ էդուեանս զգերիս նոցա բիւրս իբր երկուս. զՏ. Լաբիենոս արձակեաց առ սեկուացիս լեգէոնօք երկոքումբք,

յաւելեալ ընդ նմա և զՄ. Սեպրոնիոս Հռուտիլէոս և զԿ. Փաբիոս. իսկ զԼ. Մինուտիոս Բասիլիոս կացոյց 'ի Հռեմս երկոքումբք լեգէոնօք՝ զի մի՛ զնոսա նեղեսցեն սահմանակիցքն Գեղղովակք. զԿ. Անտիստիոս Հռեգինոս՝ յԱմբիւարետս, զՏ. Սեքստիոս 'ի Բիտուրիգս, և զԿանինիոս Հռեբիլոս 'ի Հռութենս արձակեաց միով միով լեգէոնաւ: Իսկ զԿ. Տուլլիոս Կիկերոն, և զՊ. Սուլպիկիոս կացոյց զմին 'ի Կաբիլոն, և զմիւսն 'ի Մատիսկոն առ Էգուացիս զԱրար գետով համբարապետ. և ինքն խորհուրդ կալաւ ձմերել 'ի Բիբրակտ: Ծանուցաւ այս ամենայն 'ի Թղթոց Կեսարու 'ի Հռոմ, և կարգեցան համաշխարհի պաղատանք ընդ աւուրս քսան 'ի գոհութիւն:

---

